ՐԱՖՖԻ

# ՀԱՅ ԿԻՆԸ

ԵՒ

# ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆԸ













ԹԻՖԼԻՍ

ՏՊԱՐԱՆ „[illegible]“ Տ. ՆԱԶԱՐԵԱՆԻ
Գօլօվին. պր. [illegible] փողոցի անկիւն:

189[illegible]



—„Կինն է այն առանցքը, որի շուրջը պտտվում է քաղաքակրթութիւնը“:

Ինձ շատ անգամ պատահել է կարդալ հատուկտոր յօդուածներ հայ կնոջ մասին, շատ անգամ տեսել եմ նրա նկարագիրը փոքրիկ վէպիկների մէջ, բայց այդ բոլորը այն աստիճան անկատար են եղել եւ այն աստիճան հարեւանցօրէն նկարագրել են նրա տիպը, որ հազիւ թէ ընթերցողը կարող էր ծանօթանալ ընդհանուր գծերի հետ: Առհասարակ շատ սխալ կարծիքներ են կազմվել արեւելքի կանանց մասին ընդհանրապէս, իսկ մեր մէջ հայ կնոջ մասին մասնաւորապէս: Մինչեւ անգամ նշանաւոր հեղինակները, կամ պօեզիայով յափշտակված, նրանց պատկերացնում են որպէս հարեմի զարդարանք, որպէս ընտանեկան սրբարանի կուռքը, եւ կամ բոլորովին արհամարհելով, „ստրուկ“ բառը տեղի եւ անտեղի կպցնում են նրանց ճակատին: Եթէ „կինն է մարդկային ընկերութեան գլխաւոր քաղաքակրթիչ տարրերից մէկը“—որպէս ասում են գիտնականները,—ուրեմն պէտք է լաւ ուսումնասիրել նրան: Եւ այդ կըլինի իմ հետազօտութեան նպատակը:

Ա.

## Գեղջկուհին

Ես սկսում եմ գիւղացի կնոջից եւ գլխաւորապէս ի նկատի ունիմ Կովկասի հայ ազգաբնակութիւնը: Բայց խնդիրը ինքն ըստ ինքեան շատ դժուարին է, մանաւանդ այն պատճառով, որ Կովկասի հայ ժողովուրդը բաղկանում է զանազան տարրերից,—առաւել Տաճկաստանի, Պարսկաստանի եւ ուրիշ երկրների գաղթականներից,—որոնց մէջ որքան խառնուրդներ կան, այնքան աւելի բազմատեսակութիւն կայ թէ բարքերի, թէ սովորութիւնների եւ թէ դէմքերի վերաբերութեամբ:

Կեանքը դեռ բոլորովին չէ միակերպվել, եւ այս պատճառով անհնարին է մի որոշ դասակարգի ներքոյ զետեղել ամենին: Բայց բացառութիւնները միայն ցոյց տալով, մենք դարձեալ կըստանանք մի ամբողջ նկարագիր, որովհետեւ ընդհանուր գծերը բոլոր գիւղացի կանանց մօտ, իրանց պատսական յատկանիշներով, համարեա միացել են մի եւ նոյնը:

Շատ անգամ մարդ զարմանում է, մտնելով մի մեծ գիւղական ընտանիք. նա բաղկանում է քսան, երեսուն եւ երբեմն քառասուն հոգուց.—դա մի փոքրիկ պետութիւն է, որի մէջ տիրում է խորին ներդաշնակութիւն: Ալեւոր պապերը դարեւոր հասակներով—թւով մի քանի եղբայր-

ներ—ղեռ կենդանի են. կենդանի են եւ ծերունի պառաւները: Նրանց շրջապատել են որդիները, թոռները, ծոռները,—մի քանի սերունդ իրանց կնիկներով եւ զաւակներով: Ընտանիքի պետը համարվում է նա, որ հասակով ամենից աւագն է, այսինքն „մեծ պապը“. բոլոր անդամները հպատակում են նրա հեղինակութեանը: Նրանից յետոյ երկրորդ տեղն է բռնում մեծ տատը, որի իշխանութիւնը տարածվում է աւելի կանանց հասարակութեան վրայ: Եւ եթէ դրանք չը կային, „մեծ պապին“ յաջորդում է եղբայրներից երէցը, իսկ պառաւ տատին՝ մեծ հարսը, այսինքն երէց եղբօր կինը: Հնազանդութիւնը մինը միւսին ընտանիքի փոքրիկից սկսվում է աստիճանաբար դէպի բարձր մինչեւ հասնում է այն անձինքներին, որ համարվում են գերդաստանի գլխաւորները: Կանանց սեռը (բացի պառաւ տատից) զրկված են ձայնի իրաւունքից: Այդ նախադասութիւնը պէտք է հասկանալ իր բառացի նշանակութեամբ. նրանք ոչ միայն չեն կարող խորհրդակցել տան պէտքերի մասին, այլ խօսելն անգամ արգելված է նրանց:

Այդ ընդհանուր նկատողութիւնից յետոյ, ընտանիքի կազմակերպութեան մասին, ես դառնում եմ դէպի գեղջկուհին, սկսելով նրա ծնունդից:

Գեղջկուհին չէ ծնում դաշտումը, բաց .օդի ներքոյ, խոտի դէզի տակ, թուփերի կամ արտի մէջ, եւ երկունքից յետոյ անմիջապէս սկսում իր աշխատութիւնը, որպէս այդ լինում է մինչեւ անգամ բաւական քաղաքակիրթ ազգերի գիւղացիների մէջ: ծնունդը մօտենալու ժամանակ մօր վրայ խնամք են տանում, նրան հեռու են պահում ծանր աշխատութիւններից, թոյլ չեն տալիս, որ շալակ վեր առնէ, կամ աղբիւրից ջուր բերէ: Երբ ծնաւ, մինչեւ մանուկի մկրտվելը, որ սովորաբար տեւում է եօթն օր, մայրը անկողնի մէջ պառկած է մնում: Եթէ ծնունդը տղայ էր, նրա անկողինը շրջապատում են մի խումբ պառաւներ,

որոնք գործ են դնում՝ իրանց ամբողջ կախարդական արհեստը մօր եւ նորածին մանուկի կեանքը անվնաս պահելու „չարքերից“, „ալքերից“, „քաջքերից“, „դեւերից“, „մեզնից աղէկներից“, „սատանաներից“, եւ այլն: Մանուկի օրօրոցը նոյնպէս զրահաւորում՝ են բժժանքներով, յուռութքներով, մահեկներով եւ մինչեւ անգամ տէրտէրի գրած „բըթիկներով“: Իսկ աղջիկը զուրկ է մնում՝ այդ նախախնամութիւններից: Գիւղացին ծնունդի վրայ չէ նայում՝ որպէս մի բնական երեւոյթի վրա, այլ նրա մասին ունի բազմաթիւ նախապաշարմունքներ: Կնոջ անպտղաբերութիւնը նախատինք է համարվում, եւ այս պատճառով ամեն մի ծնունդ, մանաւանդ տղայինը, թէ տղամարդի եւ թէ բարեկամների կողմից ընդունվում՝ է ուրախութեամբ: Մօրը կերակրում՝ են արտաքոյ կարգի սննդարար կերակուրներով, որոնց մէջ առաջին տեղը բռնում՝ է մեղրով պատրաստած ձուածեղը, որը նա ստանում՝ է հարեւաններից: Իսկ աղջկայ ծնունդը հանդիպում՝ է խուլ դժգոհութեան, բարեկամները չեն գնում՝ շնորհաւորելու, կամ որպէս ասում՝ են „աչքալուսանք“ տալու ծնողներին: Մեր գեղջկուհիքը ըստ մեծի մասին պտղաբեր են լինում, նրանք ծնում՝ են երբեմն մինչեւ 40—45 տարեկան հասակը: Ամուլ կինը պատիւ չունի որպէս ընտանիքի, նոյնպէս եւ հասարակութեան մէջ. նրա վրայ նայում՝ են որպէս չըբերք կովի վրա: Գիւղացին շատ անգամ պարծենում՝ է իր որդիների բազմութենով, որպէս իր կապիտալով: Եւ որքան աճում՝ է կնոջ զաւակների թիւը, այնքան նա կշիռ եւ իրաւասութիւն է ստանում՝ ընտանիքի մէջ. „Ես տասն տղամարդի մայր եմ՝„—լսվում՝ է շատ անգամ նրա բերանից: Բայց ափսոս, որ երեխաների չափազանց մահացութիւնը, որ յառաջ է գալիս վատ պահպանելուց, չեն բաղդաւորացնում՝ ամեն մայրերին:

Մայրը ինքն է ծիծ տալիս զաւակին, իսկ եթէ նա

տկար էր, կամ կաթը պակաս էր, օգնում են հարեւանի կնիկները: ծնելուց յետոյ մայրը մինչեւ անգամ քառասուն օր ցերեկով իր օթեւանից ոտքը դուրս չէ դնում, „արեւի երես չէ տեսնում“, այլ „քառասունք“ է պահում: Նա դուրս է գալիս, երբ արեգակը մայր է մտնում, մութը բաւական պատում է, այն ժամանակ կտուրի վրա կամ բակումը կարող է ման գալ, բայց հարեւանի տուն գնալ չէ կարող: „Քառասունքը“ ունի խորհրդական նշանակութիւն ծննդաբերութեան վերաբերութեամբ, որը կապված է զանազան սնահաւատութիւնների հետ*: Բայց թէեւ դա մի կողմից վնասում է կնոջ առողջութեանը, մինչեւ քառասուն օր փակված պահելով տան չորս պատերի մէջ, իսկ միւս կողմից բաւական նպաստում է մօրը ամրացնելու իր սպառված ոյժերը եւ հեռու մնալու դաշտային ծանր աշխատութիւններից, որ կարող են վնասել նրան ծնունդից յետոյ:

„Աղջկայ երեսը սիրող կըլինի“—ասում է գիւղացին, —„նրան եթէ ջրաղացի քարի տակն էլ քցես, էլի ողջ կըդուրս գայ“: Այս պատճառով նրան համարեա թէ թողնում են բաղդի կամքին: Աղջկայ խնամատարութիւնը սկսեալ ծնունդից այն չէ, ինչ որ տղաներինը: Նրան շատ անգամ ձգում են տանը բոլորովին մենակ կապած օրօրոցի մէջ, մայրը չէ վեր առնում իր հետ, որ չըխանգարէր դաշտային գործերում. ողորմելին ամբողջ օրը ճչում է, աղաղակում է, մինչեւ ձայնը խսպառ կտրվում է: Խիստ սակաւ է պատահում, որ հարեւանի կինը նրան օգնութեան հասնէր: Պատահում է եւս, որ փոքրիկ երեխան օրօրոց էլ չունի. նրան թողեցին տանը քնած մի շորի կտորի վըրա, յանկարծ նա զարթնում է եւ լաց է լինում. մայրը չը կայ. նա սկսում է սողալ յատակի վրա, կարծես թէ

---

*„Քառասունքի“ սովորութիւնը այժմ շատ տեղերում անհետանալու վրա է:

պտրելու մօրը, եւ այսպէս հասնում է թոնիրի մօտ, մի շարժում բաւական է, որ նա ընկնի այդ կրակի խորի մէջ . . . Ինձ շատ անգամ է պատահել տեսնել գիւղե-րում կիսով չափ խորովված երեխաներ, կամ չափահաս-ներ, որոնց երեսի կամ ձեռների վրա դեռ երեւում են վէրքի նշանները. երբ հարցնում ես պատճառը, պատաս-խանում են, թէ երեխայութեան ժամանակ ընկել եմ թոնիրի մէջ: Ընկնողները մեծ մասամբ ածուխ են դառ-նում: Բայց աղջկայ մահը, ինչ կերպով եւ հասնելու լինէր, պատճառում է ծնողներին ներքին բաւականութիւն: Աւե-լորդ բեռը հեռացվում է ընտանիքից:

Երբ երեխան մէկ տարին լրացնում է, մայրը նրան իր հետ է առնում, երբ պէտք էր գնալ դուրսը գործելու: Այդ նրան շատ զւարճացնում է: Նստած մի ծառի ներքոյ, դալար խոտերի վրայ, նա հանդարտ եւ հետաքրքիր աչքե-ներով նայում է մօր աշխատութեանը: Շատ անգամ անձ-րեւը եւ կարկուտը պատահում են նրան նոյն դրութեան մէջ, եւ փոքրիկ գեղջկուհին երեխայութիւնից սկսում է սովորել եղանակների խստութիւններին: Ամեն անգամ, երբ լաց է լինում նա, մայրը աշխատում է հանգստացնել ապտակներով: Մի անգամ ես առիթ ունեցայ հարցնել մօրից, որ սաստիկ ծեծում էր երեխային, անդադար կրկ-նելով „սուս“ „սո՛ւս“, թէ ի՞նչու է այնպէս վարվում: Նա բաւական սառնասրտութեամբ պատասխանեց. „ծեծում եմ, որ ձէնը կտրի“: Թէեւ ցաւի սաստկութիւնից նա աւելի լաց էր լինում, աւելի ճիչ էր բարձրացնում, բայց մայրը չէր ուզում հասկանալ, թէ ինչն է պատճառը: Բայց աղ-ջիկը շուտով է հաշտվում իր վիճակի հետ. նա մանկու-թիւնից հասկանում է, թէ ինքը իրաւունք չունի պահան-ջել, որ իր հետ մեղմ լինէին, քաղցրութեամբ վարվէին, որովհետեւ նա ա ղ ջ ի կ է:

Երբ փոքրիկ գեղջկուհին սկսում է ոտքի վրա կանգ-

նել, ման գալ, մայրը այլ եւս չէ նայում նրա վրայ. „Նա իր գլուխը կը պահէ", ասում են եւ թոյլ են տալիս մենակ տունից դուրս գալ եւ գիւղական երեխաների հետ խաղալ փոշիների եւ ցեխերի մէջ: Փոյթ չէ, եթէ ամբողջ օրը նա չէր վերադառնայ, նրան մինչեւ անգամ մոռանում են, եւ ուրախ են, որ տանը մօր գործերը չի խանգարում: Իսկ 4—5 տարեկան հասակում նրան արգելում են տղաների հետ խաղալ: Գիւղերում շատ անգամ պատահում են բոլորովին մերկ երեխաներ, որ թափառում են փողոցներում արեգակի այրող ճառագայթների ներքոյ, կամ թաւալվում են ճահիճների ու մօրուտների (лужа) մէջ. բայց նրանց թւում հազիւ թէ կարելի է մի աղջիկ տեսնել նոյն դրութեան մէջ: Սեռական խտրութիւնները, սկսեալ մանկութիւնից, սովորեցնում են փոքրիկ աղջիկներին տղաների մօտ արձակ չը լինել: Ո՞վ չէ տեսել Թիֆլիսում, Սաղի վրայ, մալականի աղջիկները եւ կնիկները, տղամարդերի հետ խառն, բազմութեան աչքի առջեւ, լողանում են Կուր գետի մէջ: Բայց մեր գիւղերում անկարելի է տեսնել, որ մինչեւ անգամ 4—5 տարեկան աղջիկները իրանց հասակակից տղաների հետ լողանային առուակների մէջ: Աղջիկները լողանում են իրանց սեռակիցների հետ եւ ընտրում են առհասարակ ծածուկ տեղեր, կամ երբ մութը բաւական պատել էր երկրի վրա: Տղաները թէեւ աւելի սիրվում են ծնողներից, բայց միշտ կը տեսնէք նրանց կիսամերկ, կեղտոտ եւ պատառոտած շորերով: Բայց աղջիկը, չը նայելով իր ստոր նշանակութեանը, համեմատաբար աւելի մաքուր հագնված է լինում, նրա վրա մերկութիւն չէ նշմարվում, այս դէպքում ծնողները նրան չեն զրկում:

Աղջիկը արդէն եօթ-ութ տարեկան է. հասել է ժամանակը, որ պէտք է մի բան սովորի: Դժբաղդաբար մեր գիւղերում դեռ չը կան աղջկանց դպրոցներ եւ եղածնե-

րը այնքան փոքրաթիւ են, որ պէտք է բացառութիւն համարել: Նրանց ուղարկում են շատ գիւղերում մի տեսակ կանանց մօտ, որ կոչւում են „ուստայ“ (վարպետ), որոնք վարժուհու պաշտօն են կատարում: Վարժուհու մօտ օրուայ մեծ մասը աշակերտուհիները զբաղված են լինում նրա տնային գործերով. դա մի կողմից վարժեցնում է նրանց տնտեսութեան մէջ: Երբ գործերը վերջացել էին, վարպետուհին նստացնում է նրանց իր բոլորտիքը եւ սովորեցնում է կարել, հիւսել եւ ուրիշ ձեռագործութիւններ: Կարդալ նրա մօտ չեն սովորում, որովհետեւ խիստ հազիւ է պատահում, որ այդ տեսակ վարժուհիները գրագէտ լինէին: Վարպետուհին եւ դաստիարակի պաշտօն է կատարում, ծեծում է եւ պատժում է իր սանիկներին, երբ նկատում է մի անկարգութիւն: Ամեն մի այսպիսի վարժուհու մօտ հաւաքված են լինում հնգից մինչեւ տասն կամ աւելի աշակերտուհիներ, որոնց ծնողներից ստանում է նա իբրեւ վարձ տօն օրերում զանազան ընծաներ: Այստեղ աղջիկը պատրաստում է այն բոլոր հագուստները եւ ուրիշ ձեռագործները, որ պսակվելու ժամանակ պէտք է օժիտը կազմէին: Եւ այս պատճառով վարժուհին ստանում է առանձին պարգեւ փեսայի կողմից, երբ հարսանիքի ժամանակ նորահարսի ձեռագործները հանդէսի էին դրվում եւ կնիկներից հաւանութիւն էին գտնում: Վարժուհիները լինում են ըստ մեծի մասին փորձված եւ հասակ առած կանայք. նրանք շատ անգամ գործելու միջոցին իրանց սանիկների ուշադրութիւնը զբաղեցնում են հէքիաթներով, առակներով եւ առածներով, իսկ երբեմն բացատրում են աշակերտուհիներին զբաղեցնող երեւոյթները, կամ մեկնում են երազները: Այս շկոլայից նրանց գլուխները լցվում են անթիւ նախապաշարմունքներով: Աղջիկները երթեւեկում են վարժուհու մօտ մինչեւ իրանց մարդի գնալը: Պատահում է որ աղջիկներին վարժուհու մօտ չեն ուղարկում. նրանք սովորում են տանը կամ մօր

եւ կամ՝ հարսներից մէկի դաստիարակութեան ներքոյ եւ կամ՝ ոչինչ չեն սովորում:

Չէ կարելի մի քանի խօսք չասել գիւղական օրիորդաց դպրոցների մասին. նրանց երկու տեսակի կարելի է բաժանել. մէկը շատ չէ զանազանվում մեր վերոյիշեալ վարպետուհու դպրոցից.— մի կին, որ հազիւ գիտէ գրել կարդալ, հաւաքում է իր մօտ աղջիկներ եւ սկսում է ուսում տալ. նրանք նստած են լինում յատակի վրա, նոյնպէս շարված վարժուհու բոլորտիքը, կամ խօսում են, կամ կարդում են: Միւսը, որ կոչում ենք կանոնաւոր դպրոց, ուր աշակերտուհիները երկար նստարանների վրա են սովորում, կաւիճով են գրում, ուր վարժուհին միայն հսկող է, իսկ դաս են տալիս վարժապետները,—այսպիսի դպրոցներ մի քանի գիւղերում միայն կարելի է գտնել: Առհասարակ գիւղացին նայում է դպրոցին որպէս մի անբարոյականացնող հիմնարկութեան վրա: Այս կարծիքին պատճառ է տուել նախ ընտանեկան փակ կեանքը, որ չէ ներում հասակ առած աղջկան հրապարակ հանել, երկրորդ՝ դպրոցում սովորած աղջկայ անմիաբանութիւնը ընտանիքի նահապետական պայմանների հետ, իսկ երրորդ՝ դպրոցների վատ կազմակերպութիւնը եւ մասամբ վարժապետների գայթակղեցուցիչ վարքը: Ոչինչ այնպէս չէ կոտրում մի լաւ հիմնարկութեան նշանակութիւնը ռամկի աչքում, որպէս նրա մէջ գործողների չար օրինակը: Գիւղացին իր աղջիկը տալիս է դպրոցը շատ փոքր հասակում, այսինքն այն հասակում, որ նրան կարելի է ամեն մարդու մօտ թողնել: Բայց հէնց որ աղջկայ կուրծքը բարձրանում է, նա 12—13 տարեկան է դառնում, իսկոյն դուրս է բերում, ամենեւին չը նայելով, թէ ոչինչ չէ սովորել: Նա սովորում է, իրաւ, մամնաւոր գրել կարդալ, որը հօր տունը դառնալուց յետոյ անգործածութիւնից համարեա մոռանում է: Խիստ սակաւ են այն դպրոցները, ուր ուսուցանում են հաշուել, աշխարհագրութիւն եւ քրիստոնէական վարդապետութիւն: Մեր

գիւղական դպրոցների անբաւականացուցիչ վիճակը գլխաւորապէս այն բանի մէջ պէտք է որոնել, որ թէ աշակերտները եւ թէ աշակերտուհիքը երկար չեն մնում՛ դպրոցում՛: Վերջիններին, այսինքն աշակերտուհիների շուտ դուրս տանելու պատճառը յայտնի է, բայց տղաներինը բոլորովին այլ է.—ծնողքը կամենում՛ են օգուտ քաղել նրանց աշխատութիւնից իրանց գիւղատնտեսական գործերում՛, եւ այս պատճառով տարուայ այն եղանակներում՛, երբ դաշտումը աշխատութիւն կայ, մանուկներին չեն թողնում՛ դպրոցում՛: Նա սովորում՛ է գլխաւորապէս ձմեռը, եւ տարուայ մնացած ժամանակում՛ սովորածը մոռանում՛ է:

Աղջիկից շատ գործ չէ պահանջում՛ գիւղացին, միայն մտածում՛ է շուտ մարդու տալ. եթէ դպրոցը ն պ ա տ ա կ ա յ ա ր մ ա ր լինէր, գիւղացին կը ցանկանար, որ իր զաւակը այնտեղ պահուէր մինչեւ պսակուելը: Նա կը թողնէր աղջկան դպրոցում՛, որպէս մինչեւ մարդու գնալը թողնում՛ է վերեւ յիշած վարպետուհու մօտ, եւ բնաւ կասկած չէր ունենայ, թէ իր զաւակը կը փչանայ այնտեղ: Բայց ի՛նչ պէտք է արած որ աղջկանց դպրոցները նպատակայարմար լինէին: Իմ՛ կարծիքով կրթութեան գործի մէջ պէտք է ի նկատի ունենալ ժողովրդի սովորութիւնները. քանի որ ժողովուրդը դեռ անպատշաճ է համարում՛ իր աղջկայ վիճակը տղամարդվարժապետի ձեռքը յանձնել, քանի որ այս վերջինը այնքան անընդունակ է, որ իր ազնւութեամբ չէ կարողանում՛ ռամկի վստահութիւնը շահել,—մնում՛ է մի հնար գիւղացի աղջիկներին դպրոցի հետ կապելու, այն է, որ փոխանակ տղամարդերի՝ կանայք լինէին նրանց ուսուցիչները: Ես այդ փորձով գիտեմ՛, որ կանանց մօտ գիւղացի աղջիկները աւելի լաւ են սովորում՛ եւ աւելի ազատ են զգում՛ իրանց, մինչդեռ տղամարդերի մօտ սեղմուած են եւ անհամարձակ, մանաւանդ կոշտ-կոպիտ մեր „խալիֆաների“ մօտ, որ պատժական քանոնը ձեռքից չեն գցում՛, չընայե-

*լով, որ քնքուշ սեռի հետ գործ ունեն: Ես դեռ մի օրիորդաց դպրոց եմ ճանաչում, ուր նախակրթարանի մէջ միայն աղջիկները տղաների հետ խառն են սովորում, բայց բարձր դասատներում բաժանվում են: Ցանկալի կը լինէր, որ բոլոր գիւղական դպրոցներում աղջիկները եւ տղաները միասին սովորէին. դա երկու օգուտ կունենար, առաջինը, որ ժողովուրդը փոխանակ երկու դպրոցների, կը պահէր մէկը միայն եւ ազատ կը մնար աւելորդ ծախսերից, իսկ երկրորդը, աղջիկները եւ տղաները միասին սովորելով, կընտելանային միմեանց, այսպէսով կը կազմվէր նրանց մէջ քոյրեղբայրութիւնը, կը լինէին մէկ ընտանիքի—դպրոցի զաւակներ եւ դա միայն կարող էր փշրել մեր մէջ տիրող հին նախապաշարմունքի կապանքը, որ աղջկանից պատրաստում է կանանոցի գերի եւ խլում է նրանց տղամարդի հասարակութիւնից: Եւ այս տեսակ խառն երկսեռ դպրոցները աւելի լաւ կը լինէր, որ կանանց ձեռքը յանձնվէին: Մեր գիւղերում բարոյականութեան դէմ ամենեւին վտանգ չէ կարելի սպասել դպրոցների յիշեալ կազմակերպութիւնից, որովհետեւ թէ աշակերտները եւ թէ աշակերտուհիները շատ փոքրիկներ են լինում, բացի դրանից, գիւղական երեխաները աւելի անմեղ եւ համեստ են լինում քան թէ քաղաքացիները:*

*Խօսենք այն ժամանակի մասին, երբ ծնողքը փոքրիկ աղջկան դուրս են տանում դպրոցից, կամ վերեւ յիշած վարժապետուհու տնից: Դա նրա հասակի փոթորկային ժամանակն է: Աղջիկը այժմ 13—14 տարեկան է: Այդ տարիներում հասունանում է նա եւ մենակ տնից դուրս չեն թողնում: Նա գնում է այգին, պարտէզը, դաշտը, մօր հետ միասին, կամ տան հարսներից մէկի հետ: Միշտ երկու հսկող աչքեր անպակաս են նրա մօտից: Նա գնում է աղբիւրից ջուր բերելու հարեւանների աղջիկների հետ. միքանիսը միայն հաւաքվում են եւ խումբ են կազմում. դրա համար որոշված*

են վաղ առա[illegible] եւ երեկոյեան պահերը, երբ փողոցները դատարկ[illegible] մարդիկներից: Հսկողութիւնը թէեւ կատարվում [illegible]ութեամբ, բայց աղջիկը չէ նեղանում եւ ոչ կարող[illegible]ւակայել, թէ դա անվայելուչ էր: Նա այնպէս հա[illegible]ր է թէ այլ կերպ լինել անկարելի էր, թէ իր հա[illegible] անպատշաճ էր աղջկան մենակ տնից դուրս գալ [illegible]րոու տեղ գնալ; եւ անտրտունջ խոնարհվում է ա[illegible]եան առջեւ: Աղջիկը միշտ իրան այն դալար ծ[illegible]ւթեան մէջ է զգում, որ առանց նեցուկի իսկոյն ցած [illegible]կնէր:

Բայց [illegible]ղեր, ուր համեմատաբար արձակ է կեանքը, այստ ա[illegible]իւ չէք տեսնիլ հասակ առած աղջկան մենակ դա[illegible] բացառութիւնները շատ աննշան են:

Իսկ ինչ որ վերաբերում է ընտանեկան կրթութեանը, նա միանգամայն պայմանաւորվում է աղջկայ ապագայի հետ,—նրանից նախապատրաստում են մի կրաւորական էակ, որպիսին պէտք էր մի նահապետական գերդաստանի անդամ լինելու համար: Հնազանդութիւնը, լռութիւնը, ամօթխածութիւնը եւ պարկեշտութիւնը նրա վարքի անպայման օրէնքներն են: Նա տնացիների հետ շատ սակաւ է խօսում, իսկ օտարների հետ ամենեւին չէ խօսում: „Այնքան լաւ աղջիկ է, որ միսը կտրես, ձայն չի հանի“—դա ամենամեծ գովասանքն է նրա բարքի մասին: Բոլորովին չինէյական տպաւորութիւն է գործում, երբ հանդիպում ես գիւղացի աղջկան մենակ կամ մօր հետ փողոցում գնալիս, նա աչքերը գցած ունի դէպի գետին, մարդի երեսին ուղիղ չէ նայում, այլ մի կողմ է քաշվում, կանգնում է, խորին կերպով գլուխ է տալիս, եւ սպասում է մինչեւ տղամարդը անցնի: Փոյթ չէ, եթէ նա անծանօթ մարդ լինէր: Այսպէս վարվում են եւ ամենափոքրիկները եւ հասակաւոր կնիկները: Մի գիւղում ինձ պատմեցին՝ թէ աղջիկները ու կնիկները առաջ աւելի հա-

մեատ էին, երբ փողոցում՝ տղամարդին հանդիպում՝ էին, բացի գլուխ տալը, մօտենում՝ էին եւ նրա ձեռքը համբու-րում՝ էին: Այդ արդէն չափից դուրս է, որ մեր պարտա-ւորութիւնը նրանք կատարէին:

Աղջիկից շատ սակաւ են պահանջում՝ դրսի գործեր. նա աւելի աշխատում՝ է տնային տնտեսութեան մէջ, կամ՝ որպէս ասում՝ են, պտըտվում՝ է „օջախի“ չորս կողմը: Այդ բանի մէջ նա հլու սպասուհի է. նրան միայն հրամայում՝ են „այս բեր“, եւ „այն տար“. իսկ միջամտութիւն գործել կե-րակուրների պատրաստութեան մէջ, նա չէ կարող, այդ ի-րաւունքը պատկանում՝ է հասակաւոր կնիկներին: Գիւղական խոհանոցի ցուցակը բաւական ընդարձակ է, քան թէ առ-հասարակ լինում՝ է գիւղերում. բոլոր ուտիսուայ կերակուր-ները ունեն իրանց համապատասխանող պասուայ կերա-կուրները: Կանոնաւոր տնտեսութիւնը բաւական զարգա-ցած է մեր գիւղերում, եւ գիւղացին, երբ կարողութիւնը նե-րում՝ է, երբէք իր ընտանիքը կամ՝ իր հիւրերին չէ զրկում՝ ճոխ սեղանից, թէեւ նա միշտ մնում՝ է խնայող: Տնտեսու-թիւնից շատ բան է սովորում՝ աղջիկը ընտանիքի մէջ նկա-տողական կերպով, եւ երբեմն նրան թոյլ են տալիս պրակ-տիկաներ անել: Եթէ նա եղել է դպրոցում, հօր տունը դառնալուց յետոյ գրքերը ծալում՝ է եւ մի կողմ՝ է դնում, բայց կարը, ձեւը, հիւսելը նա շարունակում՝ է աւելի եռանդով:

Ես դառնում՝ եմ դէպի բարոյականութիւնը: Երբ աղջկայ հա-սակը տասնից անցնում՝ է, նա սկսում՝ է իր վրա մտածել. երբ տնից դուրս է գալիս, մազերը սանրված են լինում, աչքերը սուրմայած. նա բաւական մաքուր հագնված եւ լուացված է լինում: Բայց անձնատուր լինել կրքերի, նա երբէք չէ կարող: Կեանքը սաստիկ անազատ է: Աղջիկը կամ՝ միշտ տանն է լի-նում, կամ՝ եթէ թոյլ են տալիս դուրս գալ, նա առանց հսկո-ղութեան չէ: Այսպիսի պայմաններում՝ հասկանալի է, որ նա միջոց չի ունենայ տղաների հետ արձակ յարաբերութիւններ

ունենալ: Ուրիշ ազգերի գիւղերում այսպէս չէ. օրինակ, ռուսների մէջ հասակ առած աղջիկները կատարում են շատ դաշտային գործեր. նրանք գնում են խոտհունձ, գնում են արտը խուրձեր հաւաքելու, անտառում մինակ սունկ են հաւաքում, արածացնում են կովեր եւ հորթեր,—եւ արձակ դաշտերի կամ անտառների թագստեան խուլ տեղերում միշտ հանդիպում են տղայների:

Մեր գիւղերում այսպէս չէ: Ընտանեկան խիստ պայմանները աղջկան երկաթի վանդակի մէջ են պահում: Նա սիրոյ վրայ մտածելու ոչ ժամանակ ունի եւ ոչ կարող է: Թէեւ հասակը եւ բնազդումը շատ բան ուսուցել են նրան, բայց նա խեղդում է իր կրքերը սրտի մէջ: Լինում են խիստ հազիւ դէպքեր, որ աղջիկը զոհ է դառնում կրքերի, եւ եթէ նա մայր էր, իր նախատինքը թաքցնում է ինքնասպանութեամբ: Իրան թունաւորելը կամ խեղդամահ լինելը՝ հասակ առած աղջիկների մէջ պատահում է երբեմն:

Կեանքի պայմանները չեն մօտեցնում տղաներին եւ աղջիկներին մէկ մէկու հետ: Մեր գիւղերում չէ կարելի տեսնել, որ հասակ առած աղջիկներ խառն տղաների հետ խաղային փողոցներում կամ հրապարակների վրայ, եւ կամ նստած միասին, գիւղական սովորութեան համեմատ, խօսակցէին տան դռների առջեւ: Աղջիկները միշտ խաղում են իրանց սեռակիցների հետ, այն եւս ծածուկ տեղերում, հեռու տղամարդի աչքից: Եկեղեցին, որ պիտի միացնէր նրանց, ենթարկւում է ընտանիքի սովորութեան պայմաններին. տղամարդերի եւ կանանց տեղերը որոշված են: Թողեալ այդ, եկեղեցին յաճախում են պառաւները միայն, իսկ աղջիկները եւ մանկահասակ կիները գիւղերում եկեղեցին գնում են տարուայ մէջ մի քանի անգամ միայն, այսինքն զատկին, երբ պէտք էր հաղորդվել: Ուրիշ հասարակական հանդէսներ չկան: Երկու դէպքում միայն աղջիկները եւ տղաները կարող են տեսնել միմեանց, մէկը հար-

սանիքներում, միւսը եկեղեցիների տօնախմբութեան կամ ուխտագնացութիւնների ժամանակ։ Երկուսն էլ շատ նման են միմեանց՝ թէ հարսանիքը եւ թէ եկեղեցու տօնախմբութիւնը։ Ածում են, երգում են, պար են գալիս,—կեանքը փոքր ինչ արձակ շրջանակի մէջ է մտնում։ Բայց այդ դէպքերում եւս աղջիկը դարձեալ ազատ չէ, նա կարող է պար բռնել, երգել միայն իր ազգականների կամ մերձաւոր բարեկամների հետ։ Աղջիկը այն ազատութիւնն է վայելում միայն, որ դեռ կին չը դարձած, նրա երեսը չէ ծածկվում քողով, նրա աչքերը բաց են, կարող է նայել մէկի վրա, եւ կարող են ուրիշները տեսնել նրա դէմքը։ Այդ հնար է տալիս տղային գողանալ նրա դէմքից մի ծածուկ հայեացք, մի ժպիտ... եւ իսկոյն կազմվում է լուռ սիրահարութիւնը, թէեւ խիստ սակաւ է պատահում, որ նրանք այնուհետեւ բաղդ ունենային միւս անգամ հանդիպել միմեանց, կամ պսակվել։

Վէպերում կարելի է տեսնել մեր գիւղական աղջիկների սիրահարութիւնները, բայց կեանքի մէջ դա սակաւ է պատահում։ Եւ եթէ լինում են դէպքեր, գործը վերջանում է առեւանգութենով, այսինքն տղայի աղջկան հօր տնից գողանալով, եւ առանց ծնողների կամքի պսակվելով։ Այսպիսի հանգամանքերում ժողովրդական ռոմանտիզմը խիստ խստութեամբ է վերաբերվում դէպի սէրը.—սիրահարների վարքը կծու պարսաւներով երգվում է ժողովրդի բերանում։

Գիւղերում ամուսնութիւնները կատարվում են հաշիւներով։ Պսակվողների բաղդը կարգադրում են ծնողները, որպէս ցանկանում են։ Աղջկայ եւ տղայի զգացմունքը տեղիք չունի գործի մէջ։ Պսակները լինում են միշտ հաւասարը հաւասարի հետ (կարողութեան կողմից) եւ աւելի աղջկայ ծնողքը աշխատում են, որ իրենց զաւակը մեծ տան հարս լինի։ Այսու ամենայնիւ, այդ ցանկութիւնը մնում է լուռ. ամօթ կը համարվէր, եթէ աղջկայ ընտանիքի կողմից առա-

ջարկութիւն լինէր: Բնակցութիւնը սկսվում է փեսայի հօր կողմից զանազան պատգամաւորների միջոցով, եւ աղջկայ հայրը մինչեւ համաձայնվելը իրանից բաւական խնդրել է տալիս: Ամուսնութիւնները կատարվում են առհասարակ մինչեւ 15 տարեկան հասակը: Գիւղերում հազիւ կարելի է տեսնել 18—20 տարեկան աղջիկներ, եւ եթէ կային այսպիսիները, անպատճառ նրանք խուլ ու մունջեր են, կամ խեղագարներ: Առհասարակ գիւղացին աղջկան երկար չէ պահում, աշխատում է շուտ ազատվել նրանից, որ իրան շատ զբաղեցնում է: „Աղջիկը այն տեսակ պտուղ է, որ հասնելու ժամանակ փչանում է„—ասում է գիւղական առածը:

Որովհետեւ ամուսնութիւնները միշտ հաշիւներով են լինում, այս պատճառով շատ անգամ պատահում են խիստ տարապայման պսակներ: Օրինակ, աղջկայ հայրը մի „լաւ“ փեսայ չը կորցնելու համար իր 5—6 տարեկան երեխան տալիս է մի չափահաս մարդու, կամ ընդհակառակն, իր 15 տարեկան աղջիկը ամուսնացնում է մի 4 տարեկան տղայի հետ: Եւ մեր գիւղական քահանաները միշտ պատրաստ են մի քանի ապասով այսպիսի պսակներ անել: Երբեմն նշանում են աղջկան, երբ նա դեռ օրօրոցումն էր, դա կոչվում է թուրքերէն բառով „բէշիկքասմայ“ այսինքն օրօրոցում կտրած կամ վերջացրած: Դուք չէք զարմանայ, եթէ ասեմ, որ երբեմն աղջկան նշանում են, երբ նա մ՚օր արգանդից դեռ լոյս աշխարհ չէր մտել: Փեսայի հայրը ուխտ է դնում աղջկայ հօր հետ, ասելով, „եթէ քո կինը աղջիկ ծնէ, նա պէտք է իմ որդու հարսը լինի„: Շատ անգամ երկու ընտանիքների մէջ հին տոհմային թշնամութիւնները վերջացնում են միմեանց աղջիկ տալով կամ առնելով(*): Երբ աղջիկը այսպիսի նիւթական հաշիւ-

* Մի ծերունի Սիւնեաց երկրից պատմում էր, թէ ինքը տեսել է,

ների առարկայ է դառնում, շատ հաւանական է, թէ նա որակեալ բաղդի կը հանդիպի, կամ ինչ կը լինի նրա դրութիւնը ամուսնութիւնից յետոյ: Ես ինքս վկայ եմ եղել մի եղեռնագործութեան, որ կատարվեցաւ մի գիւղում. մի հասակ առած աղջիկ տուել էին մի փոքրիկ տղայի, որ մի հարուստ տան միակ ժառանգն էր: Աղջիկը մի գիշեր անկողնի մէջ խեղդում է նրան: Բժիշկները քննելով աղջկան, գտան նրա մէջ խելագարութեան նշաններ, որ առաջ էին եկել սեռական բորբոքումից ուղեղի վրա:

Աղջիկները առհասարակ վաղ են մարդու գնում եւ այդ գլխաւորապէս պահպանում է նրանց բարքի ապականութիւնից: Օժիտի սովորութիւնը դեռ մտած չը լինելով

---

որ Ղարաբաղի գիւղերում աղջիկներին մի ժամանակ պսակում էին գ դ ա կ ի վրա: Ինձ ծիծաղելի երեւաց այդ խօսքը: Բայց երբ նա բացատրեց պատճառը, ես համոզվեցայ թէ կարող էր այսպէս լինել: Պարսիկների բռնակալութեան ժամանակ, երբ խաները առեւանգում էին Հայոց աղջիկներին, որը գեղեցիկ էր, ծնողները շտապում էին նրանց շուտով պսակել տալ մի տղայի հետ, որովհետեւ ամուսնացած կնոջը չէին յափշտակում. այլ իրանց հարեմի համար ընտրում էին միայն կոյս աղջիկներ: Պատահում էր, այն տղան, որի հետ կամենում էին պսակել աղջկան, գտնվում էր հեռու գիւղում, կամ պանդխտութեան մէջ, պսակի խորհրդին ներկայ լինել չէր կարող: Այն ժամանակ փեսան իր փոխարէն ուղարկում էր իր գդակը. որը մի ձողի գլխին ցցելով, հարսի հետ տանում էին եկեղեցին եւ կատարում էին ամուսնութեան խորհուրդը: Այդ բանը, առաջ գալով դէպքերի ստիպմունքից, հետզհետէ սովորութիւնների կարգը անցաւ: Ռամկի մէջ առհասարակ գդակը գլխի կամ անձնաւորութեան նշանակութիւն ունի.—„Գդակդ քեզ հառամ ըլի“—„գդակդ թաղեմ“—„գդակդ արնով տեսնեմ„—այդ անէծքները սովորական են գիւղացիների մէջ: Ինձ պատահել է տեսնել գիւղական խնջոյքներում, երբ կոչնականներից մէկը դուրս էր գնում, գդակը դնում էր իր նստած տեղը, որ միւսները երեւակայեն, թէ նա ներկայ էր: Մարդուն ամեն մի պատկանող իրը՝ նրա անձնաւորութեան տեղ ընդունելու շատ օրինակներ կան: Տեսնում ես, մի գիւղացի իր ծառային կամ որդուն ուղարկում է մի ուրիշ գիւղացու մօտ գործով. պատգամաւորը յայտնում է նրա կամքը, աւելացնելով. „Ըթէ չես հաւատում, տես հօրս միրուքի սանդրը:“ Շատերը սանդրի փոխարէն ուղարկում են միրուքից մի մազ:

մեր գիւղերում, բաւական հեշտացնում է ծնողներին կատարել իրանց ցանկութիւնը, աղջիկներին շուտով ամուսնացնելու: Շատ տեղերում դեռ մնացել է այն հին սովորութիւնը, որ աղջկայ հայրը փոխանակ ինքը տալու, ստանում է փեսայի հօրից փող կամ ուրիշ մթերք: Դրա մէջ շատերը տեսնում են մի բարբարոսական առեւտուր, իբր թէ հայրը վաճառում է իր զաւակը: Բայց այդպէս չէ: Փեսայի հօրից ստացածը ծախսում է աղջկայ հայրը, գնում է զանազան հագուստներ եւ կարասիք, որը իր հետն տանում նորահարսը դառնալով փեսայի տունը: Աղջկայ հայրը ոչինչ չէ շահում, զուցէ մի բան էլ աւել իր քսակից է դնում: Առհասարակ ամուսնութիւնը, որպէս մի նշանաւոր պայման ընկերական կեանքի, արտայայտվում է մեր ռամկի մէջ այնպիսի ձեւերով, որ ցոյց են տալիս նրա խորին հասարակական նշանակութիւնը: Ժողովուրդը համարում է նրան ընդհանուրի գործ, եւ այդ դէպքում երեւան է գալիս մինը միւսին օգնելու փոխադարձ համերաշխութիւնը: Ես կը պարզեմ այդ աւելի որոշ կերպով: Գիւղական հարսանիքները կատարվում են ձմեռը, երբ գինին հասունանում է, երբ գիւղացիք անգործ են եւ կարող են ազատ կերպով զուարճանալ: Հարսանիքները հին սովորութեան համեմատ տեւում են եօթն օր եօթը գիշեր, այժմ թէեւ թեթեւացել են, բայց դարձեալ ծանր են առաւելապէս աղքատների համար: Մի քանի օր գիւղի ամբողջ հասարակութիւնը ուտում, խմում եւ քէֆ է անում հարսանիքի տանը: Հարսանիքի հանդիսակատարութիւնը կապված է բազմաթիւ ծէսերի եւ արարողութիւնների հետ: Ամօթ է համարվում, եթէ մէկը յետ կը մնար հասարակաց սովորութիւնից: Եւ սովորութեան հետեւելը կարող էր պատճառել կատարեալ չքաւորութիւն, եթէ հասարակութիւնը չօգնէր: Եւ ահա ի՛նչ է լինում. աղջկայ հայրը, որպէս յիշեցի, այնքան ստանում է փեսայի հօրից, որ համարեա ծածկում է իր ծախսերը,

իսկ փեսայի հայրը ստանում է նուէրներ ըստ մեծի մասին փողով իր դրացիներից, որ ընծայվում են հարսի անունով: Դրանով նա ազատվում է հարսանիքի ծախսերից, եւ այս-պիսով մի զոյգ պսակվում են հասարակութեան փողով, թէ եւ այդ փողը ստացվում է կողմնակի կերպով:

Կին լինելուց յետոյ աղջիկը իր ազատութիւնը բոլորովին կորցնում է: Հօր տանը թէեւ նոյնպէս ճնշված էր, բայց դարձեալ ուրախ էր, որովհետեւ իւրայինների մօտ էր գտնվում: Այժմ ընկել է նա մի անծանօթ շրջանի մէջ, ուր ամեն ինչ նրան օտար է: Նոյն իսկ փեսային նա նոր է տեսնում, եւ տեսնում է միայն գիշերով: Հօր տան ճնշումները այստեղ աւելի բարդվում եւ բաղադրեալ են դառնում: Այնտեղ նա իրաւունք չունէր միայն օտարների հետ խօսելու, իսկ այստեղ չէ կարող ոչ ոքի հետ խօսել: Իր փեսայի հետ նա խօսում է գաղտնի, երբ մի երրորդ անձն ներկայ չէր, իսկ ընտանիքի միւս անդամների հետ (բացի երեխաներից) խօսում է պ օ ն տ օ մ ի մ ա յ ո վ: Հօր տանը նրա երեսը բաց էր, կարող էր ազատ նայել դէպի Աստուծոյ աշխարհը, իսկ այստեղ նրա դէմքը ծածկված է թանձր կարմիր քողով, ոչ ոքի ցոյց տալ չէ կարող, մինչեւ անգամ իր փեսային, եթէ նրա մօտ մի օտար մարդ կար: Կնոջ համար ասել՝ „երեսը բացված կին է“, գիւղացու լեզւում մի եւ նոյն նշանակութիւնն ունի, որպէս ասել՝ լիրբ է, անզգամ է: Կնոջ այս „չխօսկանութիւնը“ *), այդ փոր-ձութիւնը հին սովորութիւնների համեմատ, շարունակվում էր ե օ թ ը տարի, երբ այդ շրջանը անցնում էր, հասակաւոր կնիկները հաւաքվում էին եւ հանդիսաւոր կերպով նրա “քողը փոխում էին“, այսինքն կարմիր քողի փոխարէն ձգում էին նրա երեսի վրա սպիտակ, եւ այն օրից նա արտօնութիւն էր ստանում երեսը կիսով չափ բաց անել, եւ ըն-

* Յունաստանում կար մի դպրոց, ուր աշակերտները մի որոշեալ ժամանակ պէտք է միայն լուռ լսէին, խօսելու իրաւունք չունէին:

*տանիքի մի քանի անդամների հետ խօսել, բայց ոչ սկե-
սուրի եւ սկեսրայրի հետ: Այժմ յիշեալ պաշտօնական ծե-
ւերը շատ տեղերում չեն կատարվում. այլ երբ կինը մի
քանի զաւակների մայր է դառնում, երբ նա իր մանկու-
թիւնը անց է կացնում, այն ժամանակ կարմիր քօղի փո-
խարէն սպիտակն է կրում. բերանը փոքր առ փոքր բաց
է լինում, եւ կարողանում է իր դէմքը, եթէ ոչ օտարնե-
րին, գոնեա իր մերձաւոր բարեկամներին ցոյց տալ: Կարճ
ասած, կինը այն ժամանակ միայն հասարակութեան ան-
դամ է դառնում (իր նեղ մտքով), երբ պառաւում է:*

*Խօսելով հարսանիքի միայն տնտեսական կողմերի վրա, ես
մոռացայ մի բան: Առհասարակ գիւղական հարսանիքը այն-
քան հետաքրքիր խորհուրդներ ունի, որ պէտք է նրա մա-
սին մի փոքր մանրամասն խօսել, բայց դա իմ հետազօ-
տութեան նպատակից դուրս լինելով, ես չեմ կարող լռել
այն բանի մասին, որ վերաբերում է կին լինող աղջկայ
բարոյականութեանը:*

*Ես կրկին վերադառնում եմ այն ժամանակին, երբ աղ-
ջիկը կին է դառնում: Հարսի մօրը փոխարինում է սկեսուրը:
Անձինքը փոխվում են, բայց դերերը մնում են մի եւ նոյնը:
Սկեսուրը մայր է դառնում, այն զանազանութեամբ մի-
այն, որ նրա մէջ մայրական գութը բոլորովին բացակայ
է գտնվում: Դա աւելի խիստ է, աւելի պահանջող է եւ
աւելի դիտող է: Ամբողջ օրը նա մրթ-մրթում է, նրան գո-
հացնել անփորձ հարսը երբէք չէ կարող: Պառաւները գիւ-
րագրգիռ են լինում, եւ նա միշտ բարկանում է: Ոսկրնե-
րի հետ նրա մէջ քարացել է եւ սիրտը: Առաւօտից մինչեւ
կէս գիշեր հարսը պտըտվում է սկեսրոջ շուրջը, նրա զա-
նազան հրամանները կատարելով: Նա չէ կարող մի նշան
անգամ ցոյց տալ յոգնելու կամ դժգոհութեան: Ամբողջ օրը
նա անց է կացնում ոտքի վրա, իսկ գիշերը իր անկողինն
է մտնում, երբ ընտանիքի բոլոր անդամները քնած էին.*

նա պէտք է ամենի տեղերը պատրաստէ, ամենին հան-
գստացնէ: Վաղ առաւօտեան նա ոտքի վրա է, երբ բոլորը
դեռ քնած էին: Սկեսուրը զարթնելով, անպատշաճ է, որ
նրան անկողնի մէջ տեսնէ: Նա այն աստիճան համբերող
է լինում, որ շատ անգամ բաւական ծանր հիւանդութիւն-
ներ տանում է ոտքի վրա, առանց պառկելու: Նա ոչ ոքին
չէ յայտնում իր տկարութեան մասին, գուցէ գիտէ ամու-
սին այրը, բայց նա նոյնպէս լռում է: Հիւանդութեան
պատճառով չը գործելը՝ գիւղացի կնոջ մասին համարվում
է ծուլութեան նշան: Ամուսին այրը չէ կարող պաշտպան
հանդիսանալ կնոջ տանջանքները թեթեւացնելու համար:
Եւ մի՞թէ նա կարող է հասկանալ, թէ նրա կրածները տան-
ջանք է.—այդ զգացմունքը չէ տուած գիւղացի մարդուն. նա
վարվում է կնոջ հետ նոյն անգթութեամբ, որպէս իր վարը
վարող եզան կամ գոմէշի հետ:

Ամուսնութեան առաջին տարիներում հարսի գործու-
նէութիւնը աւելի սահմանափակվում է տնային տնտեսու-
թեան նեղ շրջանում, նրան խիստ սակաւ են դուրս թողնում:
Եթէ նա այգին, պարտէզը կամ դաշտն է գնում, միշտ պա-
ռաւ սկեսուրը կամ մեծ հարսներից մէկը իր հետն են
լինում: Այսպիսի հանգամանքներում հասկանալի է ման-
կահասակ հարսի բարոյականութիւնը: Այս ասելով ես
նպատակ չունեմ պաշտպանել այն միտքը, թէ հարեմա-
կան դրութիւնը կարող էր բարոյականութիւնը պահպանել:
Բայց միեւնոյն ժամանակ պէտք է նկատել, որ սիրահա-
րութիւնների համար բաւական ժամանակ եւ ազատութիւն
հարկաւոր է, որոնցից զուրկ է գիւղացի կինը: Յոգնած եւ
միշտ աշխատող մարմինը հեշտասիրութիւն չէ զգում*):
Գիւղերում կինը այնքան սեղմված է, որ ոչինչ ծածուկ չէ

---

* Բացի դրանից, ընտանիքը այնպիսի խիստ բարոյական եւ հաստատուն հիմունքների վրա է կազմված, որ կինը չէր կարող թեթեւ վարքի տէր լինել:

մնում: Կնոջ մի համարձակ նայվածքը, մի բառը օտար տղամարդի հետ, իսկոյն բամբասանքի առարկայ է դառնում: Ամուսնական անհաւատարմութիւնը խիստ հազուագիւտ է գիւղերում, եւ եթէ լինում են օրինակներ, պատժվում են մահով. խանդոտ տղամարդը ծածուկ կամ յայտնի սպանում է նրան, եւ հասարակաց կարծիքը արդարացնում է այդ եղեռնագործութիւնը: Իսկ եթէ ամուսինը համբերում է կնոջ անառակութիւնը, նրա ընտանիքը դուրս է ձգվում գիւղական հասարակութիւնից: Դրանք զետեղվում են քաղաքներում: Պէտք է յիշել եւ այն, որ գիւղացի կինը ս ի ր ե լ չգիտէ. նա միշտ երկու ծայրերի վրա է կանգնում, կամ լինում է հասարակաց կին, կամ իր ամուսնի կինը.—սիրականներ պահելու նա ոչ շնորհք եւ ոչ յարմարութիւն ունի: Նրա յարաբերութիւնները իր տղամարդի հետ նոյնպէս չէ կարելի ասել, թէ սիրային բնաւորութիւն ունեն.—որպէս նրա ձեռքերը կոշտացել են աշխատութեան մէջ, այնպէս էլ սիրտը կորցրել է իր զգայականութիւնը: Դուք չէք տեսնի գիւղացի կնկան, որ նա մինչեւ անգամ իր շատ մերձաւոր բարեկամուհիների մօտ խօսէր ամուսնի վրա: Երբ նրա մասին խօսք է բացվում, կինը համարձակութիւն չունի նրա անունը անգամ բացարձակ կերպով արտասանելու, այլ միշտ գործ է ածում „նա„ դերանունը, կամ այսպիսի խօսք` „Ստեփանի հայրը“, դրանով հասկանում են որ իր մարդուն է ակնարկում, որովհետեւ Ստեփանը նրա որդին է:

Բայց պէտք է նկատել եւ այն, որ բարքերի մաքրութիւնը առաւելապէս պահպանվում է այն գիւղերում, որոնք հեռու են քաղաքներից եւ որոնք մեծ ճանապարհների վրա դրված չեն: Օտար ազգերը մտցրին մեր գիւղերում եւ օտար մոլութիւններ, որոնք առաջ ծանօթ չէին: Այն օրից, որ գիւղերում յայտնվեցան գինեվաճառի դուքաններ, անբարոյականութեան ժանտախտը տարածվել սկսեց, թէեւ ոչ

ոք չէ տեսել, որ գիւղացի կինը մտնէր դուքանը խմելու համար, կամ արբած եւ ընկած լինէր փողոցում: Բայց դուքանները քաշում են դէպի գիւղերը այնպիսի օտար եւ խորթ հասարակութիւն, որոնցից մեր կանայք լաւ բան սովորել չէին կարող.... Եւ այդ անբարոյականացնող հիմնարկութիւնները լինում են միայն մեծ ճանապարհների վրա եղած գիւղերում:

Ես եղել եմ Պարսկաստանում եւ Տաճկաստանում, այնտեղի գիւղացի հայ կանայքը համեմատաբար աւելի բարոյական են, քան թէ այստեղինները: Ի՞նչով մեկնել այս երեւոյթը: Իմ կարծիքով ուրիշ պատճառ չը կայ, քան թէ այն որ այնտեղ հայը կարողանում է պահպանել ընտանեկան մաքրութիւնը իր վաղեմի սրբութեան մէջ, թէեւ լինում են մահմետականների կողմից առեւանգութիւններ, բռնաբարութիւններ, բայց այդ դէպքերը աւելի առիթ են տալիս պահպանելու կնոջ անմատչելութիւնը:—Բռնութիւնը առաջ է բերում ինքնապահպանութիւն, իսկ վտանգաւոր է այն ազատութիւնը, որ իր հետ բերում է բարքերի ապականութիւն: Այստեղ այդ կրիզիսի մէջն է գտնվում հասարակութիւնը:

Ես այժմ դառնում եմ դէպի կնոջ աշխատութիւնը, թէ ինչով է օգնում նա տղամարդին գիւղատնտեսական գործերում: Նորահարսի աշխատութիւնները աւելի թեթեւ են լինում, համեմատելով հասակ առած կնիկների աշխատութեան հետ: Պառաւ սկեսուրները նրանց շատ չեն նեղացնում դրսի գործերով, եւ աւելի բանեցնում են տնային տնտեսութեան մէջ: Այդ յառաջ է գալիս մասամբ այն սովորութիւնից, որ մանկահասակ հարսին իսկոյն դուրս թողնելը կարող էր վնասակար ազդեցութիւն ունենալ նրա վարքի վրա: Այսուամենայնիւ, կանանց աշխատութիւնները ամեն տեղ մի եւ նոյնը չեն, նրանք փոխվում են, նայելով տեղային պահանջներին: Այն գիւղերում, ուր բամբակի մշա-

կութիւն կայ, օրինակ, Երեւանի նահանգում, կնիկները բոլորովին խեղդված են աշխատութիւններով, բամբակի մշակութեան մեծ մասը նրանց վրա է. „քաղհան“ են անում, հաւաքում են հասունացած կօզակները, մաքրում են բամբակը կեղեւից եւ կորիզներից, նրանից թել են մանում եւ այլն: Այն գիւղերում, ուր այգեգործութիւնը զարգացած է, կնիկները դարձեալ շատ գործ ունեն. պտուղներ հաւաքելը, չորացնելը, խաղողի քաղելը, բոլորը նրանց գործն է: Ագարակային բերքերի, պարտէզների, բանջարանոցների մշակութիւնը նոյնպէս կնոջ գործ է: Կինը չէ մասնակցում միայն մանգաղի, բահի եւ արօրի գործածութեան մէջ: Տեղերի յարմարութեան համեմատ, կնոջ աշխատութիւնը աւելի բարդվում է եւ բազմատեսակ է դառնում: Մեր գիւղացին ծոյլ չէ եւ ոչ տգէտ, նա չէ բաւականանում գիւղատնտեսութեան մի ճիւղովն միայն, երբ հող ունի եւ տեղային պայմանները ներում են, նա ընդարձակում է իր տնտեսութիւնը. մի եւ նոյն ժամանակ նա երկրագործ է, ցանում է ցորեան, գարի, կտաւհատ, քունջութ, կանեփ, գերչակ եւ այլն, եւ մի եւ նոյն ժամանակ այգեգործ է, գինեգործ է, անասնապահ է,—այդ բոլորը աւելացնում են կնոջ աշխատութիւնը: Գիւղերում, ուր վարում են կիսախաշնարածական եւ կիսաերկրագործական կեանք, կնոջ աշխատութիւնը աւելի բարդվում է, անասունների դարմանելը համարեա նրա վրա է մնում: Նրանք կթում են կաթը, իւղ եւ պանիր են պատրաստում. նրանք խուզում են ոչխարները, բուրդից թել մանում, եւ իրանց ամուսինների համար հագուստ պատրաստում: Մի քանի տեղերում կինը արհեստագործում է գեղեցիկ գորգեր, կարպետներ եւ շալեր, որ վաճառականութեան նիւթ է դառնում: Մեծ տարբերութիւն կայ լեռնային եւ տափարակային տեղերի մէջ կնոջ թէ կեանքի ձեւերի եւ թէ պարապմունքի վերաբերութեամբ: Լեռնային սարաւանդների վրա կեանքը դեռ

շատ չէ փոխվել իր նախնական ձեւերից. մարդը դեռ աւելի հովիւ է, քան հողագործ: Իսկ կինը աւելի մօտ է բնութեանը: Այստեղ նա ապրում է կատարեալ նահապետական պարզութեան մէջ: Բայց դաշտային տեղերում, տափարակների վրա, կուլտուրայի ազդեցութեան ներքոյ, կնոջ աշխատութիւնը եւ կենցաղավարութեան եղանակը փոխվում են եւ աւելի բազմատեսակ են դառնում:

Առհասարակ խօսելով, գեղջկուհին շատ է գործում, բայց նա աշխատում է ոչ իբրեւ ստրկուհի, որին մտրակով վարում են դաշտը, այլ որպէս ընտանիքի անդամ, որի հոգսերը նա բաժանում է: Նա գիտակցաբար է գործում, եւ այդ է, որ չէ յոգնեցնում նրան: Նա գիտէ, որ ապրուստը աշխատութիւն է պահանջում, եւ չէ ցանկանում բոլորը ձգել տղամարդի վրա: Տնտեսութեան մէջ կնոջ եւ տղամարդի աշխատութիւնները այն աստիճան որոշված են, որ ամէն մինը ճանաչում է իր պարտաւորութիւնը, եւ երբէք միմեանց չեն խանգարում, եւ ոչ հարստահարում: Կեանքը ընտանեկան խիստ պայմանների մէջ մշակել է որոշ օրէնքներ ու կանոններ, որ պահպանվում են սրբութեամբ: Եւ եթէ մենք ունենք այսօր գիւղացիներ, որ 50 եւ 100 հազարների տէր են, այդ պէտք է որոնել նրանց տոկուն եւ անընդհատ աշխատութեան մէջ: Մեր գիւղացին ամբողջ տարին գործում է, մինչեւ անգամ Տիրոջ հանգստեան օրերը նա չէ պահում: Ձմեռը միայն կարողանում է նրան քշել տան ծածքի տակ, բայց այստեղ եւս անգործ չէ մնում: Այսպիսի շարժուն գործունէութիւնը նրան յետ է պահում շատ մոլութիւններից եւ նա անձնատուր չէ լինում արաղի եւ արբեցութեան: Խնայողութիւնը, ապագայի հոգսը, որպէս ամէն հայ մարդու, նոյնպէս եւ գիւղացու տնտեսութեան յատկանիշն է: Բայց զարմանալի տարբերութիւն է տեսնվում Վրաստանի հայ գիւղացիների եւ նրանց մէջ, որ մի ժամանակ Պարսից տիրապետութեան ներքոյ են

եղել. առաջինների մէջ նշմարվում է վրացու ծուլութիւնը եւ անհոգութիւնը, թէեւ համեմատաբար դարձել բարձր են վրացուց:

Ծորտութիւնը խլում է գիւղացուց աշխատութեան եռանդը, նրա ինքնագործունէութիւնը, եւ մի եւ նոյն ժամանակ փչացնում ընտանիքի բարոյականութիւնը: Ծորտութիւնը պատրաստում է գիւղացուց անասուն իր կատարեալ նշանակութեամբ: Այդ նշանները դեռ մնում են թէ վրացի եւ թէ ռուս գիւղացու վրա: Բայց հայը, ոչ մի ազգի տիրապետութեան ժամանակ ճորտ չէ եղել, եւ այդ է պատճառը, որ նա համեմատաբար աւելի շատ է զարգացել ինքնագործունէութեան մէջ: Մեր գիւղացի կինը գիտէ արհեստագործել մինչեւ անգամ տնտեսական այն անհրաժեշտ պիտոյքները, որ ուրիշ երկրներում ստացվում են գործարաններից, օրինակ, պանիր մակարդել, սապոն պատրաստել, մոմ թափել, միս աղխտել, մեղուներ խնամել եւ այլն: Նա ծանօթ է մի քանի ներկերի հետ, որ ստանում է հանքերից, արմատներից եւ բոյսերից: Նա ծանօթ է մի քանի բժշկական դեղերի եւ հնարների հետ, եւ հարկաւորած ժամանակ ինքն է հոգ տանում զաւակների հիւանդութեանը: Բայց պէտք չէ մոռանալ եւ այն, որ զանազան խուլ տեղերում, այսինքն ճանապարհների հաղորդակցութիւնից դուրս, տակաւին հանդիպում են գիւղեր, որոնց մէջ կեանքը դեռ գտնվում է, եթէ չասենք իր նախնական վիճակի մէջ, բայց կրում է խորին նահապետական կերպարանք: Մարդիկ բնակվում են Քսենոփոնի նկարագրած գ ե տ ն ա փ ո ր ն ե ր ի մէջ: Բայց դրանք այլ եւս զազաններ չեն. ուտում են հաց եւ մարմինները ծածկված են ըստ մեծի մասին իրանց ձեռքով արհեստագործած հագուստներով. շատերը նրանցից սեփականութեան տէրեր են:

Այժմ ես դառնում եմ դէպի գեղջկուհու մտաւոր զարգացումը: Ընթերցողը թող յիշէ այս հետազօտութեան

սկզբում դրած փոքրիկ նկարագիրը, որ պատկերացնում էր գիւղական ընտանիքի կազմակերպութիւնը: Կինը հպատակում է տղամարդին անպայման հնազանդութեամբ, իսկ ընտանիքի բոլոր անդամները խոնարհվում են գերդաստանի երեցների առջեւ: Կնոջ դերը բոլորովին կրաւորական է, իսկ տղամարդինը—ներգործական: Այդ դէպքում, հասկանալի է, որ կինը չէր կարող ազդող լինել եւ փափկացնել տղամարդի բարքի կոշտութիւնը: Տղամարդը միշտ այն համոզմունքն ունի, թէ „կնկայ ծամը երկայն է, բայց խելքը—կարճ“: Տղամարդը կատարեալ տէր է, իսկ կինը հպատակ: Այսուամենայնիւ, նա չէ ծեծում կնկան.—ծեծը եւ կռիւը յառաջ են գալիս աւելի այն ժամանակ, երբ կինը իրան հաւասար աստիճանի մէջ է դնում տղամարդի հետ: Ընտանիքի կազմակերպութիւնը, որ ենթարկում է կնոջը անպայման հնազանդութեան, որ խլում է նրանից ամեն ազատութիւն, որ ստիպեցնում է կուրօրէն հետեւել բոլոր ընդունված ծէսերին եւ սովորութիւններին,—մի այսպիսի խիստ միապետական կազմակերպութիւնը, անկարելի է, որ չը հասցնէր կնոջը միակողմանիութեան, անշարժութեան եւ վերջապէս—ըթամտութեան: Աւելացնենք աշխատութիւնը, անդադար եւ միակերպ աշխատութիւնը, որ շինում է կնկանից մի մեքենայ, մի ողորմելի կրաւորական էակ,—այն ժամանակ կըպարզվի նրա մտաւոր վիճակը: Ամեն մի կին իր մօր շարունակութիւնն է. նա անփոփոխ աւանդում է իր յաջորդին այն, ինչ որ ստացել էր մօրից: Կնոջ խելքը եւ միտքը այսպիսի պայմաններում զարգանալ կարող չէ: Անընդհատ եւ դժնդակ աշխատութիւնը, բացի խելքից, չէր կարող չազդել գիւղացի կնոջ եւ մարմնական կազմուածքի վրա: Նա խիստ շուտով է կորցնում իր թարմութիւնը. դեռ երեսունի չհասած, նա արդէն պառաւել է: Եւ ի՞նչ է ստիպում նրան պահպանել իր կանացութիւնը. ամուսին այրը գործ է

պահանջում եւ ոչ գեղեցկութիւն: Խիստ սակաւ կարելի է տեսնել որ մինչեւ անգամ բաւական կարողութիւն ունեցող տան կինը լաւ հագնուած լինէր: Անհասարակ այն կինը, որ իրան մաքուր է պահում եւ լուացվում է, համարվում է կասկածաւոր: Մինչեւ այսօր գիւղերում կօշիկները ընդունուած են որպէս զարդ, եւ ոչ ոտնամաններ: Մօտեցէք գիւղացի կնոջը, իսկոյն ձեր քթին կըխփէ մի վատ հոտ: Ի՞նչից է այդ: Ամեն օր թոնիրը վառում են կերակուրի եւ հաց թխելու համար, ամեն օր ամբողջ տունը լցվում է աթարի կծու ծխով եւ մխով: Խեղճ կինը այդ ծուխի մէջ ապուխտ է դառնում: Հայ կնոջ աչքերը, որ բնութիւնից այնքան գեղեցիկ են, բոլորովին փչանում են ծխի եւ փոշու մէջ. դուք շատ սակաւ կը տեսնէք առողջ աչքեր: Ծանր աշխատութեան եւ ընտանիքի ճնշման ներքոյ կինը բոլորովին կորցնում է իր ուրախութիւնը. Նրա երեսին երբէք ծիծաղ չէք տեսնի. նա միշտ տխուր է: Նրա մէջ չը կայ բնաւորութեան եւ այն զուարթութիւնը, որ յատուկ է մինչեւ անգամ վայրենիներին: Ով գործ է ունեցել գիւղացի կնոջ հետ, գիտէ, որ նրա մէջ սիրտը մեռած է . . .

Քաղաքներին մերձաւոր գիւղերը, յարաբերութիւն ունենալով քաղաքացիների եւ համեմատաբար աւելի զարգացած հասարակութեան հետ, ցոյց են տալիս մի քանի փոփոխութեան նշաններ: Քաղաքի մոլութիւնները ներս են սողում գիւղական համեստ խրճիթներում նորաձեւութիւնների հետ: Թէյի գործածութեան հետ մտնում է եւ ի ւ փ կ ա յ ն ե ր ի գործածութիւնը: Կնիկների երեսները կամաց-կամաց բացվում են. նրանց բերանի փականքը բարձվում է: Հասկանալի է վտանգը, երբ կեանքի այլափոխութիւնը սկսվում է հագուստից եւ կերակուրներից: Այս տեսակ կանայք, որոնց կարելի է կոչել գիւղական մ օ դ ն ի խ ա ն ո ւ մ ն ե ր, մի ծիծաղելի խառնուրդ են ներկայացնում.

նրանք „ոչ հայի խունկ են եւ ոչ Թուրքի ուղարլիկ" *: Խօսացրու նրան, կըտեսնես, որ նա ոչինչով չէ տարբերվում միւս գռեհիկներից, բացի մի քանի լրբութիւններից, որ չես տեսնի իր նախնական ձեւի մէջ մնացած կնոջ մօտ:

Այս բոլորից յետոյ կայ մի բան, որ մեծ ապագայ է խոստանում: Գիւղացու ընտանեկան կեանքը իր հաստատուն հիմունքներով եւ իր բարոյական զօրութեամբ մի շատ արգաւանդ հող է կրթութեան գործի համար: Նրա մէջ կան անմշակ, բայց հարուստ ընդունակութիւններ: Ես ոչ մի ուրիշ պատճառ չեմ ճանաչում, որ պահպանեց հային իր աննախանձելի պատմութեան երեսից,—բայց միայն ընտանիքի բարոյական զօրութիւնը իր որոշ առանձնութիւններով: Դարերի ստրկութիւնը եւ ճնշումը չէ քարացրել նրան այն աստիճան, որ անընդունակ լինէր մի նոր փոփոխութեան. այլ ընդհակառակն կեանքի կռուի մրցութիւնը շինել է նրանից բաւական գործնական մարդ: Նա չափազանց էլաստիկային եւ դիւրաթեք բնաւորութիւն ունի: Այս պատճառով մենք չենք կարող ասել, թէ ունենք գիւղական հասարակութիւն, այդ բառի ճիշդ նշանակութեամբ: Մեր գիւղացին գիտէ հանգամանքներից օգուտ քաղել, նա կեանքի պայմանների հետ այնպէս շուտ հաշտվում է, եւ յարմարութեանը նայելով, այնքան ճարպիկ կերպով փոխում է իր պարապմունքների ձեւը, որ այսօր նա հողագործ է, միւս օր վաճառական է դառնում, յետոյ արհեստաւոր եւ այլն: Եւ ամեն գործի մէջ նրան հետեւում է կինը: Դուք կըտեսնէք մեր գիւղացիներից ոչ միայն հարուստ վաճառականներ եւ արհեստաւորներ, այլ ծառայողներ, աստիճանաւորներ, բժիշկներ, վարժապետներ եւ պրօֆէսօրներ: Մինչ հզօր պետութիւնները դժուարանում

---

* Մի տեսակ բոյսի սերմ է, որ մահմետականները ծխում են գերեզմանների վրայ, որը խիստ անախորժ հոտ ունի.

են պարտաւոր ուսումը մտցնել իրանց գիւղացիների մէջ, մերոնք արդէն դպրոցներ ունեն, կամ մտածում են ունենալ: Մի առաջնորդող, մի օրինակ բաւական է, որ նա հասկանայ կրթութեան օգուտը: Բայց բոլորի վրայ գործնականն եւ շահի կէտից է նայում: Օրինակ, տեսնում է, որ դրացու որդին մի վաճառականի մօտ ծառայ մնալով, վերջը գործակատար դարձաւ եւ հարստացաւ,—ինքն էլ է աշխատում որդուն վաճառականի յանձնել: Կամ մէկի որդին գաւառական դպրոցում սովորելով, վերջը ծառայող դարձաւ, ինքն էլ է նրա օրինակին հետեւում: Մեր գիւղացի կինը կամ աղջիկը ամենեւին չէր տեսնի, որ քաղաք գնալով, աղախին դառնային. որբ եւ բոլորովին անտէր աղջիկները բացառութիւն են.—գնում են քաղաք տղանե-րը միայն, այն եւս ոչ թէ աներում նպաստաւորութիւն անելու համար, այլ վաճառականի կամ արհեստաւորի մօտ մտնելու համար: Մեր գիւղացին բազմատեսակ ընդունակութիւններ ունի.—այդ նրա գլխաւոր յատկանիշն է: Դրանից են առաջ գալիս այն երեւոյթները, որ տնտեսութիւնը եւ կեանքի եղանակները չափազանց տարբերվում են միմեանցից: Դա լաւ նշան է: Տեսնում ես գիւղեր, ուր ամբողջ բնակիչները պարապում են վաճառականութեամբ, թէեւ այդ գիւղը ո՛չ կենտրօն է եւ ոչ վաճառականութեան յարմարութիւն ունի: Բայց ի՞նչպէս եղաւ: Գիւղացիներից մէկը վաճառականութեան մէջ բաղդ գտաւ, եւ բոլորը հետեւեցին նրա օրինակին: Նրանք տարածվում են Ռուսաստանի եւ Եւրօպայի զանազան քաղաքներ, խօսում են զանազան լեզուներով, եւ երբեմն միայն վերադառնում են ցիլինդրներով եւ ոսկեայ շղթաներով իրանց կարօտ մնացած ընտանիքը տեսնելու համար: Շատ անգամ 5—6—10 տարի է տեւում նրանց պանդխտութիւնը եւ ողորմելի կինը համբերում է առանց տղամարդի, միշտ անարատ պահելով իր ամուսնական հաւատարմութիւնը: Ես նկատել եմ,

կանայքը, որ դատապարտված են այդ վիճակին, ըստ մեծի մասին մեռնում են բարակացաւով: Զօկերը կարող են այս դասակարգի օրինակ լինել: Կան գիւղեր, ուր բնակիչների մեծ մասը հիւս, ոսկերիչ, որմնադիր եւ ուրիշ արհեստաւորներ են, որոնց պարապմունքը իրանց տեղում գործադրութիւն չը գտնելով, թափառում են քաղաքից քաղաք: Մինչեւ անգամ ամենաանբարոյական օրինակները մի ամբողջ գիւղի հասարակութեան մի կեղտոտ գործով են զբաղեցնում.—„խաչագողները“ յայտնի են արդէն... Այդ բոլորը կեանքի նշաններ են, բայց վատն այն է, որ գիւղացին, հէնց որ փոքր ի շատէ փող է ձեռք գցում, տեղափոխվում է դէպի քաղաքը: Գիւղական ասպարէզը նեղ է գտնում իր ընդարձակ գործունէութեան համար: Այն ժամանակ միայն գիւղացին իր կանոնաւոր եւ նօրմալ դրութեան մէջ կը մնէ, երբ ճանապարհների հաղորդակցութիւնը կը հեշտանայ. գիւղատնտեսութիւնը նոր ձեւ կը ստանայ, փոխելով իր նահապետական կերպարանքը:

Պէտք չէ մոռանալ եւ դպրոցի անբարոյականացնող ազդեցութիւնը: Երեւակայեցէք աղջկայ դրութիւնը, որ նա մանկութիւնից փակված է եղել տան պատերի մէջ, որ նա երբէք տնից դուրս չէ եկել առանց մօր, որ նա մարդերից այնպէս է վախում, որպէս գայլերից,—յանկարծ նրան մենակ դուրս են թողնում, որպէս թռչունը վանդակից: Նրա ծնողները ծառայ կամ աղախին չունեն, նա մենակ պէտք է գնայ դպրոցը, որ շատ անգամ հեռու է գտնվում: Արտաքին աշխարհը—փողոցը—այն աստիճան աւերված եւ անկարգ է, որ չէր կարող վնասակար ազդեցութիւն չանել նրա վրա: Կաւկասեան քաղաքները ըստ մեծի մասին խառն լինելով մահմետականների հետ, աղջիկը մինչեւ դպրոց հասնելը լսում է հազարաւոր վատ խօսքեր թուրքի տղաներից (հայ տղերքն էլ նրանցից պակաս չեն): Սկզբում նա երկչոտ է լինում, ուշադրութիւն չէ դարձնում,

անց է կենում: Ետոյ փոքր առ փոքր սիրտ է առնում, սկսում է պատասխանել.... Այս հանգամանքները ի նկատի ունենալով, ես հասնում եմ այն ցաւալի համոզմունքին, թէ աղջիկը, որ դպրոցի երես չէ տեսնում, աւելի բախտաւոր է, թէեւ նա մնում է տգէտ, բայց պահում է իր բարոյականութիւնը անարատ: Այլ եւս չեմ ասում, թէ թերի եւ աննպատակ ուսումը միշտ վնասակար է լինում: Բարեբաղդաբար մեր գաւառական քաղաքներում դեռ չը կան կարելու արհեստանոցներ. Թիֆլիսում այժմ սովորութեան մէջ մտած կարուհիների մագազինները աւելի մեծ թւով փչացնում են աղջիկներին....

Երբ աղջիկը դառնում է 14—15 տարեկան, ծնողները մտածում են նրան մարդու տալ: Օժիտի սովորութիւնը սկսված լինելով գաւառական քաղաքներում, որքան ընդհանրանում է նա, այնքան աւելի ծանրանում է աղջկայ վիճակը աղքատ ընտանիքի վրա: Աշխատում են շուտ ազատվել այդ բեռնից: Այս պատճառով, աղջկայ մահը շատ անգամ հանդիպում է ծնողների ներքին յօժարութեանը, որ թեթեւացնում է նրանց մի մեծ հոգսից: Գիւղացիները բաղդաւոր են այդ մասին. այնտեղ փեսայի հօրից փող են առնում: Վատն այն է, որ աղջկան թոյլ չեն տալիս ինքն իր ապագան տնօրինելու. նա գուցէ կը գտնէր մէկին, կընկնէր նրա գիրկը, եւ առանց ծնողներին ծախսեր պատճառելու, կը պսակվէր նրա հետ: Այս պայմանում եւս հօր եւ մօր կամքը գերակշռութիւն ունի. նրանք պէտք է տնօրինեն աղջկայ բախտը. նրանք պէտք է գտնեն իրանց հաւանած եւ սրտի ուզած մի փեսայ: Բայց աղջկան „իրանց սրտի ուզած“ մարդուն տալու համար փող պէտք է. առհասարակ արհեստաւորները փող չեն ունենում: Նրանք կամ պէտք է պարտք անեն օժիտ պատրաստելու համար, կամ պէտք է աղջկան գցեն առաջին հանդիպող անպիտանի ձեռքը, եթէ նա սակաւ փող էր պահանջում: Ըստ մեծի մա-

սին պատահում է վերջինը: Սէրը ամենևին դեր չէ խաղում արհեստաւորների ամուսնութեան մէջ. եւ ո՞րտեղ կարելի էր սիրել, երբ աղջիկները տղաների հետ բնաւ չեն տեսնւում: Զ ա ր ս ա ւ ն ե ր ի սովորութիւնը դեռ ոչ բոլորովին վերացել է գաւառական քաղաքներից. աղջիկը տընից դուրս է գալիս, ոտքից գլուխ ծածկված սպիտակ սփածանելիքի մէջ: Արհեստաւորի աղջիկը տալիս են արհեստաւորի տղային. շատ անգամ նա պսակվում է իր հօր աշակերտի հետ, եթէ այդ վերջինը դիւր էր եկել իր վարպետին, կամ խոստանում էր լաւ ապագայ: Խիստ սակաւ է պատահում, որ նա պսակվէր մանր վաճառականի հետ: Աղջիկը տեսնում է իր փեսային այն օրը, երբ նրան տարել էին եկեղեցի պսակելու, այնտեղ միայն քահանան ձեւի համար հարցնում է նրա յօժարութիւնը, արդեօք սիրո՞ւմ էր իր փեսային, արդեօք համաձա՞յն էր կին լինելու . . . Աղջիկը ոչինչ չէ պատասխանում, միայն հաւանական շարժում է անում գլխով: Բայց եթէ նա չը գիտէր այդ, կամ առաջուց չէին սովորեցրել, մի կին ետեւից նրա գլուխը ձեռքով դէպի ցած է խոնարհեցնում, որ նշանակում է „այո՛“... „համաձայն եմ“...

Կին լինելուց յետոյ նրա վիճակը աւելի վատթարանում է. նա միանգամայն կորցնում է եւ այն փոքրիկ ազատութիւնը, որ վայելում էր առաջ: Գաւառական քաղաքներում, աւելի ժողովրդի ստոր եւ միջին դասերի մէջ, կնոջ պահպանութիւնը դեռ կրում է իր վրա շատ հարեմական առանձնութիւններ. Նրա վրա աւելի խիստ են հըսկում քան թէ գիւղերում, ուր տնտեսական աշխատութիւնները շատ անգամ նրան տանից դուրս են կոչում արտը, այգին, կամ դաշտում բանելու, որտեղ նա գրեթէ արձակ աշխարհ է տեսնում: Բայց այստեղ կնոջ աշխարհը փակված է տան պատերի մէջ, եւ ոչ ոքի յետ յարաբերութիւն չունի: Նա ապրում է բանտի մէջ, կամ աւելի փափուկ

լեզուով խօսելով, որպէս մի ծաղիկ թառամում է ապակեայ զրուանի ներքոյ, առանց լոյսի եւ առանց օդի: Եւ իրաւ, դուք չէք տեսնի մի կին արհեստաւորների մէջ, որ երեսին գոյն ունենար, նա միշտ դեղնած է լինում, շրթունքը ցամաքած, որպէս տենդոտ, եւ աչքերը մարած: Համարակաց զբօսանքի եւ զուարճութեան տեղերը, եթէ կային այսպիսիները գաւառական քաղաքներում, դեռ մատչելի չեն ժողովրդի աղքատ դասին. արհեստաւորը իր կնոջը բաց չէ թողնում յաճախել այնպիսի տեղեր, որոնք իր կարծիքով անառակների համար են: Կինը մաշվում է տան մէջ. նրա մեծ զուարճութիւնն այն է, որ երբեմն նստում է լուսամուտի առջեւ եւ նայում է փողոցի անցուդարձին, բայց փողոցի վրա բաց արած լուսամուտներ բոլոր տները չունեն: Նա տեսնվում է խիստ հազիւ անգամ մերձաւոր ազգականների հետ, կեանքը շատ առանձնացած է, որովհետեւ բարեկամների հետ յարաբերութիւն պահպանելը պահանջում է ծախսեր, պէտք է մի բանով զոհացնել հիւրերին:

Ընտանիքի կազմակերպութիւնը եւ նրա սովորութիւնները համարեա նոյն են, որպէս գիւղերում, միայն այստեղ աւելի որոշ ձեւ են ստացել: Նոյնպէս գերդաստանի հայրը բարձր հեղինակութիւն ունի, նոյնպէս կինը ստորադրվում է իր տղամարդին ամենայն հնազանդութեամբ, նոյնպէս օտար տղամարդի հետ չէ խօսում նա եւ ոչ երեւում է մի ուրիշ մարդու աչքին: Իր ամուսնի հետ տեսնվում է նա միայն գիշերով, երբ վերադառնում է նա խանութից բոլորովին յոգնած եւ շուտով պառկում է հանգստանալու: Մի բան կարող էր նրան մոլորեցնել ուղիղ ճանապարհից, այն է տարածուող շռայլութիւնը, որ սկսել է մուտք գործել եւ արհեստաւորի համեստ խրճիթում: Բայց շահվել ուրիշից իր պաճուճանքի եւ զարդարանքի համար՝ նա չէ կարող, որովհետեւ մի աւելորդ բան նրա վրա, որ ամուս-

նի գնածը չէր, իսկոյն կարող է նկատելի լինել մարդու աչքին: Գաւառական քաղաքներում իւրաքանչիւր ընտանիքի առանձին տուն ունենալը, եւ մի ամբողջ տան մէջ միմիայն մէկ ընտանիքի բնակվելը բաւական պահպանում է կնոջ բարոյականութիւնը: Առհասարակ նկատված է, կինը աւելի շուտ է փչանում այն ժամանակ, երբ բազմաթիւ ընտանիքներ ածած են միմեանց վրայ մի եւ նոյն տան մէջ, եւ շատ սեղմված կերպով բնակվում են զանազան կացարաններում: Մեր գաւառներում անկարելի է տեսնել, որ երկու ընտանիք մի եւ նոյն տան մէջ բնակվէին. ընտանեկան պայմանները չեն ներում մի այսպիսի խառնակութիւն: Դա ունեցաւ իր օգուտը այն կողմից, որ ամեն մարդ, որքան էլ աղքատ լինէր նա, աշխատեց առանձին տուն ունենալ: Այդ մասին պէտք է շնորհակալ լինել պարսիկներից, թէ չէ, շուտով կը կազմվէր մեր մէջ անտուն, անտեղ պրօլետարիատ:

Եթէ արհեստաւորների կնիկների մէջ կարելի էր գտնել մէկին, որ մեղանչէր ամուսնական հաւատարմութեան դէմ,—կարող եմ հաստատ ասել, որ յանցաւորը տղամարդ ամուսինն է: Նա կամ արբեցող է, կամ չափազանց ծոյլ եւ անպիտան. օրվայ վաստակը գիշերը վատնում է գինեվաճառի մօտ, թողնում է կնոջը տանը քաղցած, եւ ամենեւին չէ մտածում կիսամերկ երեխաների վրայ: Նա շաբաթներով տան երես չէ տեսնում. ո՞րտեղ է անցկացնում, յայտնի չէ, եւ երբեմն հարբած տուն է դառնում, կարծես նրա համար միայն, որ կնոջը մի լաւ ծեծէ: Երբեմն զաւակները վկայ են լինում սարսափելի տեսարանների իրանց ծնողների մէջ, եւ այստեղից դրվում է նրանց փըչանալու սկիզբը: Բայց չըկայ մի աւելի երջանիկ, մի աւելի խաղաղ շրջան, որպէս աշխատասէր եւ արդար արհեստաւորի ընտանիքը.—ժրաջան կինը տան եւ երեխաների հոգսն է քաշում, պահում է նրանց մաքուր եւ առողջ,

մարդը գործում է արհեստանոցում. նրանք ապրում են զոհ եւ անվրդով կեանքով. խնայողութիւնը իրանց անտեսութեան գլխաւոր օրէնքն է, մտածում են զաւակների վրայ եւ յետ են զգում փոքրիկ գումար սեւ օրվայ համար:

Բայց լինում են ցաւալի դէպքեր: Կինը, բացի տնային տնտեսութիւնից, որ արհեստաւորի ընտանիքում այնքան ծանր չէ, ուրիշ ոչինչով չէ օգնում տղամարդին. այսինքն, նա չէ սովորել որ եւ իցէ բան, որ կարողանար ինքն եւս ազատ կերպով փող վաստակել: Ընդունված սովորութիւնները եւ հասարակական կեանքի պայմանները թոյլ չեն տուել նրան ընտանեկան օջախից դուրս մի ուրիշ գործով զբաղվելու: Ընտանիքի գլխաւոր աշխատողը, նրա ապրուստը հայթայթողը մնում է տղամարդը: Քանի որ նա կենդանի է, կինը բախտաւոր է, նա աշխատում է եւ ընտանիքը պահում է: Իսկ երբ տղամարդը մեռաւ, առանց թողնելու որ եւ իցէ կարողութիւն, այն ժամանակ կինը իր ապրուստը շարունակելու համար ունի մի ճանապարհ միայն, կամաց-կամաց դիմել դէպի մահ: Շատ մեծի մասին այդ պատահում է . . . Աղքատութիւնը սարսափելի զոհեր է տանում:

Արհեստաւորի կնոջ վիճակը բարձրացնելու համար եւ նրա ապրուստը ապահովելու համար այնքան պէտք չէ ուսումը,—որը ոչնչով նրան հաց տալ չէ կարող,—որքան պէտք է սովորացնել մի արհեստ, որ նրանով ապրել կարողանար: Այդ միայն կարող է բարձրացնել կնոջ վիճակը եւ նրան հաւասար աստիճանի վրա դնել տղամարդի հետ: Երբ կինը ազատ պարապմունք ունի, երբ նա էլ իր կողմից օգնում է ընտանիքին, այսպիսով նա կախում չի ունենայ տղամարդից, եւ կը զգէ իր վզից նրա բռնութեան կոպիտ լուծը: Տղամարդն էլ իր կողմից կունենայ դէպի նա բացի սէրից, մի առանձին պատիւ, երբ կը գտնի նրա մէջ մի լաւ աշխատակից: Այսպիսի կինը միշտ ազատ կը-

մնայ այն ախտից, որի մէջ զգում է նրան աղքատութիւնը ամուսնի մահից յետոյ. նա կարող կըլինի արդար եւ ազնիւ կերպով հայթայթել իր հացը: Բացի դրանից, երբ կինը մի քանի գիտէ, երբ նա ունի իր մէջ մի կենդանի կապիտալ, այն ժամանակ նա կարօտութիւն չի ունենայ մեռած կապիտալով—օժիտով իր համար փեսայ գընել. ամեն մարդ կըցանկանայ իր վիճակը մի այնպիսի ընկերուհու հետ կապել: Բայց արհեստաւորի կնոջը իր այժմեան վշտալի դրութիւնից ազատելու համար, նախ եւ առաջ պէտք է փոխել հասարակական յիմար նախապաշարմունքները, եւ պէտք է նրան դուրս քաշել ընտանիքի փակված շրջանից:



## Բ.

Մինչեւ այստեղ ինչ որ խօսվեցաւ արհեստաւորների մասին, վերաբերվում էր գաւառներին միայն, բայց չէ կարելի մի քանի խօսք չասել եւ Թիֆլիսի արհեստաւորների կանանց մասին, ուր կեանքը եւ նրա պահանջները բոլորովին տարբերվում են, ուր կինը այն չէ, ինչ որ է գաւառներում:

Թիֆլիսը, որպէս Կովկասի քաղաքակրթութեան կենտրօն, մի եւ նոյն ժամանակ է եւ մոլութեան կենտրօն. այստեղ դարբնվում են ամեն տեսակ ախտեր եւ տարածվում են դէպի գաւառները: Այդ փոքրիկ քաղաքը ներկայացնում է մի ամբողջ Բաբելոն, ուր Եւրոպան, Ասիան եւ Կովկասը իր վայրենիներով,—բոլորը զետեղված միասին, ներկայացնում են մի զարմանալի խառնափնթորութիւն: Ցեղերի բազմատեսակութիւնը յառաջ է բերում բընաւորութիւնների եւ սովորութիւնների անթիւ տարբերութիւններ, որոնց հետազօտելը չափազանց դժուարին է: Ընտանիքի նահապետական կազմակերպութիւնը քայքայված է: Ոչինչ աւելի վնասակար չէ կարող լինել, քան թէ այն երբ յանկարծ քանդվում են դարերով հաստատված եւ կեանքի մէջ մտած սովորութիւնները, եւ առանց փոխարինվելու նոր եւ աւելի բարոյական հիմունքներով, նրանց տեղը դրվում է կատարեալ համարձակութիւն:—Այդ կրիզիսի մէջն է գտնվում Թիֆլիսի հայ կնոջ վիճակը: Ընտանիքի փակված շրջանից յանկարծ նրան բաց են թողնում դէպի լայն աշխարհ, առանց նախապէս աշխարհի

հետ վարվել ու պէտքերը նրան սովորացնելու: Խիստ հեշտ է լինում՝ որսալ այն թռչուններին, որ երկար ժամանակ կանդակի մէջ էին պահվել . . .

Այդ կարճ բայց ընդհանուր նկատողութիւնից յետոյ ես անցնում եմ՝ դէպի արհեստաւորի կեանքը:

Արհեստաւորի կեանքի մէջ նկատվում՝ է երկու տեսակ մրցութիւն. մէկը, նրա ասիական արհեստի մրցութիւնը եւրոպականի հետ, միւսը, նահապետական կեանքի մէջ սնված նրա կնոջ մրցութիւնը նոր սովորութիւնների հետ: Երկուսն էլ, որպէս փտած հնոտիք, ընկնելու եւ անհետանալու վրա են.—նորը տիրապետում՝ է:

Արհեստաւորներին, մանրավաճառներին, մանր աստիճանաւորներին եւ զանազան ատենական տեղերի ստոր ծառայողներին կարելի է զետեղել մի դասակարգութեան ներքոյ եւ կոչել մ ի ջ ի ն դաս*: Կնոջ դրութիւնը ամենի մօտ, աննշան տարբերութիւններով, մի եւ նոյն է: Բայց ես գըլխաւորապէս նկատի ունեմ՝ արհեստաւորներին եւ մանրավաճառներին: Բարքերի մաքրութիւնը վերաբերական է. կան մաքուրներ եւ կան անմաքուրներ. պէտք է խոստովանվել, որ վերջիններին թիւը առաւելութիւն է կազմում. եւ վատն այն է, որ հետզհետէ աճելու վրա է: Արհեստաւորները եւ մանրավաճառները Թիֆլիսում, իրանց գաւառացի համա-րուեստների նման սեփական տներ չունեն. այստեղ ըստ մեծի մասին բնակվում՝ են վարձով. ամենաբաղդաւորը երկու սենեակ ունի: Ամուսին այրը գործում՝ է առաւօտին, բա-

* Ինչպէս մեր քաղաքներում ժողովրդական դասակարգերը դեռ լաւ չեն կազմակերպված, որոշ ձեւ չեն ստացել: Ս տ ո ր  դ ա ս, որի ներկայացուցիչները են մշակները, եւ առհասարակ պրօլետարիատը, չունենք. ժողովրդի դասակարգութիւնը սկսվում է մ ի ջ ի ն  դ ա ս ի ց եւ վերջանում է կարողութեան տէր բուրժուայով, որի ներկայացուցիչներն են գլխաւորապէս հարուստ վաճառականները եւ մասնաւորապէս մեծ աստիճանաւոր ծառայողները,—դրանց պէտք է կոչել բ ա ր ձ ր  դ ա ս: Արիստոկրատիա չը կայ:

զարդումն, իր խնամութի մէջ: Կինը մենակ մնում է տանը: Աղջիկը ծնվում է նեղ սենեակում, որ զրկված է թէ օդից եւ թէ լոյսից: Ծնողները միշտ վրդովմունքով են հանդիպում նրա աշխարհ գալուն, որ բերում է իր հետ հոգսերի մի ահագին ծանրութիւն: Փոքրիկ գերդաստանը, որ հազիւ-հազ քարշ է տալիս իր տնտեսութիւնը, պէտք է սնուցանէ նրան, հսկէ նրա վրա, մի բան սովորեցնէ, եւ վերջապէս մարդու տայ: Դա ամենից դժուարն է: Եթէ մայրը բաւական առողջ է, ինքն է ծիծ տալիս փոքրիկին, իսկ եթէ կաթ չունի, կերակրում են այծի կաթնով: Միջոցները չեն ներում ծծմայր վարձել: Նեղ եւ խեղդված սենեակում, ուր ամեն ինչ խառնված է մինը միւսի հետ, մանուկը մեծանում է ամեն կեղտոտութեան մէջ: Գիւղերում երեխան աւելի բախտաւոր է, չի նեղվում, այլ մաքուր օդի մէջ բաւական լայն ասպարէզ ունի: Այստեղ բնակարանը, որ ընդամենը երկու քայլ լայնութիւն ունի, դառնում է կատարեալ լուացքի փոս, պէտք է լողացնել մանուկին, ամեն օր տասն անգամ փոխել նրա շորերը: Երբ աղջիկը դառնում է երկու երեք տարեկան, իսկոյն դուրս է փախչում իր բանտից. փողոցը աւելի է հրապուրում նրան, այնտեղ կարող է ազատ շունչ քաշել: Մայրը ուրախ է լինում նրա բացակայութեամբ, որ տան կարգը չէ խանգարում, չէ կոտրում: Իսկ դրսում ի՞նչ է անում,—գլուխը քարին:

Երբ աղջիկը դառնում է վեց, եօթը տարեկան, մայրը թոյլ է տալիս վազել իրանց փողոցի փուրունջու մօտ, երբ պէտք էր հաց գնել, կամ միս տալ խորովելու: Նրան ուղարկում են եւ մերձաւոր մանրավաճառի մօտ, երբ պէտք էր շաքար գնել: Երբեմն նրան թոյլ են տալիս նստել փողոցի բաց դռան շէմքի վրա եւ նայել անց ու դարձին, այդ աւելի զուարճացնում է. տանը չափազանց նեղ է եւ տխուր: Եւ այսպէս, նրա առաջին դաստիարակութիւնը սկսվում է փողոցից:

Եթէ տունը մօտ էր եկեղեցուն, եւ այնտեղ զանգվում՛ էր ծխական դպրոց, մայրը ուղարկում՛ է աղջկան կարդալու, երբ ժամանակը հասնում՛ է: Բարձր դպրոցներում՛ տալու միջոցներ չկան: Առանց աղախնի եւ առանց ծառայի նա կարողանում՛ է ամէն օր յաճախել դպրոցը, որովհետեւ բաւական վարժված է փողոցին: Դպրոցում՛ սովորացնում՛ են նրան ամէն բանից շատ փոքր, որ ասել է ոչինչ չեն սովորացնում: Այդ ոչինչ. մայրը ունի իր առանձին փառասիրութիւնը, նա ուսման վրայ շատ էլ ուշադրութիւն չէ դարձնում. բաւական է միայն, որ իր աղջըկան տեսնում՛ է դպրոցական համազգեստի մէջ, կրում՛ է գրքերով լի պայուսակ, խառնում՛ է իր մայրենի լեզուի հետ օտարազգի բառեր, եւ աւարտելուց յետոյ, որպէս ուսեալ եւ լուսաւորված, իրաւունք կունենայ փոխանակ „թաւսակրակի" իր գլխին ծածկել „շլեապա":

Ես վեր առեցի խիստ մասնաւոր օրինակ, արհեստաւորների կամ՛ մանրավաճառների աղջիկների մեծ մասը դպրոցի երես չեն տեսնում, այլ մեծանում՛ են առանց մի բան սովորելու: Նրանից կարելի է ճանաչել գլխի ծածկոցներից, թէ ով է կրում՛ շլեապա եւ որը թաւսակրակի: Թէ այսպէս, եւ թէ այնպէս, տարբերութիւնը միայն հագուստի մէջն է, բայց կրթութիւնով մինը միւսից չէ որոշվում:

Ահա աղջիկը տասնվեց եւ տասն եօթն տարեկան է: Այդ շատ վտանգաւոր մի հասակ է: Նրա վրա հսկում՛ է եւ մտածում՛ է մայրը միայն. հայրը ուշադրութիւն չէ դարձնում, եւ կարելի է ասել, որ թշնամաբար է նայում՛ նրա վրա, որպէս մի գող, որ վաղ թէ ուշ պէտք է նրա տունը կողոպտէր: Աղջիկը դեռ բաւական ամօթխած է եւ երկչոտ. պէտք է „բացել" նրան, աշխարհ մտցնել: Մայրը առաջնորդում՛ է: Սկզբում՛ նրան թոյլ են տալիս կտուրի վրա, իր հասակակիցների հետ ածել, „լէզգէվար" պար գալ եւ „տաշի"

խփել: Յետոյ մայրը տանում է իր հետ, ուր եւ գնում է, երբեմն բարեկամների մօտ, երբեմն բազարը, երբ պէտք է մի նոր հագուստ գնել: Լինում են եւ որոշված այցելութիւններ. օրինակ, շաբաթ երեկոյները գնալ Բէթղեհէմ համբուրելու, այս եւ այն եկեղեցու տօնախմբութեանը (օրա) ներկայ գտնվել եւ այլն: Դրանք մի տեսակ աշխարհահանդէսներ են, ուր աղջիկները դրվում են ցոյցի համար: Երբեմն դուրս են բերում նրան հասարակաց զբօսարանի այգին, բայց թատրօն չեն տանում: Շատ ծիծաղելի մի հակապատկեր է ներկայանում, երբ տեսնում ես մօրը, շատ անգամ փաթաթված սպիտակ „ղաղիփի“ մէջ, ման է ածում վերջին մօդայի ձեւով հագնված աղջկան: Ցամաք փայտը նեցուկ են տուել դալար տունկին, որ չը ծռվի:

Տան մէջ աղջիկը բաւական համեստ է եւ գործունեայ. նա հագնվում է հասարակ կերպով, գլխին ծածկում է մի թաշկինակ, կամ բոլորովին բաց է թողում, աշխատում է խոհանոցում եւ չէ արհամարհում մինչեւ անգամ լուացք անել: Այսպէս նա բաւական սովորում է տնտեսութիւն: Միւս ժամանակներում կամ կարում է եւ կամ հիւսում է: Մօր դաստիարակութիւնը գլխաւորապէս կայանում է այն բանի մէջ, որ անընդհատ հսկում է նրա վրա: Բայց նա այնքան անփորձ չէ, որքան կարծվում է: Դպրոցում նա բաւական բան է լսել եւ սովորել. հարեւանի աղջիկները ամեն գաղտնիք բացատրել են նրան: Նա միայն ձեւանում է, թէ ոչինչ չը գիտէ, եւ պահում է իրան, որովհետեւ համոզված է թէ „կոտրած ամանը գին չի ունենայ“, եւ պահպանում է իր անարատութիւնը, մինչեւ ամուսնութիւնը կը շնորհէր նրան ազատութիւն: Շատ անգամ իրանք, մայրերը փչացնում են աղջկան, երբ նրա ներկայութեամբ, ուրիշ կնիկների հետ բաց են անում ամենակեղտոտ բամբասանքներ այս եւ այն աղջկայ վարքի մասին: Ամեն ինչ ներշնչում է նորահաս աղջկայ մէջ պսակվելու սաստիկ ցանկութիւն,

*բայց նա անկամայ թաքցնում է, պահպանելով իր դառն ճակատագրին:*

*Մեծ դժուարութիւններ կան արհեստաւորի, եւ առհասարակ ժողովրդի միջին դասի համար լաւ կերպով անօրինելու աղջկայ ապագան: Ծնողների դժգոհութիւնը չափը անցնում է: Հայրը յանդիմանում է աղջկան, թէ իր համար պէտք է կատարեալ չքաւորութիւն պատճառէ, իսկ մայրը պաշտպանում է աղջկան: Ամեն անգամ, ամեն մի նոր հագուստի գնելը մեծ աղմուկ է բարձրացնում ծնողների մէջ: Աղջիկը հասկանում է իր վիճակի անտանելիութիւնը եւ երբեմն մահը օգնութիւն է կանչում: Մայրը, որպէս կին, աւելի լաւ է հասկանում կնոջ պահանջը. որոնում է արժանաւոր փեսայ, ցանկանում է, որ նա հարուստ լինէր, կամ գոնեա ապահովված դրութիւն ունենար: Հայրը ցանկանում է զգել առաջին հանդիպողի ձեռքը, միայն թէ ինքը ազատուի: Ամենից աւելի շտապում են եղբայրները, եթէ կային հասած եղբայրներ. որովհետեւ մտածում են, թէ „քոյրը նրանց բախտի վրա էր նստել, մինչեւ նրան գլխից ռադ չանէին, իրանք չէին կարող պսակվել“: Բայց մայրը աւելի փորձված է. նա աշխատում է ընտրութիւնների մէջ չըսխալվել: Երբեմն գործի մէջ խառնվում է եւ սէրը: Բայց նա ոչինչ հետեւանք ունենալ չէ կարող, եթէ մայրը աւելի գործնական կէտից չէ արտայայտում դստեր հոգեկան զգացմունքը: Երբեմն գործը վերջանում է, բոլորովին յոյս դնելով յաջողութեան վրա: Յայտնվում է մի անծանօթ, որի ով եւ ինչ տեղից լինելը յայտնի չէ, եւ խնդրում է աղջկայ ձեռքը: Ծնողները օգուտ քաղելով այն հանգամանքից, որ դա փող չէ պահանջում, կամ պահանջում է շատ չնչին բան, իսկոյն որսում են փեսային: Այսպիսի ընտրութիւնները երբեմն վերջանում են սկանդալով, երբ իմացվում է, թէ նորափեսան մի քանի տեղերում պսակված է եղել . . .*

թէ այսպէս եւ թէ այնպէս աղջիկը մարդու է գնում. ընտանիքի վրայից ծանր բեռը բարձվում է: Սակայն անգամ նա տանում է իր հետ հինգ հարիւր կամ հազար րուբլ. երբեմն միայն հագուստներ եւ մի քանի կարասիք: Այդ ճնչին գներով նա գնում է իր համար եւ ճնչին փեսայ: Հարսանիքի հանդէսից անմիջապէս յետոյ փեսան շարունակում է իր գործը, դիմում է խանութը կամ արհեստանոցը: Եւ սկսվում է վշտալի կեանքը:

Մանկահասակ կինը երբեմն լինում է լաւ տանտիկին, նայելով թէ որպիսի մարդի էր հանդիպել նա: Սկըզբում մայրը յաճախ այցելում է անփորձ աղջկայ մօտ, խրատում է նրան իր նոր տնտեսութեան այս եւ այն կարգադրութիւնների մէջ: Յետոյ փոքր առ փոքր մոռանում են նրան եւ բոլորովին ձգում են իր կամքին: Այժմ մանկահասակ կինը թէեւ աղքատ է, բայց դարձեալ գոհ է, որովհետեւ ինքնագլուխ է: Սկեսուրը, եթէ կենդանի է նա, չէ փոխարինում իր մօրը, չէ նեղացնում նրան, երբեմն ինքն է ծեծում պառաւին: Նրա տնտեսութիւնը լինում է իր մօր տնտեսութեան կրկնութիւնը. մի եւ նոյն փոքրիկ եւ նեղ սենեակը, մի եւ նոյն անյարմարութիւնները տիրում են եւ այստեղ: Ամուսին այրը „բազարի մարդ“ է, առաւօտեան մութին գնում է խանութը եւ գիշերուայ մութին վերադառնում է տուն. նա ճաշում է խանութում, առանց կնոջ վրայ մտածելու, թէ ինչ պիտի ուտէ: Կիւրակէ օրերը միայն խոհանոցի օջախներում կրակ է ձգվում. ամբողջ շաբաթ կինը անց է կացնում ցամաք հացով: Ոչինչ այնքան սարսափելի չէ լինում, որպէս թագնըված աղքատութիւնը, որը դրսից հրապուրիչ երեւոյթ ունի, բայց ներսից մաշում է ընտանիքի կեանքը:

Օրերը անցնում են օրերի ետեւից, միատեսակ եւ անգործ կեանքը սկսում է ծանրանալ մանկահասակ կնոջ սրտի վրա: Տանը նա ոչինչ պարապմունք չունի, ոչինչ

չէ զբաղեցնում՝ նրան։ Անգործութեան մէջ զարթնում են բոլոր ախտերը։ Պէտք է մի բանով զբաղվել եւ վերջապէս զուարճանալ։ Իր հօր տան մէջ նա մի կողմից երջանիկ էր. մայրը ման էր ածում՝ նրան, ցոյց էր տալիս աշխարհին։ Մայրը նրա համար մի լաւ ընկեր եւ բարեկամ՝ էր։ Այդ կարեկցութիւնները նա չէ գտնում՝ իր տղամարդի մէջ։ Սառնութիւնը առաջ է գալիս ինքն իրան։ Միջին դասի մարդիկը սովորութիւն չունեն զբաղեցնել իրանց կնիկներին. դուք չէք տեսնի նրանց միասին փողոցում՝, կամ՝ որ եւ իցէ զբօսանքի տեղում։ Մանկահասակ սիրտը սնունդ է պահանջում։ Սկզբում՝ նա տանից դուրս է գալիս իր հարեւան կնիկներից մէկի հետ. յետոյ—մենակ։ Այդ առաջին քայլն է, որ տանում՝ է նրան դէպի մոլութիւն։ Ամուսին այրը տան մարդ չէ, նա չի էլ կարող գիտենալ, թէ կինը ինչպէս է անցկացնում՝ իր օրը։ Նա ամբողջապէս խրված է իր բազարային գործերի մէջ, կնոջ վրա չէ մտածում։ Կինը դառնում՝ է խորամանկ եւ խիստ վարպետութեամբ տանում՝ է իր գործը։ Նա գիտէ մարդու որոշված ժամերը, երբ բազարից տուն է դառնում. եւ ընկըսում՝ է կեղծաւորվել նրա առջեւ, խաբել նրան։ Ի հարկէ, կինը չէր ընկնի այդ փորձանքների մէջ, եթէ նրա կեանքի պայմանները ուրիշ տեսակ կարգադրված լինէին։ Նա մտաւ ամուսնի տունը, որպէս անմեղ եւ անարատ աղջիկ, բայց գտաւ այնտեղ կատարեալ դատարկութիւն։ Նրան գործ չը տուեցին, նրան չը զբաղեցրին.—աշխատութիւնը կարող էր փրկել նրան, բայց այդ չը կար։ Անգործ եւ արձակ կեանքի մէջ աճեցին զգայական ախտեր։ Բայց կայ եւս մի ուրիշ բան, որ դնում՝ է կնոջը մոլորութեան ճանապարհի վրա։ Սարսափելի հետեւանքներ ունեն կեանքի անհագին պէտքերը, երբ նրանց բաւականութիւն տալու միջոցները սուղ էին։ Կինը առաջին զոհն է դառնում՝ աղքատութեան, որովհետեւ աւելի հակումն ունի դէպի պեր-

ճասիրութիւն եւ առհասարակ չուլլութիւն: Գաւառացի կինը բախտաւոր է այդ դէպքում. այնտեղ կեանքի պահանջները թեթեւ են. բացի դրանից, դեռ եւս տիրող արեւելեան փակ կեանքի շնորհիւ կինը կարողանում է իր աղքատութիւնը թաքցնել տան չորս պատերի մէջ, նրան չեն տեսնում: Բայց այստեղ կեանքը աւելի արձակ է. կինը պէտք է իրան ցոյց տայ աշխարհին. իսկ աշխարհը սիրում է նրան տեսնել միշտ զուգված, զարդարված: Ես վկայ եմ եղել մի քանի թշուառ դէպքերի Թիֆլիսում, թէ որպէս կինը, սկզբում բոլորովին անարատ եւ մաքուր վարքով, հանգամանքներից ստիպված, ընկել է ապականութեան մէջ: Նա աւելի բարեյաջող պայմաններում կարող էր պահպանել իր բարքի մաքրութիւնը:—Միանգամ ընկաւ նա, այլ եւս իրան պահել չէ կարող. գլորվում է դէպի ցած եւ ցած. կեանքը ետեւից մղում է նրան դէպի ամօթալի կործանումը, մինչեւ բոլորովին խրում է ցեխի մէջ: Նոյն ցեխի մէջ եւ մեռնում է նա:

Անարդարութիւն կլինէր բոլորովին սեւ գծերով վերջացնել իմ նկարագիրը Թիֆլիսի միջին դասի կանանց մասին. ես պէտք է ամբողջացնեմ իմ պատկերը, ձգելով նրա վրայ մի քանի լուսաւոր շուքեր:

Լինում են եւ բախտաւոր ամուսնութիւններ: Մանկահասակ կինը իր հերթում դառնում է մայր: Եթէ նրա առաջին ծնունդը աղջիկ էր, դա աւելի շատով ներշնչում է նրա մէջ այն խելամտութիւնը, թէ պէտք էր մտածել երեխայի ապագայի մասին: Իր անցեալ վշտալի կեանքը թողել է նրա մէջ փորձերի մի ամբողջ շարք. նա գիտէ, թէ ինչ դժուարութիւններով ինքը կարողացաւ պսակվել, կին դառնալ: Նոյն դժուարութիւնները սպասում են եւ նորածին մանկան: Եւ այն օրից սկսում է տնօրինել իր զաւակի օժիտը: Եթէ նրա առաջին ծնունդը տղայ էր, դարձեալ գիտէ, որ նրա կրթութիւնը սակաւ հոգսեր, սակաւ

ծախսեր չէ պահանջում. պէտք է դպրոց տալ եւ մի քանի սովորացնել: Եւ այսպէս, խնայողութիւնը ընտրում է նա որպէս գլխաւոր օրէնք իր փոքրիկ տնտեսութեան մէջ: Նա այնքան խելացի է լինում եւ այնքան բարոյական ոյժ է ունենում, որ բոլորովին „իր ձեռքն է առնում" տղամարդին: Երբեմն յետ է պահում նրան շռայլ կեանքից կամ խմելուց, թելադրում է „փող յետ գցել": Իր հասարակական դրութիւնը, ի հարկէ, չէ ներում, որ ինքն էլ մի կողմից օգնէր ամուսնին հարստանալու նպատակի մէջ եւ բազարումը նրան գործակից լինէր: Պատերազմելու համար ընդունված նախապաշարմունքների դէմ՝ դեռ անզօր է նա: Բայց տան մէջ ամենայն եռանդով աշխատում է: Ամբողջ գիշերները նա անց է կացնում ասեղով. բացի մանաւոր կարերից, որ ընդունում է հարուստ տների տիկիններից, նա վեր է առնում կարելու հագուստներ եւ մօդային մագազիններից,—բոլորը պատրաստում է տանը: Ոչ մի շորի կտոր անպէտք չէ կորչում նրա ձեռքում. ամեն մի հնոտիք շուռ է տալիս, ձեւը փոխում է, եւ վերջապէս նրանից մի նոր հագուստ է պատրաստում իրա կամ երեխաների համար: Ափսոս, որ ժրաջան կնիկների տնային աշխատութիւնների պրօգրամման շատ ընդարձակ չէ.—կարել, հիւսել, նախշել—այսքանով վերջանում է նրանց գործունէութիւնը: Այսու ամենայնիւ, ես տեսել եմ կնիկներ, որ կարելով մի ամբողջ ընտանիք էին պահում. տեսել եմ աղջիկներ որ կարելով փող էին աշխատել, իրանց համար օժիտ պատրաստել, որ մարդու գնան: Ժրաջան կինը այնքան թեթեւացնում է իր ամուսնի հոգսերը, որ նա չը գիտէ, թէ ինչպէս է առաջ գնում փոքրիկ տնտեսութիւնը. երեխաները միշտ մաքուր են եւ առողջ, եւ ամեն ինչ տան մէջ կարգին է: Ամենաանակնկալ հիւրեր պատահելիս, միշտ տանտիկինը պահած ունի առատ պաշար նրանց զարմացնելու համար: Տան մէջ ամեն բան կայ, ոչինչ պակաս չէ.

*եւ գլխաւորն այն է, որ մեծ մասը գնել է ու պատրաստել է կինը: Երբ կինը իր նիւթական օժանդակութիւններով օգնում է ընտանիքին, նրա քաղաքական ազդեցութիւնը աւելի կշիռ է ստանում: Այն ժամանակ նա մտնում է իր ուղիղ դերի մէջ, դառնում է քաղաքակրթող տարր, եթէ ոչ դրսի աշխարհի մէջ, գոնեա իր ներսի աշխարհում—ընտանիքի մէջ:*

*Կրկնում եմ, դպրոցը, միայն դպրոցը չէ կարող բարձրացնել ժողովրդի միջին դասի կնոջ նշանակութիւնը: Ալբուստը այստեղ կապված է շատ կենսական անհրաժեշտութիւնների հետ, որ պահանջում են կնոջ գործակցութիւնը:—Պէտք է ընդունակ կացուցանել նրան գործելու, աշխատելու եւ իր ձեռքի վաստակով կերակրելու իր զաւակները: Ես հեռու եմ պահում ինձ այն ծայրահեղութիւններից, որ կինը բժիշկ լինէր, գրող լինէր, կամ դատաւոր լինէր,—այլ աւելի կցանկանայի, որ նա մի լաւ խանութպան կամ լաւ տանտիկին լինէր: Ոչինչ այնպէս յետ չէ պահում կնոջը կործանումից, որպէս արդար եւ ջանասէր աշխատութիւնը: Քանի որ մենք կընայենք կնոջը, որպէս մի հեշտասիրութեան առարկայի վրայ, այնքան կը ստորացնենք նրա բարձր նշանակութիւնը: Կինը որպէս բաժանում է իր ամուսնի սէրը, այնպէս էլ բաժանորդ պէտք է լինի նրա աշխատութեանը: Մեղաւորը տղամարդն է, որ նրան գործ չէ յանձնում: Ո՞վ կարող է լինել այնքան հաւատարիմ հաշուապահ կամ գործակատար մի մանրավաճառի խանութում, որպէս իր կինը: Լաւ կինը մի մեծ երաշխաւորութիւն է առեւտրական ֆիրմայի համար. ոչ որ նրա նման չէ կարող գրաւել եւ գոհացնել յաճախորդներին.—այսքանս բաւական է, որ տղամարդիկ այնքան շատախօս եւ ժլատ չեն լինում, երբ մի բան գնում են կընոջից: Ով կարող է այնպէս լաւ կառավարել մի կօշկակարի արհեստանոցը, որպէս վարպետի կինը: Ես ճանա-*

չում եմ մի կօշկակարի կնոջ միայն, որ իր ամուսնի հետ ապրում էր խանութում: Նա պատրաստում էր կօշիկների երեսները. կարի մեքենան բաւական հեշտացրել էր նրա գործը: Առեւտուրն ընթանում էր արագ եւ արդիւնաւոր կերպով, եւ խաղաղ ու բախտաւոր ապրում էր փոքրիկ ընտանիքը: Մի՞թէ կինը չէր կարող գործ գտնել իր դեր-ձակ ամուսնի խանութում: Կարը իսկապէս կնոջ գործ է: Ի՞նչ անէ կինը, երբ նրան անգործ ձգում են տանը եւ թող են տալիս անձնատուր լինել իր կրքերին: Տուեցէք նրան աշխատութիւն եւ նա չի ընկնի բարոյական փտու-թեան մէջ: Աշխատութեան մէջ միշտ թարմ եւ զուարթ կըպահվի նրա սիրտը: Եթէ Թիֆլիսում միջին դասի կինը անկման վիճակի մէջ է, ես գլխաւոր պատճառը գտնում եմ նրա անգործութեան մէջ: Այդ դասը դեռ բոլորովին փչացած չէ, կարելի է բարձրացնել նրան, միայն պէտք էր կնոջ համար պարապմունք գտնել: Ես գտնեա հաւա-նում եմ գաւառներում այդ դասին վերաբերող կնոջ պար-տաւորութիւնը. այնտեղ նրա երեսին պարզ ասում են. „տես, քո աշխարհը այս տունն է, իսկ քո սահմանը—այս տան չորս պատերն. դու այս տան լաւ կարասիներից մէկն ես. նստի, կեր, խմիր, բայց տանից դուրս չըպիտի դնես“: Այդ դրութեան մէջ կինը թէեւ բթամտանում է, անասնանում է, բայց դարձեալ մնում է կին իր նեղ նը-շանակութեամբ: Բայց Թիֆլիսում կեանքը եւ նրա պա-հանջները բաւական փոխվել են. նա հեռացել է արեւել-քից, բայց դեռ չէ մօտեցել արեւմուտքին: Կինը այստեղ հագել է եւրօպացու հագուստը, բայց դեռ չէ ստացել նրա կրթութիւնը: Ես շատ հեռու չեմ գնում, թէ ինչ է կա-տարվում Եւրօպայում, բայց առանց անունները յիշելու ցոյց կը տամ մի քանի եւրօպացի կնիկներ Թիֆլիսում, որոնք առաջ ծամագործներ (парикмахерша) էին, քաղցրա-ւենիք շինողներ էին, եւ մէկը մի հայ ընտանիքի դաստի-

արակուհի էր. իսկ այժմ հարստացել են, առեւտրական մեծ տներ են բաց արել, գործարաններ ունեն:

Իմ հետաղօտութիւնը վերջացնում եմ Թիֆլիսի եւ գաւառական միջին դասի կանանց վերաբերեալ, մնում է մի քանի խօսք աւելացնել նրանց ծերութեան մասին: Որպէս առհասարակ կնոջ վիճակը, այնպէս էլ պառաւների դրութիւնը համեմատաբար շատ տարբեր են գաւառներում եւ Թիֆլիսում: Գաւառներում երբ կինը ծերանում է, որպէս մի պատկառելի հնութիւն, աւելի յարգանքով են վարվում նրա հետ, մանաւանդ, երբ նա երախտիք ունէր ընտանիքի վրա: Որդիքը աշխատում են չը վիրաւորել նրան, մանկահասակ հարսները խոնարհվում են նրա առաջեւ: Գերդաստանի բոլոր անդամները ցանկանում են, որ նա օրհնութիւնը բերանումը մեռնէր. նրա անէծքից վախենում են: Այդ հասակում պառաւից գործ չեն պահանջում, այլ թոյլ են տալիս առաւօտ եւ երեկոյ եկեղեցի գնալ, իր հոգու եւ իր որդիների համար աղօթելու: Նրան չեն զրկում մասնաւոր ծախսերից, որ պատկերների համար մոմ գնէր եւ քահանայի սիրտը շահէր: (Առհասարակ մեր կանայքը սկսում են եկեղեցին յաճախել, երբ մօտենում են գերեզմանին. մանկահասակ կիներից չէ պահանջվում ջերմեռանդ լինել, ժամ գնալ, աղօթել): Թիֆլիսում ընդհակառակն, կինը խիստ թշուառ ծերութիւն է ունենում: Որդիքը վարվում են նրա հետ անգութ կերպով, իսկ հարսները ծեծում են: Ես տեսել եմ մի քանի օրինակներ, որ որդիները պառաւ մօրը տնից արտաքսել են առանց պատառ հացի: Մայրը ստիպվել է դիմել դատաստանի եւ որդիներից ապրուստ պահանջել, որ քաղցած չը մեռնի: Պէտք է բաւական քարեսիրտ համարել այն որդուն, որ յօժարվել էր յանձնել պառաւ մօրը մի աղքատ ընտանիքում ամսական 15 րուբլիով կերակրելու համար: Մի սարկաւագի ընտանիքում պատահեց ինձ տեսնել մի այսպիսի

պառաւ, որի որդիների համար ասում էին, թէ հարուստ են, երկու տներ ունեն: Պառաւների այդ ցաւալի վիճակը իմ կարծիքով առաջ է գալիս այն հանգամանքից, որ նը-րանք, իբրեւ հին սերունդի մնացորդներ, անտանելի են լի-նում ընտանիքի մէջ, որ արդէն փոխել էր իր նահապե-տական կերպարանքը: Նրանց կռիւը „մօդնի“ հարսների հետ ծագում է գլխաւորապէս այդ հանգամանքից: Որդին բռնում է իր կնոջ կողմը եւ մօրը արտաքսում է: Ծնող-ները իրանց աղջիկը մարդու տալու ժամանակ միշտ հա-շուի մէջ են դնում այն յարմարութիւնը, որ փեսան մայր չունի: „Մենակ տղայ է—ասում են մայր չունի“: Ծնող-ները այդ դէպքում ի նկատի ունեն, որ մայր չը լինելու պատճառով իրանց աղջիկը կարող էր կատարելապէս տի-րել փեսայի տան վրա. իսկ հարսը իր կողմից ուրիշ հա-շիւ ունի, որ ազատ կը լինի, իր վրա հսկող չի լինի: Գա-ւառներում, ընդհակառակն, ուրախ են լինում, երբ պառաւ մայրը կայ, մտածում են, որ նա խնամք կը տանէր ան-փորձ հարսի վրա. եւ նրանք միշտ հաշտ են ապրում, ո-րովհետեւ թէ հինը եւ թէ նորը շատ նման են լինում մէկ մէկու: Բայց Թիֆլիսում որքան եւս անարգված լինէր պա-ռաւ մօր ծերութիւնը, եւ որքան յօժարութեամբ հանդի-պում են նրա մահուանը, այսուամենայնիւ նրա թաղումը կատարվում է բաւական հանդիսաւոր կերպով. այն ժա-մանակ միայն ցոյց են տալիս, թէ պատվում են նրան: Այդ, ի հարկէ, առաջ է գալիս այն սովորութիւնից, որ մար-դիկ եկեղեցական խորհուրդները գործ են դնում իրանց փառասիրութիւնը յագեցնելու համար:

Խօսենք Թիֆլիսի ունեւոր ընտանիքի աղջկայ մանկու-թեան վրա: Երկու տարեկան հասակում ծծմայրը նրան տա-նում է որ եւ իցէ հասարակական այգի ման ածելու: Եթէ նա առաջին աղջիկ ծնունդն է, բախտաւոր է լինում, սիր-վում է, եւ հէնց ծնած օրից վայելում է ճոխութիւն: Դեռ

չորս տարեկան չեղած, մայրը նրան հագցնում է բոլորովին ֆանտաստիկական զգեստներ եւ տանում է կլուբը, երբ լինում է „ընտանեկան գիշեր“ կամ երբ տալիս են մանկական բալ: Ամառը նրան տանում են Կօջօր կամ մի ուրիշ ամարանոց, ուր նրա քնքուշ դէմքը մի փոքր այրվում է արեգակի եւ արձակ օդի տակ: Աշունքին նա դառնում է տուն, բաւական լցված:

Դեռ հինգ կամ վեց տարեկան չեղած, նա յայտընվում է իր մօր հիւրերի հասարակութեան մէջ, երբ նա տալիս էր „վեչեր“, ուր կնիկները հաւաքված, կամ լօտօ են խաղում, կամ թուղթ: Մայրը զմայլվում է, տեսնելով, որ աղջիկը փոքրիկ ծառայութիւններ է անում հիւրերին. լօտօի համար լօքի է բերում, կամ հաւաքում է վէր թափված կարտերը: Ամբողջ ժամերով աղջիկը անքուն նստած, նայում է նրանց խաղին, եւ լսում է նրանց շատ անգամ անպատշաճ խօսակցութիւնները, եւ ժպտում է: Դա էլ մի տեսակ կրթութիւն է, որ ստացվում է օրինակից: Մօր հասարակութեան մէջ երբեմն յայտնվում է մի երիտասարդ, որ բրթում է կոպիտ կատակներ. նա իրան ձեւացնում է, թէ սիրահարված է փոքրիկ աղջկայ վրա եւ իրան կոչում է նրա ապագայ փեսայ:

Վերջապէս հասնում է ուսման ժամանակը: Պէտք է նկատել, որ Թիֆլիսի հարուստ ընտանիքներում սպասաւորները եւ սպասուհիքը բոլորը օտարազգիներ են.—ծառաները վրացի կամ իմերէլ, ծծմայրը օսէթուհի, իսկ վերջին ժամանակներում սովորութեան մէջ մտան եւ ռուս աղախինները: Երեխայների սկզբնական կրթութիւնը համարեա յանձնված է նրանց ձեռքը: Աղջիկը ծծմայրից սովորում է վրացերէնը, իսկ ռուս աղախինը ուսուցել է նրան ռուսաց լեզուն: Մայրենի լեզուից նա մի բառ չը գիտէ, որովհետեւ այդ լեզուով ընտանիքի մէջ ոչ ոք չէ խօսում: Օտար լեզուների մէջ ունեցած պրակտիկան բաւական հեշտա-

ցնում է նրան սովորել օտարազգի դպրոցներում: Հայոց ծխական դպրոցները անպատշաճ են համարվում: Աղջկան տալիս են կամ պանսիօն քաւական թանգ գնով, կամ իգական գիմնազիա: Սակաւ է պատահում, որ տանը հրաւիրէին վարժապետ:

Պանսիօնում թեթեւ կերպով սովորեցնում են աշակերտուհուն օտար լեզուով կարդալ եւ սխալներով գրել. փոքր ինչ տեղեկութիւն են տալիս պատմութիւնից, աշխարհագրութիւնից եւ թուաբանութիւնից: Բնական գիտութիւնների հետ հազիւ թէ ծանօթացնում են, իսկ կեանքի գործնական կողմերի հետ նա մնում է բոլորովին անծանօթ: Այն, որ սովորում է կեանքի համար, սահմանափակվում է մի քանի սալօնական սովորութիւններով, թէ որպէս պատշաճ է պահել իրան հասարակութեան մէջ, որպէս գլուխ տալ եւ այլն: Աւելացնում են դրանից վրա պարը եւ պիանօի վրա ածել, որը միշտ ամաչում է նա օտարների մօտ ածելիս: Բայց ինչ որ գլխաւորն է, դա է պանսիօնի մէջ տիրող ոգին եւ ուղղութիւնը, որ ներշնչում է նրա մէջ միայն թեթեւամտութիւններ . . . Աղջիկը կորցնում է իր ինքնուրոյնութիւնը եւ բնական նրա մէջ ոչինչ չէ մնում: Ամեն ինչ նրա մօտ կեղծ է լինում, թէ ձայնը, թէ խօսելու ձեւը, թէ աչքերի հայեացքը եւ թէ ժպիտը: Հիմնաւոր նրա մէջ ոչինչ չը կայ. բոլորը դատարկ է, թէ սիրտը եւ թէ գըլուխը: Եւ ուրիշ կերպ լինել կարող չէր. արեւմտեան կրթութիւնը նա ստանում է երկրորդական ձեռքից . . .

Պանսիօնից առնում են „մօդնի“ աղջկան, երբ մարդու տալու ժամանակը մօտենում է: Դպրոցի կրթութիւնը լրացնում է մայրը: Երեւակայեցէք ձեզ մի մայր, որ յանկարծ արեւելեան կեանքից արեւմտեանի մէջ էր ընկել,—փակ ընտանիքից դէպի արձակ աշխարհ էր դուրս եկել: Տարբերութիւնը ահագին է: Կինը, որ պատրաստված չէ աշխարհի համար, որ ծանօթ չէ ժողովրդի հետ, որ չը գիտէ կեան-

քի արտաքին պայմանները, միշտ անզօր կը լինի վտանգների դէմ։ Դրանով պէտք է բացատրել շատ մայրերի վարքը . . .

Ազատվելով պանսիօնից, աղջիկը բոլորովին մի կողմ է ձգում գրքերը, նա սկսում է նայել աւելի „մօդնի ժուռնալների“ վրա։ Բայց լինում են այնպիսիները, որ սկսում են կարդալ այն գրքերը, որ պանսիօնում արգելված էին։ Նրանք դառնում են աւելի սանտիմենտալային, եւ աւելի ցնորամիտ։ Թերի ուսումը եւ անհիմն կրթութիւնը երբեմն առաջ են բերում տարապայման անձնաւորութիւններ, այս պատճառով զարմանալի չէ տեսնել, որ մեր թերթերից յայտնվում են երբեմն „նիհիլիստկաներ“։ Ծայրայեղութիւնները շօշափում են միմեանց։ Տգէտ, մնաճաւատ, նախապաշարմունքներով լի եւ խաւար ընտանիքը տալիս է շատ անգամ ծայրայեղ ազատամիտներ, երբ կրթութեան լոյսը մօտեցնում ես նրան։ Բայց այդպիսիների թիւը մեր աղջիկների մէջ շատ փոքր է, ես առիթ եմ ունեցել միայն մէկի հետ ծանօթ լինելու։ Մինչեւ այսօր չեմ կարող երեւակայել մի ուրիշ ողորմելի արարած, որ նրա նման մոտաւոր հիւանդութեան մէջ ընկած լինէր։ Ես յարգում էի նրան, որովհետեւ նա ներկայանում էր որպէս մի բողոք ընտանիքի հնացած նախապաշարմունքների դէմ, բայց ցաւում էի, որ այնքան դարդակ էր։

Ընտանիքը աւելի է փչացնում անմեղ աղջկան, քան թէ պանսիօնը։ Ծնողների բարքերի կոպտութիւնը, վայրենութիւնը, կեանքի համարձակութիւնը, վատ օրինակը,—ահա ընտանիքի այն պայմանները, որոնց մէջ կազմվում է աղջկայ բնաւորութիւնը սկսեալ նրա մանուկ հասակից։ Աղջիկը հօր երեսը համարեա չէ տեսնում. նա առաւօտեան դիմում է իր գործին, երբ բոլորը քնած էին. ամբողջ ցերեկը անց է կացնում խանութում կամ կանտօրում։ Երբ գիշերը խանութը կողպված է, այնտեղից ուղղակի դիմում

է կլուբը թուղթ խաղալու եւ վերադառնում է տուն այն ժամանակ, երբ բոլորը նոյնպէս քնած էին: Լինում են գիշերներ, որ նա չի էլ վերադառնում. . . Հայրը զուարճանում է դրսում, իսկ մայրը տանը „վեչերներ“ է սարքում եւ լօտօն ու թղթախաղը նրա սալօնից անպակաս են լինում: Աղջիկը սկսում է կամաց կամաց մասնակցել մօր զըւարճութիւններին, եւ եթէ կին հիւրերի հետ հրաւիրված էին տղամարդիկ (որ առանց նրանց չէ լինում), աղջիկը ըսկսում է ցոյց տալ իր բոլոր շնորքը, „կօկետութիւն“ անել նրանց հետ, եւ զուարճախօսութիւնը ընդունում է վերին աստիճանի կինիկեան կերպարանք:

Շռայլութիւն եւ բարքերի համարձակութիւն,—ահա երկու ախտեր, որ փտեցնում են մեր բարձր եւ հարուստ դասի ընտանիքի բարոյական հիմքը: Ես ուրիշ կերպով չեմ կարող բացատրել այդ երեւոյթների պատճառները, բայց միայն նրանով, որ Թիֆլիսի մեր բոլոր հարուստները, ինչպէս ասում են, „նորաբսակ“ մարդիկ են, այսինքն ժառանգութեամբ չեն ստացել իրանց հարստութիւնը, այլ վաստակել են բախտի կամ հանգամանքների յաջողութեամբ, եւ շատ անգամ անազնիւ միջոցներով: Աղքատութիւնից յանկարծ հարստութեան տէր են դարձել: Այսպիսի մարդիկ չէին կարող անօրինել մի կանոնաւոր տնտեսութիւն եւ մի վայելուչ ընտանեկան կեանք: Շռայլութիւնը միշտ կից է լինում յանկարծահաս հարստութեան հետ եւ այս պատճառով նա երկրորդ սերունդին չէ հասնում: Վայելուչ կեանքը—լի ամեն բաւականութիւններով, բայց միեւնոյն ժամանակ չափաւոր սահմանի մէջ,—կազմվում է այն ժամանակ, երբ հարստութիւնը անցնում է մի քանի սերունդ: Ես մի շատ հասարակ օրինակով կը պարզեմ իմ միտքը. գցեցէք մի քաղցած հաւ մի ցորենով լիքը ամբարի մէջ, ինչ կը տեսնէք. նա կը սկսէ ոչ այնքան ուտել, որքան քթուլթ անել եւ ոտներով ցորենը ցրիւ տալ

այս կողմ՝ եւ այն կողմ: Նոր հարստացած աղքատը այդ հաւի նման է լինում: Մի եւ նոյն օրինակով կարելի է բացատրել եւ կնոջ բարքի համարձակութիւնը: Կինը, արեւելեան փակ կեանքի մէջ ճնշված կինը, որին յանկարծ տալիս են ազատութիւն (դա էլ մի տեսակ հարստութիւն է), չէ կարող օրինաւոր կերպով գործադրել իր ազատութիւնը, չէ կարող վայելել նրան որպէս հարկն է:

Բաւական հեռացայ նպատակից: Կրկին վերադառնալով դէպի գիւղական ընտանիքը, իմ՝ նկարագիրը վերջացած կլինի: Կարդալով այս հետազօտութիւնը, ինքն ըստ ինքեան ծագում՝ է հարց, արդեօք ինչից առաջ եկաւ կնոջ մի այսպիսի վիրաւորական վիճակը, որ նա ձայն չունի ոչ ընտանիքի եւ ոչ հասարակութեան մէջ, որ նա պահվում՝ է անմատչելի ծածկոցի տակ, որպէս մի նիւթ, որին արտաքին ատմօսֆերայի ազդեցութիւնը կարող էր փչացնել, որ նա իր անձի տէրը չէ, այլ գործ են ածում՝ նրան, որպէս մի սեփականութիւն, որ ուրիշին էր պատկանում, եւ վերջապէս, որ նա իբրեւ մարդ զրկված է մարդկային ամեն իրաւունքներից: Այդ հարցերի լուծումը շատ դժուար է, մանաւանդ այն պատճառով, որ պատմութիւնը մեր հին ընտանեկան կեանքից ամենեւին տեղեկութիւն չէ տալիս: Շատերը կարծում՝ են թէ կնոջ այս դրութիւնը կազմվեցաւ մահմետական ազդեցութեան ներքոյ, ոմանք տղամարդի բռնաւորութիւնն են պատճառ բերում: Բայց իմ՝ կարծիքով, հայ ընտանիքի կազմակերպութիւնը չէր կարող մի ուրիշ տեսակ վիճակ ստեղծել կնոջ համար, քան թէ այն, որ այժմ՝ կայ: Նրա ցանկութիւնը այն աստիճան համապատասխանում՝ է իր շրջանին, որ ստիպված ես մտածել, եթէ այլ կերպ լինէր, անպատշաճ կլինէր: Երեւակայեցէք ձեզ մի գիւղական ընտանիք, որ բաղկացած է քսաներեսուն կամ աւելի անդամներից. մի քանի ամուսնացած եղբայրներ միասին են ապրում. նրանց որդիները նոյնպէս

կնիկներ ունեն. տունը լցված է զանազան հասակի երեխաներով,—հէնց դա մի փոքրիկ պետութիւն է, ուր մարդիկ կապված են իրար հետ ընդհանուր շահերով: Մի այսպիսի ընտանիքի ամբողջութիւնը եւ ներդաշնակութիւնը պահպանելու համար, արեւելեան հայեացքով, շատ բնական էր, որ կնիկներին ձայն եւ իրաւունք չտրուէր: Երկպառակութիւնը եղբայրների մէջ միշտ ծագում է կնիկների անհամաձայնութիւնից: Կինը չափազանց բծախնդիր եւ նախանձոտ է: Տղամարդը մտածեց նրա բերանը փակել, որ ընտանիքի կապերը չը քանդվեն: Կնոջ դրութեան միւս մանրամասներն եւս բնականաբար առաջ եկան մի եւ նոյն ընտանեկան պայմաններից, որ պահանջում են նրանից անպայման հնազանդութիւն: Ի հարկէ, կնոջ դըրութեան վրա փոքր չազդեց եւ արտաքին աշխարհը. տիրող ազգերի բռնաբարութիւնները ստիպեցրին քօղի տակ պահել նրան: Մի արաբական խալիֆա ասում է. „Երկու բան պէտք է ծածուկ պահել օտարի աչքից, մէկը փողը, միւսը—կինը“:—Այդ խրատը արեւելքի պահանջն էր:

Կասէք, ի՞նչ հարկ կար, որ անպատճառ մի քանի եղբայրներ անբաժան ապրէին, երբ կարող էր իւրաքանչիւրը մի առանձին ընտանիք կազմել: Աշխատանքի բաժանումը պահանջում է հիմնել մի այսպիսի, եթէ կարելի է ասել՝ ընկերական ասսօցիացիա: Գիւղական ընտանիքը անպատճառ պէտք է շատ աշխատող ձեռքեր ունենայ իր բազմատեսակ գործերի համար: Աւելացրէք դրա վրա եւ այն հանգամանքը, որ մեր գիւղացին ապրել է միշտ բարբարոս եւ աւազակ ցեղերի բռնութեան ներքոյ. արտաքին ճնշումը ստիպում էր, որ մօտ ազգականները սեղմվէին միմեանց հետ եւ կազմէին մի մեծ ամբողջ, ոչ միայն աւելի աշխատող ձեռքեր ունենալու համար, այլ մի մեծ ուժ կազմելու համար, եւ կռվելով աշխատութեան արդիւնքը յափշտակութիւնից ազատ պահելու համար: Դա

նահապետական դրութեան պահանջն է: Մեր նախապապ Հայկի ընտանիքը բաղկացած էր 300 հոգուց:

Այժմ որ ազատութիւն է տիրում, եւ կեանքի պայմանները փոխվում են, նրա հետ էլ ընտանիքի կազմակերպութիւնը փոքր առ փոքր ուրիշ ձեւ է ստանում. գերդաստանի անդամների թիւը պակասում է, եղբայրները պառակտելուց յետոյ բաժանվում են: Եւ այստեղից կնոջ վիճակը մասամբ կը փոխվի: Ի՞նչու: Նրա համար որ, եթէ նրանից պահանջում էին հնազանդութիւն, պահանջում էին լուռ լինել, դա գլխաւորապէս այն նպատակով էր, որ պահպանվի ընտանիքի ներդաշնակութիւնը, որ բաղկացած էր շատ անդամներից: Բայց եթէ այր եւ կին ու իրանց զաւակները մի փոքր ընտանիք են կազմում, այն ժամանակ տղամարդը նրա հետ շատ խիստ չի լինի, եւ կինը իր շահերով միայն կնոջ հետ կապված լինելով, նրա վրա կը նայի որպէս իր ընկերի վրա, եւ նրան իրաւունքներ ու ազատութիւն կը տայ: Եւ կինը այսպէսով ընտանիքի մէջ փոխելով իր դրութիւնը, նրա հասարակական դրութիւնն էլ կը փոխվի: Այս դատողութիւնները զուգէ խորթ երեւան, բայց պէտք է խորամուխ լինել գիւղական գերդաստանի մէջ, այն ժամանակ կը համոզվի մարդ, թէ այդ այդպէս է: Որքան էլ սիրելու լինէր տղամարդը իր կնոջը, որքան էլ ցանկանալու լինէր նրան լաւ եւ հանգիստ պահել, դարձեալ չէր կարող, որովհետեւ աշխատանքի բաժանումը ընտանիքի մէջ պահանջում է, որ բոլորը հաւասար գործէին: Եթէ ամուսինը մի փոքր խնայէր իր կնոջ, իսկոյն կը զգուէր իր եղբօր կնոջ նախանձը. եւ դրանով եղբայրների մէջ համաձայնութիւնը կը խանգարվէր: Բայց այդ պատահել չէր կարող, եթէ բոլոր ամուսնացած եղբայրները միասին չէին բնակվում:

Ընտանիքի նոյն իսկ կազմակերպութիւնը պահանջում էր մոցնել գերդաստանի մէջ միապետական սիստեմա,

յանձնելով իշխանութիւնը այն անձի ձեռքը, որ բոլորից երէցն էր հասակով եւ բարոյապէս հեղինակութիւն ունէր: Ի հարկէ, կինը, որպէս ֆիզիկապէս մի թոյլ արարած, պէտք է երկրորդական տեղ բռնէր այդ ընկերութեան մէջ, որ պահանջվում է աւելի մարմնական ոյժ: Իսկ կինը իր դրութեան այդ ձեւի մէջ, թէեւ դարերով անցկացրուց շատ դժնդակ օրեր, բայց կարողացաւ պահպանել իր բարքի մաքրութիւնը, եւ առանց փչանալու հասցրուց իրան մեր ժամանակին: Այժմ ունենք ձեռքում մի անարատ եւ դեռ չը ձեւակերպված տարր, որ սովորել է ընդունել ինչ որ լաւ է, ինչ որ օգտաւէտ է,—տուր նրան ուսում, եւ նա կը լինի քաղաքակրթող տարր, որպէս մինչեւ այսօր եղել է ընտանիքի բարոյական հիմքը եւ նրա աշխատութիւնները բաժանող անդամը: Մեծ բարեբաղդութիւն արած կը լինի կնոջ սեռին այն մարդը, որ լուսաւորութեան կայծը կը մտցնէ ամենախուլ գիւղական խրճիթներում. այդ լոյսը միայն կարող է նրան առաջնորդել, եւ դուրս բերելով անձայն փակ շրջանից, կանչէ նրան հասարակական ընկերութեան անդամ:

Ես սկսեցի գեղջկուհու ծնունդից, պէտք է վերջացնեմ նրա մահով: Այժմ մնում է խօսել նրա ծերութեան մասին: Գիւղացի կինը որքան հնանում է, այնքան անտիկային բնաւորութիւն է ստանում, եւ որքան յիմարանում է, այնքան խելացի է համարվում: Տարիների բարդութեան հետ աւելանում է եւ նրա հեղինակութիւնը: Այդ հասակում որդիքը աւելի պատկառանքով են նայում նրան, հարսները աշխատում են չը վշտացնել: Ծերունի ծնողների թէ անէծքը եւ թէ օրհնութիւնը մեծ նշանակութիւն ունեն ռամկի մօտ: Պառաւից աշխատութիւն չեն պահանջում, թողնում են, որ հանգստանայ: Այդ հասակում նա գործում է աւելի եկեղեցում, քան թէ տան մէջ: Նա նախա-

պատրաստվում է գերեզմանի համար: Պառաւի ջերմեռանդութիւնը հասնում է մինչեւ խելագարութեան. նա լինում է չափազանց սնահաւատ: Մանկութեան օրերում եւ միջին հասակում նա ժամանակ չունէր մտածելու հոգու եւ երկընքի համար. կեանքը աւելի շատ էր պահանջում: Տարվայ մէջ մի քանի անգամ եկեղեցի գնալով եւ հաղորդվելով, նա իր պարտքը վճարում էր: Այժմ հանգամանքները փոխվեցան: Այսուամենայնիւ, տան մէջ դարձեալ նա հանգիստ չէ մնում. ոսկրացած ձեռները չեն սովորել անգործ մնալ: Նա է հսկում խոհանոցի վրա, բաժանում է կերակուրները. մառանի բանալիները իր մօտ է պահում, եւ նրա դիտող աչքերը չեն թողնում մի բան ի զուր կորչել: Պառաւը, որովհետեւ պառաւելով կրկին երեխայանում է, այս պատճառով լինում է նա մի լաւ ընկեր երեխաների համար, զբաղեցնում է նրանց, պահպանում է, օրօր է կարդում եւ երբեմն հէքիաթներ է ասում: Երեխաները ընտանիքի մէջ չունեն մի աւելի մտերիմ բարեկամ, մի աւելի հզօր պաշտպան որպէս պառաւ տատը: Սպառող կեանքը եւ նոր սկսվող կեանքը մօտենում են եւ գրկում են միմեանց: „Տան ծերը տան խէյր-բարաքեաթն (օրհնութիւնն) է“—ասում է ռամիկը եւ շատ ցաւում է, երբ նա պակասում է տնից: Ամենապաղքատ գիւղացին աշխատում է պառաւ մօր թաղումը հանդիսաւոր կացուցանել, ոչինչ չը պակասացնելով ընդունված սովորութիւններից: Նա արժանաւոր կերպով վարձատրում է քահանային, „հոգեհաց“ է տալիս գիւղական հասարակութեանը եւ „հոգեբաժին“ է տալիս հոգեւոր կառավարութեան գործակալին: Պառաւի մահը աւելի թանգ է նստում, քան թէ նրա մի քանի տասն տարիների կեանքը: Չէք գտնի մի գիւղացի, որ իր մօր գերեզմանը թողնէր առանց տապանաքարի, որ ամեն տարի նրա շիրիմը օրհնել չը տար, կամ քահանային փող

չը վճարէր „հոգոց“ կարդալու համար։ Հայը առհասարակ յարգում է զերեզմանը—երկնքի այդ նախագաւիթը, բայց մի բան, որ արժանաւոր կերպով չէ գնահատում, դա է—կեանքը։

---

## Գ.

### Քաղաքացուհին

Քաղաքում շատ բան փոխվում է։ Իմ խօսքը գաւառական քաղաքների մասին է։

Մեր գաւառական քաղաքներում չը կայ արիստոկրատիա, չըկայ պրօլետարիատ եւ չունենք մշակ դաս, ինչ որ հասկացվում է Եւրօպայում այդ անունով։ Մենք ունենք միայն վաճառականներ եւ արհեստաւորներ, ունենք եւ ծառայողներ ու եկեղեցականներ, եթէ վերջիններս կարելի էր դասակարգ համարել։ Ես սկսում եմ արհեստաւորի կնոջից։

Փոքրիկ մանրավաճառները եւ արհեստաւորները շատ նման են մէկ մէկու. կնոջ դրութիւնը երկուսի ընտանիքում եւս մի եւ նոյն է։ Մեր քաղաքներում հարիւրաւոր արհեստաւորների ընտանիքներ չեն ածած միմեանց վրա մի եւ նոյն տան մէջ, այլ բոլորը առանձին տներ ունեն։ Կեանքի պայմանները թոյլ չեն տալիս, որ մի քանի ընտանիքներ մէկ բնակարանում ապրէին։ Քաղաքացին իր տունը վարձով է տալիս այն ժամանակ, երբ իր համար աւելորդ էր, այսինքն, երբ մի քանի տներ ունէր։ Կանա-

Նոցը ըստ մեծի մասին տների առանձին բաժնումն է գը-տանվում: Ընտանիքի անդամների թիւը համեմատաբար փոքր է լինում, քան թէ գիւղերում: Այստեղ եղբայրները հէնց որ պսակվեցան, խիստ սակաւ է պատահում, որ միասին ապրէին:

Քաղաքացի արհեստաւորը աւելի թշուառ է, քան գիւ-ղացի երկրագործը: Կեանքի պէտքերը շատ են, քան թէ նրանց լցուցանելու միջոցները: Արհեստաւորի հին, սախա-կյան ձեւով պատրաստած արդիւնաբերութիւնը, օրըստօրէ գործածութիւնից ընկնելով, պատճառ է տալիս նրա դառն չքաւորութեանը: Ընտանիքի հայրը վաղ առաւօտեան գը-նում է իր խանութը եւ վերադառնում է մութ գիշերով. Նա տանում է իր հետ որդիներից, որը կարող էր իրան օգնել: Կինը չէ մասնակցում ամուսնի արհեստին եւ ոչ կարող է օգնել նրան: Այդ կարելի էր, եթէ արհեստանոցը մի եւ նոյն տան մէջ լինէր, ուր նրանք բնակվում էին, բայց նա գտանվում է բազարում, եւ կնոջ համար բազար դուրս գալ անպատշաճ էր. շատ անգամ նա չգիտէ, թէ ամուսինը որտեղ է գործում, եւ երբէք չէ տեսել նրա ար-հեստանոցը: Եւ այսպէս արհեստաւորը առաւօտեան գը-նում է իր գործին, կինը մնում է տան մէջ մենակ: Նա ոչ սպասաւոր ունի եւ ոչ աղախին. ինքը իր տան ծա-ռայողն է. եւ եթէ չունէր նա հասած աղջիկ, որ օգնէր ի-րան, տնային գործերը բոլորն ինքն է կատարում: Պառաւ սկեսուրը միայն հրամայող է, եւ շատ անգամ խանգա-րում է նրան իր անտեղի պահանջներով, քան թէ օգնում է:

Աղջիկը այստեղ եւս ծնում է մի եւ նոյն հանգա-մանքների մէջ, որպէս գիւղերում, եւ եթէ նկարագրէինք նրա որպէս աշխարհ գալը եւ ընդունելութիւնը, պէտք է շատ բան նորից կրկնէինք: Մայրը ինքն է կերակրում նորածին աղջկան, ինքն է հոգ տանում նրա մաքրութեան վրա, որ սկզբում շատ խնամք է պահանջում: Մի եւ նոյն

ժամանակ նա պէտք է օջախը վառէ, կերակուր պատրաստէ, եւ ամուսնի համար դուքանը ճաշ ուղարկէ: Փոքրիկ աղջիկը միշտ խանգարում է, այս պատճառով նրան շատ անգամ հէնց օրօրոցի մէջ ծեծում են, որ ձայնը կտրի, աղաղակ չը բարձրացնէ: Եւ երբեմն խմեցնում են կաթնով եփած խաշխաշ, որ քնէ եւ չը խանգարէ մօրը. Թըմրութիւնը եւ ապշութիւնը ափիոնի հետ փոքր հասակից մտնում է նրա ուղեղի մէջ:

Աղջկայ վիճակը փոխվում է, երբ նա ազատվում է օրօրոցից, երբ այլ եւս չէ կերակրվում մօր ստինքով, եւ երբ կարողանում է սողալ, կամ չորս թաթիկների վրա բարշ գալ եւ կամ պատերը բռնելով ման գալ: Այժմ նա ինքն իրան կարող է կառավարել: Նա երբեմն դուրս է գալիս բակը եւ ամբողջ օրը թաւալվում է հողերի եւ ցեխերի մէջ: Մայրը մասամբ ուրախ է, որ նրա երեսը չէ տեսնում, եւ երբեմն գտնում է նրան դրսումը քնած սառը գետնի վրա, կամ խրված ցեխի մէջ: Տան շէմքից ոտքը դուրս դնել եւ փողոցը գնալ նա չէ կարող, որովհետեւ դուռը միշտ կողպված է լինում. բայց բակը նրա խաղերի համար բաւական ընդարձակ ասպարէզ է, մանաւանդ երբ զարդարած է լինում պարտէզով, որը գաւառական քաղաքներում բնակիչների միակ մխիթարութիւնն է:

Դեռ հինգ տարեկան հասակին չը հասած, մայրը ըստիպեցնում է նրան կատարել այս եւ այն տնային գործը, օգնել իրան: Ամէն մի անուշադրութիւն հանդիպում է ծանր ապտակների: Այդ հասակում նրան թոյլ են տալիս գնալ մերձաւոր հարեւանի տունը, երբ պէտք էր մի բան փոխ առնել: Իսկ երբ դառնում է նա տասն կամ տասներկու տարեկան, այնուհետեւ տան դռները փակվում են նրա առջեւ: Խիստ հազիւ անգամ մօր հետ նա ազգականների մօտ է գնում: Գիւղացի աղջիկը այդ դէպքում աւելի բախտաւոր է. նա ապրում է աւելի արձակ աշխարհում.

եւ շատ անգամ, թէեւ ոչ առանց հակողութեան, գնում է այգին, պարտէզը, դաշտը, սարը, եւ շատ բան սովորում է բնութիւնից: Բայց արհեստաւորի աղջկայ աշխարհահայեցողութիւնը իր չափազանց նեղ շրջանի մէջ մնում է խիստ սահմանափակ եւ միակողմանի: Փակված տան չորս պատերի խուլ առանձնութեան մէջ, փակվում է եւ նրա մտաւոր զարգացումը: Թէեւ մայրը աշխատում է նրան մի բան սովորացնել, բայց բոլոր նրա դաստիարակութիւնը բարոյական բնաւորութիւն ունի. կրթող, զարգացուցիչ նրա մէջ ոչինչ չը կայ: Աղջիկը միշտ լսում է մի եւ նոյն խըրատները, թէ պէտք է խոնարհ լինի, հնազանդ լինի, ամօթխած լինի, սակաւ խօսէ, ամենեւին չը ծիծաղէ, տղամարդերի երեսին չը նայէ, պառաւ կնիկների ձեռքը համբուրէ եւ այլն: Նրա միտքը, սիրտը եւ հոգին ճնշում են հին նախապաշարմունքների ներքոյ, եւ խլում են նրանից ամեն մի ազատ, ինքնուրոյն զարգացում: Նա դառնում է մտաւորապէս իդիօտ, բայց բարոյապէս—հրեշտակ:

Աղջկանց դպրոցներ գաւառական քաղաքներում կամ չըկան, կամ եղածները դեռ մատչելի չեն ժողովրդի աղքատ դասին: Թողեալ այդ, ստոր դասը դեռ նայում է դպրոցին, որպէս մի անբարոյականացնող հիմնարկութեան: Այդ կարծիքը ստեղծել է ռամկի մտքում նոյն ինքն դպրոցը: Եւ եթէ յաջողվում է արհեստաւորի աղջկան դպրոց մտնել, ընտանիքի բռնակալութիւնը շարունակվում է դպրոցը: Վարժապետը եւ վարժուհին վարվում են նրա հետ նոյնպէս կոշտ-կոպիտ կերպով, եւ երբեմն ապտակներով, որպէս տանը վարվում էր մայրը, կամ հայրը: Ծնողներից նա չըտեսաւ որ եւ իցէ զարգացնող եւ կատարելագործող օրինակ, իսկ չոր ու ցամաք ուսումը չէ տալիս սնունդ ոչ նրա մտքին եւ ոչ հոգուն: Աղջիկը տարիներով երթեւեկում է դպրոցը կատարեալ տգիտութեան մէջ, եւ վնասակարն այն է, որ թերի եւ անկարգ ուսումը, արգելք

դնելով բնական զարգացմանը, շինում է նրանից բթամիտ:

Բայց մայրը, ինչ վարքի տէր եւ լինէր նա, դարձեալ աշխատում է աղջկայ սանձը իր ձեռքում պահել: Ոչինչ օրինակ այնքան կործանարար լինել կարող չէ, քան թէ այն, որ մարդ խրատում է ուրիշին այն առաքինութիւնները, որ ինքը չէ կատարում: Այստեղից առաջ է գալիս մօր եւ աղջկայ մէջ յարաբերութիւնների մի կեղծ խարդաւանք, որով մինը միւսին խաբում է: Բայց աղջիկը աւելի վարպետ է լինում:

Դպրոցից դուրս բերելէն յետոյ, աշխատում են աղջկան շուտով մարդու տալ: Օժիտի քանակութիւնը առաջուց հրատարակվում է, թէ քանի հազար է. նրա համեմատ որոնում են փեսայ: Մայրը սկսում է այնուհետեւ աղջկան ցոյց տալ աշխարհին. այցելութիւններ են անում, տանում է նրան բալ, թատրոն, „կրուժոկ“ եւ դրանց նման տեղեր: Աղջիկը միշտ իրան նեղված է զգում անկիրթ, անտաշ մօր մօտ, որ ամեն տեղ հետեւում է նրան, որպէս մի սեւ ստուեր, բայց թաքցնում է իր տհաճութիւնը: Հայրը ամենեւին չէ խառնվում գործի մէջ. նա իրան հեռու է պահում: Դուք չէք տեսնի հարուստ հայրերից մէկին, որ իր աղջկայ հետ ման գալիս լինէր փողոցում: Այս դէպքում հայր պահպանել է իր սեփականութիւրը այլեւ կնոջ վերաբերութեամբ:

Ամուսնութիւնները լինում են ըստ մեծի մասին հաւասարը հաւասարի հետ (նիւթական կարողութեան կողմից): Առաջ գերադասում էին աստիճանը, „մունդիրը“, բայց հիմա աստիճանաւորին քանի տեղ չեն դնում, եթէ փող չունի կամ որ եւ իցէ բարձր դիրք բռնած չէ: Մի ժամանակ էլ մօդայի մէջ մտան օտարազգի փեսաները, բայց հիմա նրանք էլ կորցրել են իրանց վարկը, որովհետեւ համարեա բոլոր ամուսնութիւնները օտարազգիների հետ անբախտ եղան: Փեսան աղջկայ բերած փողը կերաւ եւ

նրան քաղցած թողեց: Ծնողները սկսեցին ափսոսալ ոչ թէ աղջկան, որ մի անպիտանի ձեռքում մաշվում էր, այլ իրանց տուած փողին: Եւ այսպէս, ամուսնութեան մէջ գըլխաւոր դերը խաղում է հաշիւը եւ ամուսնական կապը դառնում է փողը: Ամենեւին չէք տեսնի, որ մի աղջիկ, մի քանի տասն հազար օժիտով, պսակվէր մի գեղեցիկ եւ առողջ երիտասարդի հետ, որ միայն ուսում ունէր, բայց փող կամ պաշտօն չունէր: Եւ ընդհակառակն, շատ կը տեսնէք այնպիսի փեսաներ որ ամուսին լինելու ընդունակութիւնը կորցրել էին, որ իրանց կեանքը սպառել էին վատ կացութեան մէջ, բայց պսակվում են աղջիկներից ամենագեղեցկի հետ, որովհետեւ փող ունեն: Սէրը ամենեւին դեր չունի այս դասի ամուսնութեան մէջ. եւ եթէ յայտնվում է նա, առաջ է բերում այնպիսի մի ռօմանս, որ ո՛չ մի իր գրիչը յարգող ռօմանիստ չէր ցանկանայ նկարել նրան: Շատ ցաւալի է լինում աղջկայ դրութիւնը, երբ նա միայն փողով պէտք է իր համար ամուսին գտնէր: Այդ դէպքում նրա անձնական արժանաւորութիւնները բոլորովին իրանց նշանակութիւնը կորցնում են: Գուցէ նա գեղեցիկ էր, գուցէ խելացի էր, եւ կարող էր լաւ կին լինել, բայց փեսաները նրա մօտով անցնում են, կարծես արհամարհելով: Նա մնում է որպէս մի անվաճառ ապրանք, որը խանութպանի լեզուով կոչվում է „փասմանդայ“ *: Տարիների հետ նրա բնաւորութիւնը փոխվում է: Կակիկը որքան պառաւում է, այնքան չարանում է: Պառաւ աղջիկը սեփականացնում է մաղձոտ բնաւորութիւն: Նա դառնում է եւ նախանձոտ, մանաւանդ երբ տեսնում է, որ վատերը փողով մարդի են գնում: Մի հարստից, որ կաղ աղջիկ ունէր հարցրին. „Ի՞նչպէս պէտք է մարդու տաս աղ-

* փասմանդայ նշանակում է ցած մնացած կամ յետ ընկած։

չինդ։“ Նա պատասխանեց. „Յիսուն հազար րուբլի կը դընեմ ոտքերի տակը, երկուսն էլ կը դըստուրին։“

Վերջապէս աղջիկը մարդի է գնում։ Կին լինելուց յետոյ սկսվում է նոր կեանք։ Առաջին ամիսներից յետոյ անցնում է եւ ամուսնական սիրոյ առաջին ջերմութիւնը։ Այնուհետեւ սառնութիւնը աննկատելի կերպով մէջ է մըտնում։ Այր եւ կնոջ յարաբերութիւնները պաշտօնական ձեւ են ընդունում։ Դէպքերը առաջ են բերում սոսկալի պայթումը։ Յետոյ սկսվում է ընտանեկան դժոխքը։ Եւ այդ ծագում է խիստ բնական կերպով։ Ամուսին այրը ունի իր պարապմունքը, իր արտաքին բարեկամները եւ բարեկամուհիքը. նա ունի իր առանձին զուարճութիւնները. գնում է կլուբ եւ ուրիշ այսպիսի տեղեր։ Նա այնքան զբաղված է լինում իրմով, որ համարեա մոռանում է, թէ կին ունի։ Կինն էլ իր կողմից պէտք է իր համար մի կեանք տնօրինէ։ Այս բանի մէջ նրան առաջնորդում է մօր օրինակը։ Նա անում է այն, ինչ որ տեսել ու սովորել է մօրից։—Այցելութիւններ է անում, զբօսանքի է գնում, տանը երեկոյթներ է սարքում, թրեւ է գալիս մագազիններում, զբաղվում է աւելի իր պչրանքներով, քան թէ զաւակներով, իսկ տընտեսութիւնը մնում է աւազակ ծառաների եւ աղախինների կամքին։ Ամառը անց է կացնում ամարանոցում, իսկ ձմեռը սկսվում է մի եւ նոյն դատարկ կեանքը։ Տարիները անցնում են միմեանց ետեւից, միօրինակ եւ աննպատակ զուարճութիւնները սաստիկ յոգնեցնում են նրան։ Այլ եւս ի՞նչ անէ. ամեն բան փորձել, ամեն բան մաշել է նա։ Վերջին տարիներում սովորութեան մէջ մտաւ արտասահմանը. կնիկները սկսեցին ձգել ամուսիններին եւ հեռու օտարութեան մէջ թագցնել իրանց ամօթը։ Այս բոլորի մէջ ես մեղադրում եմ տղամարդին, նա ինքն է առիթ տալիս նրան վատ լինելու։

Պատահում են եւ բախտաւոր ամուսնութիւններ։ Տը-

ղամարդը զբաղվում է իր գործերով, աշխատում է ընդարձակել իր ասպարէզը: Կինը կառավարում է տունը եւ նրանից դարձնում է մի փոքրիկ դրախտ: Երկուսն էլ օգնում են միմեանց, մէկը, որպէս դրսի մարդ, միւսը որպէս ներսի մարդ: Կեանքը սահում է իր խաղաղ ընթացքով եւ լի ամեն վայելչութիւններով: Զաւակները թողնում են ծնողների բոլորտիքը մաքուր, առողջ, որպէս հրեշտակներ: Ամեն ինչ դրվում է կարգի եւ օրինաւորութեան ներքոյ: Ամուսնական ներդաշնակութիւնը լինում է հիմքը ընտանիքի բարօրութեան, իսկ բարոյականութիւնը—նրա մէջ տիրող ոգին:

Մինչեւ այստեղ ինչ որ խօսեցի Թիֆլիսի հարուստ կամ բարձր անուանված դասի մասին, վերաբերում էր խոշոր վաճառականներին, նշանաւոր կապալառուներին, բանկիրներին, կալուածատէրերին, բախտախնդիր սպեկուլատօրներին, եւ առհասարակ այն հասարակութեանը, որ մեծ կարողութեան հետ ունի եւ մեծամեծ մոլութիւններ: Մնում է մի քանի խօսք ասել աստիճանաւորների կնիկների մասին: Այստեղ ընտանեկան կեանքը գտնվում է իր այլափոխութեան տագնապի մէջ. դեռ եւս անձեւ եւ անկերպարան է նա: Ոչինչ այնքան անշնորք եւ անարգ չէ լինում, որպէս մի կացութիւն, որ ոչ այս է եւ ոչ այն: Օտարացումը գտնվում է իր տգեղ այլանդակութեան մէջ: Ընտանիքը խլուելով մայրենի բնական հողից, դեռ եւս հաստատ հիմք չէ ձգել օտար հողի վրա: Նա տատանվում է որպէս մի ծառ, որ արմատ չունի: Դրանից հետեւում է նրա զօսացումը: Եթէ աւելացնենք եւ „չինովնիկութեան“ ոգին, որ մտնում է ընտանիքի մէջ, շատ հասկանալի կը լինի նրա դրութիւնը: Այդ հասարակութեան մէջ չքաւորութիւնը կապված է լինում մեծ ծախսերի եւ շռայլութեան հետ, որոնք պատճառ են տալիս անբարոյական ձեռնարկութիւնների նրանց լցուցանելու համար: Արդարեւ, այստեղ տղամարդը

դեռ եւս բոլորովին չի կորցրել իր ասիական կատաղի խանդը, որ յօժարվէր կնոջը բարեկամացնել իր մեծաւորի հետ, իր ասպարէզը լանացնելու համար. բայց ուրիշ ցածութիւնների դէմ նա անզօր է: Այստեղ նոյնպէս կնոջ քաղքերի աստիճանը վերաբերական է. կան մաքուրներ եւ կան անմաքուրներ: Աղջկան փոքր հասակից կրթում են, տաշում են, կոկում են, աշխատելով տալ նրան այն փայլը աւելի „бонтонъ“ լինելու համար: Նա դառնում է մի „մօդնի կուկլա“, որն ոչ սիրտ ունի եւ ոչ միտք: Գիտէ, արդարեւ, վարվել, գիտէ ծըքծըքվել, գիտէ կաչաղակի նման շատախօսել, բայց չը գիտէ մտածել: Նրա ամբողջ գոյութեան մէջ տիրում է դատարկութիւն: ծնողները իրանք են տնօրինում նրա ամուսնական բախտը: Կին լինելուց յետոյ, ամուսնից շուտով ձանձրանում է, որովհետեւ նրա սիրտը չէ սովորել երկար սիրել մէկին: Եւ առաջ է գալիս մի ծիծաղելի վէպ:

Այսուամենայնիւ, այս հասարակութեան մէջ կան ծընողներ, որոնք դեռ պահպանել են իրանց հայկական խելքը եւ սովորութիւնները, եւ որոնք խնայողութեամբ շինել են լաւ կարողութիւն, եւ սնուցանում են լաւ աղջիկներ: Այս կարգի մարդկանց վերաբերում են գաւառներից Թիֆլիս տեղափոխված եւ դեռ չը փչացած ընտանիքները, եւ մասամբ տոհմային ազնուականները: Դրանք ապրում են այն աստիճան պարզ, համեստ, հասարակ, եւ մի եւ նոյն ժամանակ վայելուչ կեանքով, որը չէք տեսնի նոր հարստացած վաճառականների մէջ: Վերջինները իրանց հարստութեան հետ ունեն մի տեսակ ցուցամոլութիւն, որով աշխատում են միշտ աչքի ընկնել: Նորելուկները առհասարակ քիթը բարձր են պահում: Բայց հին եւ հիմնաւոր ընտանիքների մէջ, որոնց սովորաբար կոչում են „օջախի որդիք“, օրինաւորութիւնը, պատշաճաւորութիւնը աւանդվել է սերունդից սերունդ տոհմային գերազանցութեան հետ: Աղջկայ ու-

սումը այստեղ նոյնպէս ստացվում է մի եւ նոյն աղբիւրներից, ուր սովորում են հարուստ վաճառականների աղջիկները: Բայց որովհետեւ աղջիկը ընտանիքի մէջ սկզբից փչացած չէ, դպրոցը իր աւերիչ ներգործութեամբ շատ չէ ազդում նրանց վրա: Աւարտելուց յետոյ դպրոցի թերութիւնները լրացնում են տանը, հրաւիրելով տնային վարժապետ մայրենի լեզուի համար, այլ եւ օտարերկրեայ լեզուների համար, որպէս են ֆրանսիերէնը եւ գերմաներէնը. հրաւիրում են եւ մուզիկայի վարժապետ: Այս տեսակ կրթութիւն ստացած աղջիկը, թէեւ այնքան ինքնակամ չէ լինում, որ իր համար փեսայ ընտրէր, եւ պսակվում է ծընողների համաձայնութեամբ, բայց միշտ լաւ կին է լինում: Նրանք երբեմն մարդի են գնում առանց օժիտի, եթէ ծընողները հարուստ չէին: Դա մի շատ ուրախալի երեւոյթ է որ աղջկայ անձնական արժանաւորութիւնը գնահատվում է: Նրանց վրա պսակվում են այնպիսի ուսումնական երիտասարդներ, որոնք թէեւ փող չունեն, բայց հարուստ ապագայի յոյս ունեն: Դրանց մէջ կարելի է տեսնել բախտաւոր ամուսնութեան բոլոր վսեմութիւնը:

Թիֆլիսի հարուստ դասի մէջ կնոջ ծերութիւնը այնքան ցաւալի չէ լինում: Պառաւի տարիների հետ մոռացվում է եւ նրա անցեալը. նա դառնում է աւելի բարեպաշտ եւ սկսում է յաճախել եկեղեցիները: Տան մէջ նրա վրա նայում են որպէս մի հին կարասիի վրա, որը երկար ծառայելով, մի տեսակ նուիրականութիւն էր ստացել, որին թէեւ չեն կամենում դէն գցել, բայց չեն էլ ցանկանում, որ շատ աչքի երեւար: Նրան պահում են որպէս մի հնոտիք: Ցանկալի մահը օգնութեան է հասնում պառաւին: Դատարկ կեանքից նա անցնում է դէպի գերեզմանի դատարկութիւնը: Որդիները նրա թաղումը կատարում են հանդէսով եւ մօտ ազգականները սեւ են հագնում:

---

## Դ.

Այժմ դառնում եմ դէպի գաւառները:

Գաւառներում ինքնըստինքեան հասկանալի է, որ կեանքի պայմանները փոխվում են: Մեծ տարբերութիւն կայ Թիֆլիսի բարձր դասի եւ գաւառական քաղաքների նոյն դասի պատկանող կնիկների մէջ: Ընտանիքը շատ չէ հեռացել նահապետականութիւնից եւ դեռ եւս գտնվում է իր արեւելեան կազմակերպութեան մէջ: Աղջկան մեծացնում են աւելի սաստիկ հսկողութիւնների ներքոյ: Ես պէտք է շատ բան նորից կրկնէի, եթէ մանրամասնութիւնների մէջ մտնէի. որովհետեւ կեանքը եւ կնոջ դրութիւնը այստեղ աւելի չէ տարբերվում թէ բարձր եւ թէ միջին դասի մէջ, որի մասին խօսեցի իմ հետազօտութեան նախընթաց գըլուխներում: Զանազանութիւնը միայն նորանումն է, որ մէկը ապրում է ապահով վիճակի մէջ, իսկ միւսը իր վշտալի կացութեան հետ կրում է եւ աղքատութեան դառնութիւնը:

Գաւառներում պանսիօն կամ որ եւ իցէ բարձր ուսումնական հիմնարկութիւն չը կայ: Եթէ հրաւիրում են տընային վարժապետ, դաստիարակութեան ժամանակ աշակերտուհու մայրը ուսուցչի կողքին նստած է լինում: Իսկ եթէ նրան ուղարկում են ծխական դպրոց, առանց սպասաւորի չէ գնում: Բայց մեծ մասամբ աղջկան մեծացնում են առանց ուսում տալու, կատարեալ տգիտութեան մէջ: Եւ տըգիտութիւնը լինում է նրա անմեղութեան գլխաւոր պայ-

մանը: Նա չէ ստանում եւ աշխարհային կրթութիւն. նրան ոչ մի տեղ չեն տանում, օտարներին ցոյց չեն տալիս եւ միշտ հեռու են պահում տղամարդի հասարակութիւնից: Նա մնում է դանդաղկոտ, ամօթխած, երկչոտ եւ լի ամեն նախապաշարմունքներով:

Ծնողները տալիս են աղջկան իրանց ընտրած փեսային, եւ օժիտի սովորութիւնը շատ ծանր լինելով, փեսայ գտնելը միշտ հեշտ է լինում: Եթէ հայրը հարուստ էր, կամ ազդեցութիւն ունեցող մէկն էր, ամեն երիտասարդ ցանկանում է նրան փեսայ դառնալ, կողմնակի կերպով նրանից օգուտ քաղելու համար: Մեր մէջ վաղուց հարց է բարձրացել, թէ աղջկան թոյլ չեն տալիս ազատ կամքով իր ամուսնական վիճակը տնօրինելու: Միթէ նա կամք ունի: Նրան այն աստիճան միամիտ, անփորձ եւ կեանքի հետ անծանօթ են մեծացրել, որ եթէ նրան իր կամքին թողնէին, առաջին պատահած շարլատանը կարող էր խաբել եւ անբախտացնել նրան: Ծնողները գոնեա ճանաչում են աշխարհը եւ գիտեն նրա պահանջները, աշխատում են իրանց զաւակին մի յուսալի եւ ապահով մարդու ձեռքը տալ: Այնուհետեւ աղջիկը, որպէս եղել էր իր հօր եւ մօր խոնարհ զաւակը, այնպէս էլ դառնում է իր տղամարդի հնազանդ եւ հլու ամուսինը: Խիստ հազիւ դէպքեր առաջ են բերում անհամաձայնութիւն, եւ ամուսնական անհաւատարմութիւնը նոյնպէս հազուագիւտ երեւոյթ է գաւառներում:

Կին լինելուց յետոյ նա իսպառ կորցնում է իր ազատութիւնը: Նրան պահում են փակված, տան չորս պատերի մէջ եւ ոչ ոքի ցոյց չեն տալիս: Նա իրաւունք չունի բացի իր տղամարդից մի օտարի հետ ոչ տեսնվելու եւ ոչ խօսելու: Նա տեսնվում է եւ խօսում է, այն եւս խիստ սակաւ անգամ, միայն իր ամենամերձաւոր ազգականների հետ, որպէս են հայրը, մայրը, քոյրը, եղբայրը եւ այլն: Նա չէ խօսում եւ իր ամուսնի հօր, նրա եղբօր եւ նրա ազ-

զաւակների հետ արական սեռից: Բացի ընտանեկան նեղ շրջանից, արտաքին աշխարհում կինը տեղ չունի զաւառների մէջ: Թատրոն, բալ, „կրուժօկ“ եւ մինչեւ անգամ ամենահասարակ զուարճութեան տեղեր չը կան: Հասարակաց այգիները տղամարդերի համար են: Կինը զրկուած է բոլոր արտաքին վայելչութիւններից: Նա իրաւունք չունի այլ եւ իր ներքին շրջանի մէջ, ընտանեկան „օջախում“ մի ուրախ օր անցկացնել: „Վեչերներ“ տալ չէ կարող: Եւ եթէ լինում են երբեմն հրաւէրներ, այն եւս ամենամերձաւոր բարեկամների կնիկներն են կանչվում. ոչ մի տղամարդ նրանց „մէջլիսի“ մէջ մասնակցել չէ կարող, եւ մինչեւ անգամ տանտիկնոջ ամուսին այրը այն օրը իր տունը չէ մնում, երբ տանը կին հիւրեր կային: Սակաւ է պճրանքը, սակաւ է զարդարանքը: Փակված տան մէջ ո՞ւմը պէտք է իրանց ցոյց տայ կինը: Եւ այդ հեռու է պահում նրան շռայլութիւնից: Չը կայ դատարկաշրջիկ կեանք, որ սարսափելի կերպով տանում է կնոջը դէպի մոլորութիւն: Նա ապրում է որպէս մի ողորմելի միայնակեաց, եւ ճըզնում է տնային լռութեան մէջ: Խիստ հազիւ անգամ նա երկչոտ կերպով լուսամուտից նայում է դէպի փողոցը, երբ պատահել էր մի օտարոտի աղմուկ: Այս պայմանների մէջ, թէեւ զաւառացի կինը իր նազելութեամբ չէ քաղցրացնում տղամարդի սիրտը, թէեւ նա առհասարակ զուրկ է լինում այն հրապուրիչ յատկութիւնից, որ կոչվում է կ ա ն ա ց ո ւ թ ի ւ ն,—բայց տնտեսութեան մէջ, իբրեւ անխոնջ տանտիկին, նա հրաշալի է: Եւ այդքանն է պահանջում նրանից տղամարդը:

Պատահում են եւ օտարոտի երեւոյթներ: Տեսնում ես մի վաճառական, որ եղել էր Թիֆլիսում, Մօսկվայում, կամ իր գործերով ընկել էր արտասահման: Տեղային կընիկները նրա մէջ առաջ են բերում մի տեսակ ազատամտութիւն: „Ինչո՞ւ իմ կինս էլ դրանց նման չը պետի լի-

նի", մտածում է վաճառականը: Նա կարծում է, թէ բա-
ւական էր, որ իր կինը այնպէս հագնվէր, որպէս մի ֆը-
րանսուհի, եւ իսկոյն նրա նման կը լինէր: Ապսպարում է
հագուստներ վերջին մօդայի ձեւով եւ վերադառնում է
տուն: Կինը հագնելու եղանակը անգամ չը գիտէ, մարդը
օգնում է նրան, որքան իրան յայտնի է: Եւ յանկարծ „մօդնի
կապիկը" սկսում է յայտնվել փողոցներում, մտնում է
զանազան շրջանների մէջ: Նա ինքը շատ գոհ չէ իր այ-
լափոխութիւնից. նեղվում է, կարմրում է, քրտնում է, եւ
կարծում է թէ ամբողջ աշխարհը ծիծաղում էր իր վրա:
Բայց ի՞նչ անէ. մարդը ցանկանում է, որ նա քաղաքա-
կրթված կին լինէր: Դա կատարեալ տանջանք է: Ով որ
տեսել էր մօդնի մագազիններում դրած „մանեկենը", որ
գործ են ածում զգեստներ չափելու եւ փորձելու համար,
կարող է մի ճիշդ նմանութիւն գտնել դրա եւ մեր գաւա-
ռացի „մօդնի" տիկնոջ մէջ, որը այնքան է հասկանում
իր նոր հանդերձի գործածութիւնը, որքան հասկանում է
փայտից շինած „մանեկենը": Ես նախապաշարմունքով չեմ
նայում երեւոյթի վրայ: Ես սիրում եմ կնոջ „ցրացիան",
սիրում եմ նրա նազելութիւնը: Բայց չեմ կարող չը վըր-
դովվել, երբ կնոջը անփորձ, անպատրաստ բաց են թող-
նում դէպի աշխարհ: Այսպիսի կինը առաջին զոհն է դառ-
նում կեանքի յանդուգն այլափոխութեան: Ես կարող եմ
մատներով համբարել շատ օրինակներ, բայց ի՞նչ հարկա-
ւոր է. կենցաղավարութեան ընդհանուր օրէնքները սաս-
տիկ պատժում են, երբ կինը նրանց դէմ զեղծումներ է
գործում: Մի մարդ, երբ երկար ժամանակ պահվել էր մութ
սենեակում, երբ յանկարծ նրան դուրս են թողնում լոյսի
մէջ, նրա աչքերը լաւ չեն տեսնում, շլանում են, եւ նա
ընկնում է: Նոյնը պատահում է տան մէջ փակված կնոջ հետ:

Գաւառներում աստիճանաւորի կամ կառավարութեան
պաշտօնեայի ընտանիքը բաւական տարբերվում է հարուստ

վաճառականի եւ կալուածատէրի ընտանիքից: Այստեղ աշխատում են կեանքին տալ, որքան կարելի է, եւրօպական ձեւ: Ծառայող հայրը ինչ որ տեսել էր իր ռուս մեծաւորի տանը, նոյնը աշխատում է մտցնել եւ իր ընտանիքի մէջ: Աղջկան, եթէ հօր կարողութիւնը ներում է, ուղարկում են Թիֆլիս որ եւ է պանսիօնում սովորելու համար: Նա վերադառնում է, իր հետ բերելով Թիֆլիսի մոլութիւնները: Հայրը խօսում է նրա հետ ռուսերէն, իսկ մայրը ներողամըտութեամբ է նայում իր դստեր թեթեւամտութիւնների վրա. կարծելով, թէ „ուսեալ“ օրիորդը այնպէս պէտք է լինի: Բարեկամներիցս մէկը, որ ֆրանսիերէն լեզուի վարժապետ էր, պատմում էր, թէ ինքը առիթ ունեցաւ ծանօթանալ մի օրիորդի հետ, որ բնակվում էր մի փոքրիկ գիւղաքաղաքում, որովհետեւ այնտեղացի էր: Օրիորդի հայրը տէրութեան ծառայութեան մէջ այնքան վարպետ էր գտըն-վել, որ դիզել էր բաւական փող, եւ կարողացել էր աղջկան Թիֆլիս ուղարկել, ուր նա ուսում էր ստացել: Բարեկամս խոստովանվում էր, թէ օրիորդը չէր սիրում նրան, բայց ունէր դէպի նա մի առանձին համակրութիւն այն պատճառով միայն, որ երիտասարդը խօսում էր ֆրանսիերէն եւ երկար ժամանակ ապրել էր Փարիզում: Նա հաւատացնում էր, թէ Փարիզի ամենայացած „գրիզետկաների“ մէջ չէ տեսել մի աղջիկ, որ նրա նման արձակ վարքի տէր լինէր: Օրիորդը աշխատում էր ազատամիտ ձեւանալ եւ հեռու ամեն նախապաշարմունքներից, եւ իր ազատամտութիւնը ցոյց էր տալիս նրանով, որ շատ անգամ ընդունում էր երիտասարդին իր քնարանում, եւ ինքը մահճակալի վրա պառկած, ոտները յենարանի վրա ցցած, խօսում էր նրա հետ Վօլթերի եւ Ռուսօի վրա, որոնց մտքերի հետ ամենեւին ծանօթ չէր: Ահա այսպէս փչացնելով աղջկան, գցում են գաւառական համեստ քաղաքը: Գալիս է ժամանակը, որ պէտք է մարդու տալ: Մի վաճառական տղայ,

թէեւ հարուստ, անարժան է համարվում „ուսեալ„ եւ „կըրթեալ“ օրիորդին ամուսին լինելու: (Խօսքը մեր մէջ մնայ, վաճառականը ամենեւին չի էլ ցանկանայ նրա ամուսին լինել): Տալիս են „մունդիր“ ունեցող մարդու: Որովհետեւ այսպիսիների թիւը շատ սակաւ է. ուրեմն ընտրութեան մէջ խիստ չեն վարվում. գցում են առաջին պատահողի ձեռքը: Կին լինելուց յետոյ „ուսեալը“ շրջապատում է իրան քաղաքի ծառայողներով, ինչ ազգից եւ լինէին նրանք,— հայ, թուրք, ռուս եւ այլն: Բոլորը հաւաքվում են նրա սալօնում եւ թուղթ են խաղում: Ուրիշ զուարճութիւն չը կայ: Եթէ ամուսին այրը լաւ խաղացող է, կամ գիտէ վարպետութեամբ կարտերը „ շինել“, լաւ օգուտ է քաղում իր կընոջ „ֆիրմայից“, ամեն գիշեր կողոպտելով իր հիւրերին: Ես մի գիշեր առիթ եմ ունեցել գաւառում պատահել մի այսպիսի ընտանիքում. ոչինչ շրջան այնքան զզուելի չէր կարող լինել, քան թէ այն: Ինձ վրա նայում էին, որպէս մի տխմարի վրա, որովհետեւ խաղալ չը գիտէի: Բայց դատարկ կեանքը շուտով ձանձրացնում է մեր „ուսեալին“: Գաւառական փոքրիկ քաղաքը խիստ նեղ է գտնում իր ասպարէզի եւ բաւականութիւնների համար: Այս պատճառով երբեմն գընում է Թիֆլիս իր հին բարեկամների եւ բարեկամուհիների հետ տեսնվելու համար: Ու ամեն անգամին ապսպարում է իր համար նոր զգեստներ, որովհետեւ իր քաղաքում դերձակը „մօդայի“ հետ ծանօթ չէր: Ու ամեն անգամ վերադառնում է մի նոր շքով:

Բայց այսպիսիներին պէտք է բացառութիւն համարել, որովհետեւ նրանց թիւը շատ փոքր է:

Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ իմ վերեւում նկարած տիպը Թիֆլիսի պտուղ է, որտեղից կեղծ կրթութիւնը, որպէս պղտոր առուից, հոսում է դէպի գաւառները: Բայց առհասարակ գաւառացի կինը չունի այն համարձակութիւնները: Այստեղ կինը, որքան էլ հարուստ, որ-

քան էլ բարձր տան հարսն լինէր, ապրում է փակված կեանքի մէջ, եւ շատ վախենում է բամբասանքից: Մեծ քաղաքներում ոչ ոք ուշադրութիւն չէ դարձնում, թէ ինչ է գործում նրա դրացին. բայց գաւառական փոքրիկ քաղաքում կնոջ ամեն մի սխալ քայլը գրգռում է ընդհանուր հետաքրքրութիւն: Նա իսկոյն դառնում է մեղադրանքի առարկայ, երբ նկատում են նրա մօտ որ եւ իցէ տարապայման վարմունք: Նրան կըսկսեն մատով ցոյց տալ, նրա մասին կը շարադրեն զանազան պատմութիւններ, եւ պատահած ժամանակ, կը յանդիմանեն տղամարդին, թէ քո կինը անառակ է: Այս պատճառով գաւառացի կինը չէ համարձակվում ոտքը դուրս դնել ընդհանուր սովորութիւնից: Շատ էլ ցանկանար, ով կը թողնէր: Նկատված է, եթէ տըղամարդը, հետեւելով մեծ քաղաքների օրինակին, կամենում է կնոջը փոքր ինչ ազատութիւն տալ, նրան աշխարհ դուրս բերել,—ընտանիքի մէջ ծագում է մի մեծ փոթորիկ, եթէ նրա մէջ կային դեռ պառաւ մայր եւ ծերունի մայր: Հին եւ նոր սերունդի կռիւը դեռ չէ վերջացել: Ու եթէ գերեզմանը կը ծածկէր այդ հներին, նախապաշարմունքը եւ վաղեմի սովորութիւնը դարձեալ ընդ երկար կը պահէին կնոջը իր կաշկանդեալ վիճակի մէջ: Ես ճանաչում եմ շատ գաւառացի վաճառականներ, որոնք գործով իրանց կնիկների հետ բնակվում են Թիֆլիսում: Այստեղ նա ման է ածում իր կինը, տանում է զանազան զուարճութեան տեղեր, եւ տանը նրան չէ թաքցնում իր հիւրերից: Բայց եթէ մի եւ նոյն մարդուն իր բարեկամը կը պատահի գաւառում, նա կնոջը այլ եւս ցոյց չի տալ: Ինչու եմ օրինակ բերում վաճառականին: Բարձր ուսում ստացած երիտասարդը, որ նոյնպէս ուսեալ կին ունէր, գաւառը վերադառնալիս, ենթարկվում է մի եւ նոյն ընտանեկան պայմաններին, եթէ չէր ցանկանում հասարակաց բամբասանքի առարկայ դառնալ:

Ընտանիքը եւ կեանքը դարերով մշակել են այնպիսի սովորութիւններ, որոնք երկաթի օրէնքի զօրութիւն են ըստացել: Հեշտ չէ միանգամով նրանց խորտակել: Կնոջ դերը եւ տղամարդի դերը բոլորովին որոշված են: Կինը իշխում է տան վրա, չորս պատերի մէջ, եւ միանգամայն անձնատուր է լինում իր զաւակներին, սպասաւորներին եւ խոհանոցին: Տղամարդը գործում է դրսում: Կնոջ եւ տղամարդի գործունէութիւնը այն աստիճան բաժանված են միմեանցից, որ առաջինը ամենեւին չը գիտէ, թէ ինչ է շինում իր ամուսինը դրսում: Եւ այս պատճառով, նա ձգում է իրանից ամեն պատասխանատուութիւն տղամարդի գործերի յաջողութեան մասին: Քանի տղամարդը աշխատում է, վաստակում է, բերում է, միասին վայելում են: Իսկ երբ նա աղքատացաւ, այնուհետեւ կինը լինում է նրա անբախտութեան անտրտունջ բաժանորդը: Կնոջ եւ տղամարդի մէջ ը ն կ ե ր ա կ ա ն կապ չը կայ: Կայ միայն կրօնի—ամուսնական կապ: Որպէս գործով բաժանված են նրանք միմեանցից, այնպէս էլ բաժանված են եւ հասարակական կեանքով: Ամուսին այրը, երբ պատահում է փողոցում իր կնոջը, երեսը շուռ է տալիս եւ անցնում է, կարծես չէ ճանաչում նրան: Երբ կնոջ գործունէութիւնը սահմանափակվում է ընտանեկան „օջախի" շուրջը,—ահա այս է, որ նրան փոքրացնում է եւ շինում բոլորովին կրաւորական էակ: Կինը այն ժամանակ միայն կը մտնէր իր մեծ դերի մէջ, եւ այն ժամանակ կը դառնար քաղաքակրթող տարր, երբ կրօնի ամուսնական կապի հետ, նրա եւ մարդի մէջ կը կազմվէր եւ ը ն կ ե ր ա կ ա ն կապ, մինը միւսին փոխադարձ համերաշխութեամբ, կեանքի բոլոր պէտքերի մէջ: Բայց քանի որ մենք կնոջ կրթութիւնը սկսում ենք նրանից, որ պատրաստում ենք նրան հանդէս դուրս բերել, ցոյց տալ աշխարհին, որպէս մի գեղեցիկ բան,—միշտ սխալանքի մէջ կը մնանք: Կնոջ գործակցութիւնը իր

*տղամարդի հետ այն աստիճան կորված է լինում, որ եթէ ամուսին այրը յանկարծ մեռնում է, նրա որդիքը մնում են առանց մի պատառ հացի: Ահագին հարստութիւնը, երբ յուսալի ձեռքերում չէր գտնվում, մի քանի տարվայ մէջ ոչնչանում է, կողոպտվում է: Կինը, որովհետեւ անտեղեակ է լինում ամուսնի գործերին, տգէտ եւ անփորձ է լինում, այս պատճառով չէ կարողանում պահպանել նրա թողած ժառանգութիւնը: Այսպիսի օրինակներ շատ են եղել, բայց դեռ եւս չէ տեսնվել մի օրինակ, որ ամուսնի մեռնելուց յետոյ կինը շարունակէր նրա գործը, մահուան հետ եւ նրա ֆիրման ծածկվում է: Գիւղացի կինը այդ դէպքում աւելի բարձր է. մարդու մեռնելուց յետոյ նա շարունակում է երկրագործութիւնը եւ կերակրում է նրա թողած որբերին, որովհետեւ նա նոյն գործին սկզբից ծանօթ էր, նրա մէջ աշխատել էր:*

*Մնում է աւելացնել մի քանի խօսք գաւառական կնոջ մտաւոր զարգացման մասին: Մի՛ մոռացէք, որ խօսքս բարձր դասի մասին է: Փակ կեանքի մէջ, ընտանեկան նեղ շրջանում նրա աշխարհահայեցութիւնը մնացել է չափազանց սահմանափակ: Տղամարդը մի կողմից իրաւունք ունի, որ նրան ոչ ոքի ցոյց չէ տալիս, իրան խայտառակելու համար: Ես առիթ եմ ունեցել ծանօթանալ մի քանի գաւառացի կնիկների հետ. ահա այն տպաւորութիւնները, որ երբէք մոռանալ չեմ կարող: Մտնում ես, դիցուք թէ, մի հարուստ վաճառականի տունը, աղան տանը չէ, քեզ ընդունում է կինը, երբ իմանում է, որ գործով ես եկել, եւ մանաւանդ շատ անգամ քեզ տեսել էր իրանց տանը, փոքր ինչ ընտանացել էիր եւ դու: Քեզ հրաւիրում են հիւրանոցը. դու նստում ես առանց տանտիկնոջ կողմից քեզ տեղ ցոյց տալու, իսկ նա ոտքի վրայ կանգնած է մնում: Պէտք է դու մի քանի անգամ ասես, խնդրես նրան, որ նստէ: Նա որոշում է միշտ քեզանից ցած նստել եւ*

հեռու: Եթէ դու չը խօսես, նա ամբողջ ժամերով լուռ կը նստի: Ստիպուած ես զբաղեցնել տիկնոջը: Անկարելի է նրա հետ որ եւ իցէ խօսակցութիւն շարունակել, պէտք է անդադար մի առարկայից թռչել դէպի միւսը: Այսպէսով խօսակցութիւնը կընդունէ հարց-պատասխանի ձեւ: Դու նրան միայն հարցեր կառաջարկես, նա կը տայ երկու բառով մի պատասխան եւ կը լռէ: Խօսել նա չը գիտէ, բառերը միշտ պակասում են նրա մօտ այն ժամանակ, երբ խօսում էր իրան ծանօթ ամենահասարակ մի առարկայի վրա: Նրա լեզուի բառարանը այնքան աղքատ է, որպէս այդ լինում է երեխաների կամ վայրենիների մօտ: Երբ դու խօսում ես, նա միշտ ցած է նայում. նա իր երեսը չէ բարձրացնում եւ ինքը խօսելիս: Միշտ մատներով անգիտակցաբար խաղում է զգեստի որ եւ իցէ մասնի հետ: Երբ պատահմամբ նրա աչքերը հանդիպում են քո աչքերին, իսկոյն թշերի վրա յայտնվում է վարդագոյն ներկ: Փորձում ես պատմել նրան ծիծաղելի անեկդոտներ, նա երբեմն ժպտում է, բայց չէ ծիծաղում: Ոչինչ բանով նրան հետաքրքրել չես կարող: Երբ նա մենակ է քեզ հետ, կարծես նեղվում է, եւ միշտ առիթ է որոնում դուրս փախչելու: Մի երրորդ անձն, թող թէ նա փոքրիկ երեխայ լինէր, որպէս պաշտպան, կարող էր հանգստացնել նըրան: Դէպքեր շատ են եղել, որ մի պատուաւոր կին զոհ է գնացել իր ամօթխածութեանը: Նա այնքան համարձակութիւն չէ ունեցել ընդդիմադրելու մի լրբի դօնժուանութեանը: Դժուար կարելի է գտնել մի կին, որ իր զգացմունքը, —թէ սէրը, թէ տխրութիւնը եւ թէ բարկութիւնը,—կարողանար արտայայտել լեզուով: Այսպիսի դէպքերում նա միայն գործ է ածում միավանկ ձայնարկութիւններ: (Դա անասունների զգացմունք յայտնելու ձեւն է): Եւ կամ լուռ արտասուքը լինում է նրա սրտի թարգմանը: Բայց արտասուքը բազմիմաստ նշանակութիւն ունի: Գաւառացի

կինը, որպէս չէ նշանաւորվում իր մտքի եւ խելքի առաձգականութեամբ, այնպէս էլ նա զուրկ է մարմնի դիւրաթեքութեամբ, անդամների համարձակութեամբ: Նա շարժվում է ամբողջ մարմնով, ինչպէս մի արձան: Եւ արձանի նման սառն ու անարիւն է նա:

Գաւառներում չէք տեսնի, որ կինը տղամարդի մօտ երգէր, կամ նրա հետ պար բռնէր: „Եալլիի“ սովորութիւնը պահվել է մի քանի տեղերում միայն, առաւելապէս գիւղերում: Իսկ այն գաւառական քաղաքներում, որպէս են Նուխին, Բագուն եւ Շամախին, ուր հայ կինը դեռ թուրք կնոջ հագուստ ունի, նա սեփականացրել է իրան բոլոր հարեմական սովորութիւնները: Կնիկները, որ պար են գալիս միայն հարսանիքների մէջ, առանձին հաւաքվում են մի սենեակում, լուսամուտների վարագոյրները իջեցնում են, իրանց մօտ են կանչում „սազանդարներին“, ածել են տալիս, եւ պար են գալիս: Ոչ մի տղամարդի աչք նրանց վրա նայել չէ կարող: Իսկ հին ժամանակներում, որպէս պատմում են, ածողներին եւս իրանց մօտ չէին թողնում, որովհետեւ տղամարդիկ էին, այլ նրանց կանգնեցնում էին դահլիճի մի առանձին մասնում, որ բաժանված էր պարահանդէսի տեղից վարագոյրով. կնիկները միայն նուագարանի ձայնն էին լսում, բայց ածողներին չէին տեսնում: Դա կատարեալ մահմետական սովորութիւն է:

Տարիների ընթացքի հետ, գաւառական կինը, երբ հընանում է, երբ կորցնում է իր կանացութիւնը, այն ժամանակ ստանում է մի տեսակ ա ռ ն ա կ ա ն ու թ ի ւ ն,— այն ժամանակ միայն մարդ է դառնում եւ խառնվում է մարդկային հասարակութեան մէջ: Նրան այդ հասակում կարելի է տեսնել, նրա հետ կարելի է խօսել: Նա այլ եւս կին չէ, այլ նրան կոչում է ամենի „մայրիկը“: Եւ այսպէս, կինը այն ժամանակ միայն մտնում է հասարակա-

կան դերի մէջ, երբ պառավում է, ասել է թէ, երբ կրկին երեխայանում է: Կեանքի երկու ծայրերում—տղայութեան եւ ծերութեան հասակում—նա մատչելի է լինում. երկուսն էլ շատ նման են մէկ մէկու: Գաւառացի կնոջ ծերութիւնը ինչպէս առհասարակ նահապետական ընտանիքների մէջ, պատուաւոր է լինում: Նրա ձեռքը համբուրվում է, եւ ամեն ոք դիմում է նրանից օրհնութիւն առնելու: Որդիները լսում են նրա խրատները, իսկ հարսները աւելի հպատակում են նրա հեղինակութեանը: Նրա մահը անկեղծ ցաւ է պատճառում ազգականներին, իսկ թաղումը կատարվում է հանդէսով:



## Ի.

Վերջացնում եմ իմ հետազօտութիւնը մի քանի ընդհանուր նկատողութիւններով։ Ես սկսեցի գիւղացի կնոջից եւ ապա անցայ դէպի քաղաքացի կինը, նկարեցի նրա տիպերը գաւառներում ընդհանրապէս, իսկ Թիֆլիսում մասնաւորապէս։ Զանց չարեցի նաեւ պատկերացնել կինը ժողովրդի խւրաքանչիւր դասակարգի մէջ առանձին կերպով։ Յիշեալ հետազօտութեան մէջ, եթէ հայ կնոջը նմանացնենք մի ծառի, նա այսպիսի կերպարանք կստանայ։ —Հողը արգաւանդ է, ծառի արմատը առողջ է, բունը՝ նոյնպէս, բունից բաժանված ճղները դարձեալ պահպանել են իրանց թարմութիւնը, իսկ ծառի վերին մասի ոստերը —նրա բարձր կատարը սկսել է չորանալ, տերեւները դեղնել են եւ մասամբ թափվել են, այնտեղ կենդանութիւնը վերջացել է։ Դա մի հակաբնական երեւոյթ է։ Ծառի հիւանդութիւնը սկսվել է գլխից։ Եւ գուցէ յատուկ է մեր ժողովրդին միայն, որպէս արդարացնում է դրան հայկական առածը, թէ „ձուկը գլխից կը հոտի“։ Պարզ խօսենք։

Կինը ժողովրդի ստոր դասի մէջ (որի ներկայացուցիչն է մեզանում գիւղացին) ցոյց է տալիս կենդանութիւն. նա թէեւ ռամիկ է, տգէտ է, նախապաշարմունքներով լի է, բայց աւելի աշխատասէր է, աւելի գործունեայ է, եւ

պահպանել է իր բարոյական մաքրութիւնը:—Դա ծառի արմատն է: Կինը, ժողովրդի միջին դասում, փակվում է տան չորս պատերի մէջ եւ իր գործունէութիւնը սահմանափակում է միայն տնային „օջախի“ շուրջը. բարոյականութիւնը այստեղ եւս գտանվում է իր սրբութեան մէջ, բայց զարգացման մակերեւոյթը չէ բարձրանում:—Դա ծառի բունն է: Կինը ժողովրդի բարձր դասի մէջ, գաւառներում, շատ չէ տարբերվում միջին դասից, եւ գրեթէ մի եւ նոյն յատկութիւններն է կրում. բարոյականութիւնը այստեղ եւս պահպանվում է կնոջ ընտանեկութեան մէջ:—Դա ծառի ճիւղն է: Իսկ Թիֆլիսում, ժողովրդի բարձր դասակարգի մէջ, արդէն սկսվում է կնոջ բարոյական չքաւորութիւնը: Ապականութիւնը տիրում է այնտեղ, եւ կինը գտանվում է իր զօսացած դրութեան մէջ:—Դա ծառի կատարն է:

Նկատելի է մի ուրիշ երեւոյթ: Կինը, սկսեալ ժողովրդի ստոր դասակարգից, որքան աստիճանաբար բարձրանում է, որքան նա ծանօթանում է աշխարհի հետ եւ որքան նա մօտենում է գիտութեան լոյսին, այնքան աւելի անպիտանվում է, եւ այնքան աւելի սեփականացնում է իրան այնպիսի յատկութիւններ, որ բարոյական չեն: Թողեալ այդ, կինը ժողովրդի ստոր եւ միջին դասերի մէջ պահպանել է իր ցեղական առանձնութիւնները, հաւատարիմ է մնացել իր ազգային անհատականութեանը, խօսում է մայրենի լեզուով, յարգում է վաղեմի աւանդութիւնները, աւելի մօտ է եկեղեցուն, եւ չէ հեռացել այն սովորութիւններից, որով ապրել են նրա մայրերը: Որի ընդհակառակն, կինը բարձր դասի մէջ (բացի գաւառներից) արդէն սկսել է օտարանալ, չէ խօսում մայրենի լեզուով, հեռանում է եկեղեցուց, եւ զզուանքով է նայում ազգային աւանդութիւնների վրա: Այսպիսի տխուր երեւոյթները տեսնելուց յետոյ ի՞նչ անենք. արդեօք կրթութիւնը վնասակա՞ր էր, թէ կինը իր մէջ հիմք, ամրութիւն

չունէր, եւ կրթութեան լոյսը ու ջերմութիւնը նրան մօտեցրածին պէս, նա լուծվեցաւ, իր բաղադրութիւնը փոխեց: Ոչ այն եւ ոչ այս, կասեմ՝ ես. պատճառները պէտք է ուրիշ բանի մէջ որոնել . . .

Դրութիւնը բոլորովին յուսահատական չէ: Կանացի ա մ բ ո խ ը պահպանել է իր անարատութիւնը, իր կատարեալ մաքրութեան մէջ.—դա, թէեւ անմշակ, բայց չափազանց արգաւանդ հող է, որ հմուտ երկրագործի ձեռքում կարող է հրաշալի պտուղներ ընձայել: Փոյթ չէ, եթէ ամբոխի մակերեւոյթից բարձրացած առանձին մասերը ցոյց են տալիս մի քանի փտութեան նշաններ,—դրանք կամ ժամանակով կըփոխվեն դէպի լաւը եւ կամ կտրվելով, կըհեռանան մարմնի ամբողջութիւնից . . . Բայց մի եւ նոյն ժամանակ ցաւալի է տեսնել, որ ժողովրդի բարձր դասի մէջ, ուր կինը թէ իր դիրքով եւ թէ կրթութեամբ նշանաւոր տեղ էր բռնում, փոխանակ բարոյապէս ներգործելու իրանից ցած աստիճանների վրա դրված իր սեռակից քոյրերի վրա,—նա ինքը դառնում է վատ օրինակ, նա ինքը տարածում է շռայլութիւն եւ բարքերի ապականութիւն:

Այլ եւս ո՞րտեղ է մնում՝ կնոջ բարձր, քաղաքակրթիչ նշանակութիւնը, ո՞ւր է նրա կենագործող հեղինակութիւնը ոչ միայն ընտանեկան նեղ շրջանում, այլ եւ ժամանակակից հասարակութեան վրա: Իմ՝ կարծիքով հայ կինը այդ աստիճանին հասնել չէ կարող, քանի որ նա փակված կը մնայ տան պատերի մէջ: Մինչեւ այսօր, երբ կինը ասիական կեանքով էր ապրում, երբ հայը մահմետականի հպատակ էր, մասամբ նպատակայարմար էր նրան արգելված պահել: Իսկ այժմ՝ կեանքի պայմանները փոխվել են. պէտք է բաց անել կանանցի դռները: Մինչեւ այսօր կնոջ կըրքերը զսպվում էին, նրա բարոյականութիւնը պահպանվում էր փակ կեանքի մէջ մի կողմից, տգիտութեան մէջ՝ միւս կողմից: Կարո՞ղ է արդեօք միշտ շարունակվել այդ դրու-

թիւնը: Այժմ պահպանել կնոջ բարոյականութիւնը կանանոցի բանտարկութեան մէջ նոյն է, որպէս պահել մի գազանի վայրենութիւնը երկաթի վանդակի մէջ: Դուրս հանեցէք նրան վանդակից, իսկոյն գործ կը դնէ իր չարութիւնը: Ես իմ հետազօտութեան մէջ շատ անգամ ցոյց տուեցի, որ կինը հէնց որ իր բանտարկված վիճակից ազատվում է, ընկնում է զանազան ախտերի մէջ: Ուրեմն ի՞նչ պէտք է անել, երբ թէ կանանոցը եւ թէ դրսի աշխարհը միօրինակ վատ են ներգործում նրա վրա,—մէկը, բթամտացնում է, խլում է նրանից ամեն հոգեկան զօրութիւն, իսկ միւսը, անբարոյական է դարձնում: Այդ հարցին ես շատ անգամ եմ պատասխանել իր տեղում, իմ հետազօտութեան մէջ, թէ պէտք է նախ քան կնոջը աշխարհ դուրս հանելը, նրան նա- խ ա պ ա տ ր ա ս տ ե լ աշխարհի համար, եւ դրա մէջ պէտք է լինի կնոջ կրթութեան բուն խորհուրդը: Գուցէ կը նկատեն, թէ կինը աշխարհի համար պատրաստվում է, նրան ուսումնասիրում է, հէնց աշխարհի մէջ ընկնելով: Ես կը պատասխանեմ, այն ժամանակ նա պէտք է անցկացնէ ապականութեան մի պերիօդ եւ ինքը անց կենայ զանազան ախտերի միջից, մինչեւ փորձվի, մինչեւ խելքը գլուխը գայ . . . —Կնոջ ա զ ա տ ո ւ թ ի ւ ն, կնոջ ա ն կ ա խ ո ւ թ ի ւ ն (эманципація), կնոջ հ ա ւ ա ս ա ր ո ւ թ ի ւ ն, դրանք շատ գեղեցիկ բառեր են, բայց դեռ լուսաւոր ազգերի մէջ եւս կենսական անվճիռ հարցերի կարգումն են գտնվում:

Իմ յօդուածի նպատակից դուրս լինելով խօսել յիշեալ խնդրի վրա, կրկին դառնում եմ դէպի հայ կինը: Գուցէ ընթերցողը նկատեց, որ հայ կինը ոչ մի դասակարգի մէջ չէ յայտնվում որպէս հասարակական գործիչ, որպէս ազդող տարր, եւ որպէս քաղաքակրթութեան ղեկավար: Նրա շրջանը ներկայացնում է դատարկ կեանքի ամենատգեղ եւ ամենավատ օրինակները: Դեռ եւս նրա սալօնը չէ հանդիսացնում մի կենտրօն, ուր հաւաքվելով հասարա-

կական գործիչ ուժերը, կինը իր խելքով եւ քաղցրութեամբ ազնուորէր նրանց, ներշնչելով նրանց մէջ եռանդ եւ վստահութիւն: Ես ճանաչում եմ երկու կանայք միայն Թիֆլիսում, որոնց սալօնները ծառայում էին որպէս կենտրոն երիտասարդութեան: Մէկը վախճանուած է (թո՛ղ օրհնեալ լինի նրա յիշատակը), իսկ միւսը դեռ կենդանի է: Առաջինը կարելի է համարել որպէս ջերմ խնամակալուհի մի ուսուցչական խմբի, որոնց ջանքով կենդանացրուց մի օրիորդական դպրոց: Այդ առաջին օրինակն էր, որ կինը հանդէս դուրս եկաւ իբրեւ պաշտպան կրթութեան գործի: Իսկ երկրորդը, որ ինքը պարապել էր գրականութեամբ, որ գիտէր զանազան լեզուներ, աշխատում էր լինել միջին կապ մեր մանուկ ինտելիգենցիայի ցրուած ուժերի մէջ: Բայց ցաւալի է ասել, որ երիտասարդութիւնը այն աստիճան անպատրաստ գտնուեցաւ, որ յարգելի տիկնոջ սալօնը շուտով փակուեցաւ նրանց առջեւ:

Մեր զարգացած կանայքը կարող են ունենալ միայն գրականական սալօններ, բայց մեր գրականութեամբ պարապող երիտասարդութիւնը դեռ եւս այն աստիճան անկիրթ է, որ հազիւ թէ իր պատիւը հասկացող մի տիկին կը ցանկանար նրանց առջեւ բաց անել իր դռները: Կնոջ սալօնի ազդեցութիւնը գործող երիտասարդութեան վրա հազարաւոր օրինակներով ապացուցուած է լուսաւոր ազգերի մէջ: Այնտեղ ոչ միայն ազնուորվում է բանաստեղծը, ոչ միայն կրթվում է վիպասանի ճաշակը, եւ ոչ միայն պարզվում են պուբլիցիստի հայեացքները,—այլ այնտեղից ոգի են առնում երեւելի քաղաքական մարդիկը: Մեզանում գրողները ապրում են առանձնացած խմբերով եւ տեսնվում են աւելի կաֆէներում: Եթէ որ եւ իցէ կին ընդունէր այս եւ այն խմբը, դուրս կը գար խիստ նեղ շրջան, եւ այն դէպքում նրա սալօնը կը ծառայէր որպէս գործիք

*մի կուսակցութեան, որը մեր մէջ կազմվում է ոչ թէ գաղափարի անունով, այլ շահասիրական ինտերեսներով:*

*Կինը իր նուրբ խելքով եւ հրապուրիչ բնաւորութեամբ կարող էր լինել մի լաւ կապ գործող ուժերի մէջ: Նրա սալօնում կարող էին մշակվել եւ հասունանալ ամեն տեսակ հասարակական խնդիրներ: Եւ կինը կարող էր առաջնորդել եւ խրախոյս տալ գործող անձինքներին: Եւ դրանումն է բովանդակվում կնոջ բարձր նշանակութիւնը, երբ նա կը մասնակցէր հասարակական կեանքին, իր ձեռքում որպէս գործիք վարելով տղամարդին: Եւ ոչ միայն ժողովրդի բարձր դասի մէջ, այլ իջնելով դէպի ցած, նրա բոլոր ծալքերում կինը կարող էր յայտնվել որպէս ազդող ոգի, որպէս ներգործող ուժ, թէ խոշոր եւ թէ մանր բաների մէջ:*

*—Ահա դրանումն է նրա մեծ հասարակական կոչումը:*



Մտադրված լինելով նկարել մի փոքր ի շատէ ամբողջ պատկեր մեր ժողովրդի կեանքից, ես հարկաւոր եմ համարում „Հայ կինը“ յօդուածից յետոյ հետազօտել հայ երիտասարդութիւնը։ Եթէ ընդունում ենք, թէ երիտասարդութիւնը է այն թարմ ոյժը,—այն մանուկ եւ աճող զօրութիւնը, որից կախված է ժողովրդի յառաջադիմութիւնը եւ հետեւապէս նրա ապագան,—պէտք է լաւ ուսումնասիրենք այդ տարրը։ Իմ հետազօտութեան մէջ ես հետեւելու եմ մի եւ նոյն եղանակին, որպէս էր „Հայ կինը“, այսինքն, անցնելով մասնաւորից դէպի ընդհանուրը, եւ գիւղական ազգաբնակութիւնից բարձրանալով դէպի քաղաքացիները, ես կաշխատեմ ներկայացնել մեր երիտասարդութիւնը ժողովրդի ամեն մի դասակարգի մէջ առանձնապէս։ Ես պիտի վեր առնեմ Ռուսաստանի, եւ գլխաւորապէս Կովկասի հայ երիտասարդութիւնը։

## Ա.

### Գիւղական երիտասարդութիւն

Սկսում եմ ծնունդից:

Գիւղացի ծնողները միշտ ուրախութեամբ են հանդիպում տղայ մանուկի աշխարհ գալուն. ծնվում է նոր ուժ, ընտանիքի մէջ աւելանում են նոր աշխատող ձեռքեր: Եթէ հայրը տանը չէր, եթէ նա գործում էր դաշտումը, բարեկամները վազում են նրա մօտ, „աւետիք“ են տանում, եւ ականջներիցը բռնելով, „մուշտուլուղ“ * են պահանջում: Տէրտէրը իր մաշտոցով իսկոյն դիմում է մօր մօտ, օրհնում է նրան եւ նորածնին, եւ „փարատում է տունը: Պառաւ կնիկները դնում են մօր անկողնի մօտ մի սուր կամ պողվատի կտորներ, որ չար ոգիները չը վնասէին նրան: Կրօնը եւ սնահաւատութիւնը միացած, գործ են դընում իրանց բոլոր զօրութիւնը, որ պահպանվի նոր սկըսվող կեանքը:

Երբ մայրը երկար ժամանակ տղայ զաւակ չէ բերում, դա համարվում է Աստուծոյ մի առանձին պատիժը. ծնողները դիմում են սուրբերի բարեխօսութեանը, իսկ երբ

---

* Իսկապէս միւժդալուղ է, որ նշանակում է այն ընծան, որ տալիս են աւետիք կամ բարի խաբար բերողներին:

այդ էլ չէ օգնում, դիմում են կախարդներին: Գիւղերում շատ անգամ կարելի է տեսնել տղաներ չը կտրված երկար մազերով, որ աղջիկների նման հիւսած գիսակներ ունէին. դրանք ուխտեալ, կամ այս եւ այն տաճարին նըւիրված մանուկներ են, որովհետեւ աշխարհ էին եկել սուրբերի շնորհիւ: Ամեն մի սրբից շնորհված մանուկը համարվում է նրա „ղուլը“ (ծորտ) եւ կրում է նոյն սուրբի անունը: Բայց պէտք էր ծ ո ր տ ի ն թափել իր ծորտութիւնից, եւ այս մտքով նուիրված մանուկին մինչեւ եօթ տարի ուխտ են տանում քարերար սրբի տաճարը նրա տօնախմբութեան օրում, եւ ամեն անգամ տղայի փոխարէն զոհում են մի ոչխար: Երբ տարիների խորհրդաւոր թիւը լրանում է, մանուկի մազերը կտրում են: Տղաների տաճարին ընծայումը յայտնի է մեր պատմութեան մէջ նրա միֆական ժամանակներից, երբ Անուշաւանը նուիրվեցաւ Արմաւիրի սօսիներին:

Երբ նորածինը տկար էր երեւում, նրան եկեղեցի չեն տանում մկրտելու համար, այլ այդ խորհուրդը կատարում են տանը օջախի (թոնրի) մօտ, խմոր հունցելու տաշտի մէջ, եւ մկրտութեան ջրով սրսկում են ամբողջ տունը: Նրա վզից քաշ են տալիս մի փոքրիկ խաչ, իսկ գդակի վրա շատ անգամ կարելի է տեսնել կարված արծաթեայ մ ա հ ի կ (կիսալուսին), որ ազատ էր պահում նրա անձը չար աչքից եւ չար ոգիներից: Ցուլունքներով զարդարած ք ա զ ք ա ն ղ ն ե ր ը (քազկակալ), որ կապում են տղայի թեւքերի վրա, նոյնպէս կախարդական նշանակութիւն ունեն: Գնտերը տղայ մանուկների համար մի եւ նոյն զարդըն են համարվում, որպէս աղջիկների համար: Բայց գընտեր արեւելքում կրում են կնիկները եւ ստրուկները միայն,—երկու արարածներ, որոնց վիճակը շատ չէ տարբերվում միմեանցից . . .

Երեխան փոքր հասակից սկսում է տեսնել նիւթա-

կան եւ շօշափելի առարկաների մէջ աներեւոյթ զօրութեան ներկայութիւնը, մինչեւ արծաթեայ մահիկից նա հասնում է Ամենաբարձրեալի գաղափարին: Նրա կեանքի մէջ կատարվում է այն, ինչ որ կատարվում է ամբողջ մարդկութեան կեանքի մէջ,—տղայութեան պերիօդի նիւթապաշտութիւնից անցնել զարգացած պերիօդի ոգեպաշտութեանը:

Երբ մանուկը դառնում է 3—4 տարեկան, երբ սկըսում է խօսել, մտածել, վազվզել եւ փոքրիկ չարութիւններ գործել, այն ժամանակից սկսվում է նրա ընտանեկան դաստիարակութիւնը: Երկու գլխաւոր ուժեր ներգործում են մանուկին չափի եւ պատշաճի մէջ պահելու համար, մէկը՝ ֆիզիքական կոպիտ ուժը՝—ծ ե ծ ը, իսկ միւսը՝ բարոյական ուժը, որ արտայայտվում է ե ր կ ի ւ ղ ի եւ խ ո ս տ մ ա ն մէջ: Պատիժ եւ խոստում—ահա երկու գործիչներ, որ իշխում են մարդու բարոյականութեան վրա, սկսեալ երեխայութիւնից մինչեւ նրա մահը: Ծեծել, պատժել երեխային, որ չարութիւն չը գործէ, կամ խոստանալ նրան զանազան հրապուրիչ բաներ, որ իրան կարգին պահէ,—դրանք գլխաւոր միջոցներ են հօգատար ծնողների կողմից երեխային խրատելու համար: Բայց մի եւ նոյն միջոցները գործ են դրվում եւ ոգիների անուններով: Երկիւղ տալ երեխային դեւի, չար սատանայի ալքերի, խըլվըլիկի, մարդագայլի, դէրվիշի եւ այլ սարսափելի անուններով, եւ մի եւ նոյն ժամանակ հրապուրել նրան Աստուծոյ, հրեշտակների եւ սուրբերի խոստումներով,—այդ բոլորը աւելի նուրբ միջոցներ են երեխային կրթելու համար: Այս տպաւորութիւնները մնում են մանուկի մէջ մինչեւ նա իր հասակը առնում է, ծերանում է, եւ նրա հետ գերեզման են մտնում: Երեխան սովորում է վատ բան չը գործել ոչ թէ նրա համար, որ վատը վատ է, այլ նրա համար, որ ծնողները կը պատժեն նրան՝ կամ ծեծելով,

եւ կամ զրկելով մի լաւ բանից: Նրա ամբողջ կեանքում այդ մտքերը իշխում են նրա վրայ: Նա սովորում է չար բան չը գործել, ոչ թէ նրա համար, որ իբրեւ մարդ եւ իբրեւ մարդկային ընկերութեան անդամ պարտաւոր էր բարի լինել, այլ վախենում է իշխանութիւնից՝—երկնքի եւ աշխարհի իշխանութիւնից,—վախենում է այն տանջանքներից, որ սպառնում են այդ երկու իշխանութիւնները, եւ վախենում է զրկվել այն խոստումներից, որ արել էին նրան:

Դաստիարակութեան այդ բթացնող սպանիչ եղանակը այն հետեւանքն է ունենում, որ ոչ միայն խլում է մանուկից նրա ինքնուրոյն, ազատ զարգացումը, եւ ոչ միայն բարոյապէս մեռցնում է նրան, այլ նա իր ամբողջ կեանքում մնում է երկչոտ, թուլասիրտ, խոնարհվող եւ գլուխը ծռող ամեն մի զօրութեան առջեւ: Նա դառնում է մի բարոյական մեքենայ, որ բարի է նրա համար միայն որ վախենում է չը պատժվել չար լինելուց: Իսկ երբ այդ վախը, այդ երկիւղը անհետանում են նրա սրտից, էլ ոչինչ չէ մնում նրան օրինաւորութեան մէջ պահելու համար, եւ նա դառնում է ամենասարսափելի անբարոյական:

Ինչ որ աւելի ցաւալին է, դա է գիւղական մանուկների սաստիկ մահացութիւնը: Թէեւ այդ մասին չունենք վիճակագրական տեղեկութիւններ, բայց կարելի է ասել, որ նրանց մեծ մասը մեռնում են մօտաւորապէս դեռ հինգ տարեկանին չը հասած, այնուհետեւ, որպէս ինքը գիւղացին ասում է՝ „երեխան շալակը պատռում է“, այսինքն աճում է, մեծանում է, եւ կարող է դիմանալ կեանքի խիստ պայմաններին: Երեխաների բազմաթիւ մահացութեան գլխաւոր պատճառը պէտք է որոնել նրանց վատ պահպանութեան մէջ: Մեր գիւղացիները աւելի հոգ են տանում իրանց փոքրիկ անասուններին, քան թէ որդիներին: Անասունների վիճակը իրանցից կախումն ունի, բայց

որդիների հոգսը թողնում են Աստուծոյ վրա: Որպէս զի կարողանամ մի փոքրիկ գաղափար տալ, թէ որպիսի շրջանի եւ պայմանների մէջ է սկսվում մանուկի կեանքը, հարկաւոր եմ համարում մի քանի մանրամասնութիւնների մէջ մտնել: Երեւակայեցէք ձեզ մի խոնաւ եւ գետնափոր խրճիթ, առանց օդի եւ առանց լոյսի, որ ինքն ըստ ինքեան սպանիչ ազդեցութիւն ունի երեխայի դեռ տկար կազմուածքի վրա, որը տակաւին չէր սովոած կեցութեան վնասակար խառնութիւններին: Մահճակալ կոչված կարասին բոլորովին անծանօթ բան է այս տեսակ խրճիթներում. մի տախտակի կտոր անգամ չէք տեսնի, որ ձգած լինէր յատակի վրա, երեխան պառկում է սառն, խոնաւ եւ մերկ գետնի վրա փաթաթված ցնցոտիների մէջ: Զը սովոած մարդը կարող էր խեղդուելու աստիճանի հասնել: Աւելացրէք դրանց վրա վատ կերակրելը. սովորութիւն չէ երեխային սեղան նստացնել, նա ուտում է ոտքի վրա ինչ որ ձեռքն ընկնում է: Աւելացրէք վատ հագուստը. տարվայ բոլոր եղանակներում կարելի է տեսնել նրան մի եւ նոյն հագուստով, որ հազիւ ծածկում է մարմինը: Այդ լինում է ոչ թէ աղքատների մէջ միայն, այլ հարուստներն անգամ խիստ փոքր հոգ են տանում որդիներին լաւ կերակրելու եւ եղանակների համեմատ հագցնելու մասին: Իսկ ինչ որ վերաբերում է կեղտոտութեանը, այդ արդէն չափն անցնում է: Դրա մէջ մեղաւոր են գլխաւորապէս մայրերը, որ իրանք էլ, քիչ է պատահում, որ ամեն առաւօտ իրանց ձեռները եւ երեսները լուանային: Բայց երեխան ամբողջ օրը նրանց աչքի առջեւ թաւալվում է ցեխերի մէջ, „վնաս չունի, թող ջանը պնդանայ“, ասում են, եւ ուշադրութիւն չեն դարձնում: Բայց կայ եւ մի գլխաւոր պատճառ, որ աւելի մեծ դեր է խաղում գիւղական երեխաների մահացութեան մէջ: Մեզանում ոչ մի գիւղ չէք գտնի, որ բժիշկ ունենար: Վիճակային բժիշկները այցե-

լութիւն են գործում մի գիւղ այն ժամանակ միայն, երբ պատահել էր մի սպանութիւն եւ պէտք էր պաշտօնական քննութիւն անել: Նրանք հիւանդների հետ գործ չունեն: Պատահում է, որ գիւղացու երեխան հիւանդանում է. ծընողները նրա վրա ուշադրութիւն չեն դարձնում եւ անմիջական օգնութեան չեն դիմում, քանի որ նա ոտքի վրա էր. բայց երբ ուժերը թուլացան, երբ պառկեց, այն ժամանակ միայն համարում են նրան հիւանդ: Սովորական միջոցները, որ գործ են դնում բժշկութեան մէջ, են փալչիների եւ գրբացների կախարդութիւնները, կամ մի քանի տնային դարմաններ, որ անխտիր ամեն հիւանդութեան համար բանեցնում են,—այժմ հիւանդի բախտիցն էր կախված, թէ որքան գործ դրած հնարները կօգնէին նրան: Ահա այսպիսի փորձութիւնների միջից է անցնում գիւղացի մանուկը. բայց երբ մի անգամ ազատվեցաւ նա, երբ տարիքը առեց, այնուհետեւ նրա կազմուածքը կարողանում է պատերազմել սարսափելի խստութիւնների դէմ:

Ընտանիքի ճնշումը ամենափոքր հասակից պատրաստում է մանուկին լինել ճկուն, ծալվող եւ համբերող: Ամօթխածութիւնը, միամտութիւնը եւ մինչեւ խուլումունջութեան հասցրած լռութիւնը համարվում են նրա մէջ պարկեշտութեան նշաններ: Նա դառնում է դանդաղկոտ, աշխոյժը եւ եռանդը խեղդվում են նրա մէջ, եւ դեռ չը մանկացած, ծերանում է նա: Չէք տեսնի գիւղացի մանուկի մէջ այն մշտազուարճ կենդանութիւնը, այն ուրախ, մշտածիծաղ դէմքը, որ յատուկ է նրա հասակին. նա միշտ տըխուր է եւ միշտ, կարծես, մի բանի վրա մտածում է: Դանդաղկոտութիւնը տիրում է նրա ամբողջ գոյութեան վրա. նրա քայլերի, նրա ամեն մի շարժուածքի մէջ չէ նկատվում ոչ մի համարձակութիւն, եւ նա զուրկ է մնում այն սատանայական ճարպիկ չարաճճութիւնից, որ տալիս է մանուկի բնաւորութեանը աւելի կենդանութիւն:

Ոչինչ այնպէս չեն արգելում երեխային, որպէս խաղը, մինչեւ անգամ ամենահամեստ խաղը: Խաղամոլ երեխան ոչ սակաւ անգամ պատժվում է իր անմեղ զուարճութիւնների համար: Բայց մանկական բնաւորութիւնը երբեմն ելք է գտնում խոտորվելու ծնողների խստութիւնից եւ իր պարապ ժամերը նուիրելու զանազան խաղերի: Ես մէջ կը բերեմ մի քանի տեսակ խաղերի նկարագիրը ցոյց տալու համար, թէ այդ խաղերը նոր հնարված չեն, այլ մնացել են Հայերի հոյակապ անցեալից, երբ մեր նախնիքը մի առանձին հոգ էին տանում իրանց զաւակներին կըրթելու մարմնամարզական վարժութիւնների մէջ: Մուշտէկուիւը այն ցպատմական խաղերից մէկն է, երբ զէնքերը տակաւին կատարելագործված չէին, եւ մարդը ստիպված էր իր զօրաւոր բազուկները կրթելու, որ հարկաւորած ժամանակում գործ դնէր իր թշնամու դէմ: Երեխաները երկու խմբերի բաժանված, յարձակվում են միմեանց դէմ, եւ մուշտիների (բռունցքների) հարուածներով աշխատում են յետ մղել հակառակորդին, եւ երբ մի խումբը նահանջում էր միւսին իր բռնած դիրքից, յաղթութիւնը տարած էր համարում:

Գօտէլախտին նոյն պատերազմական բնաւորութիւնն ունի, որպէս մուշտէկուիւը, այն զանազանութեամբ միայն որ մանուկները մուշտիների փոխարէն գործ են դնում իրանց գօտիներից ոլորած լախերը:

Արթուրման (ստնուլ) եւ վազը (վազ տալը) այն մարզութիւնների տեսակներիցն են, որոնց մէջ մի ժամանակ վարժվում էին եւ սպարտացոց մանուկները: Արթուրման կատարվում է թռչելով մի որոշեալ բարձրութեան վրայից. մանուկներից մէկը կռացած դիրք է ընդունում եւ բոլոր մնացածները նրա վրայից թռչում են, յետոյ բարձրութիւնը փոքր առ փոքր աւելանում է, այսինքն՝ կռացած մանուկը հետզհետէ ուղիղ դիրք բռնելով, վերջը

բոլորովին կանգնած ձեւ է տալիս իրան. այն ժամանակ թռչում են նրա գլխի վրա: Բայց խաղի գլխաւոր պայմանը նրա մէջն է, որ թռչելու միջոցին թռչողը չը պիտի դիպչի այն առարկային, որի վրայից թռչում է:

Վազը կամ վազ տալը այն ձեւով, որ կատարվում է մեր մանուկների մէջ, մի դժուարին վարժութիւն է թոքերը զարգացնելու եւ ոտներին արագաշարժութիւն տալու համար: Որոշվում է մի ասպարէզ, որի ծայրին դրած էր մի նշան, եւ մինչեւ նշանակած կէտը ասպարէզի բոլոր տարածութիւնը, սաստիկ վազելով, պիտի անցնէ մրցողը այն պայմանով, որ ամենեւին շունչ չը պիտի առնէ. եւ որպէս զի միւսներին յայտնի լինի, թէ նա շունչ չէ առնում, պէտք է վազելու միջոցին անընդհատ կերպով արձակէ մի տեսակ ձայն: Մականախաղը (հօլ) խաղում էին մեր նախարարների որդիքն անգամ. երեխաները երկու խումբ բաժանված, իւրաքանչիւրը ունի ձեռքին բռնած մի երկայն փայտ (վարոց), որը կեռ ծայր ունի, եւ փայտի կեռ ծայրովը ամեն մէկը աշխատում է յափշտակել իր հակառակորդից նոյնպէս փայտից շինած մի գնդակ, որ ձգած է գետնի վրա, եւ այսպէս, մինը միւսից խլելով, գնդակը քշում են դէպի հակառակ կողմը, մինչեւ հասցնում են նշանակված տեղը: Այս խաղը հին ժամանակներում խաղում էին ձիու վրա նստած, եւ նոյնպէս մականներով, որ նշանակում է կեռ ծայր ունեցող փայտ կամ գաւազան: Գնդախաղի, տեսակները զանազան են, որոնցից նշանաւոր է մազուն*. դա իսկապէս բիլիարդի խաղն է, միայն դեռ իր նահապետական ձեւի մէջ մնացած: Մազուի գընդակները շինված են լինում գունաւոր գրանիտից, եւ ձեռքով գլորում են հարթ գետնի վրա, աշխատելով գնդակ-

* Մազու նշանակում է կլոռը, որ փոքրիկ կնդակի նմանութիւն ունի:

ները միմեանց դիպցնել եւ ձգել գետնի վրա փորած փոքրիկ փոսերի մէջ: Տ ո ւ շ ը (չիլիկաջոխին՝ առաջին փորձն է նետաձգութիւն սովորելու: Փայտից շինված նետեր եւ աղեղներ մինչեւ այսօր գործ են ածում մեր երեխաները: Պ ա ր ս ա ք ա ր ո վ (շուլդուր) նրանք խիստ ճարպիկ կերպով դիպցնում են նպատակին: Ջ ի ր ի դ ը ** դեռ եւս յիշեցնում է հին նիզակախաղը. զարգացած պատանիները այդ խաղը խաղում են ձիու վրա նստած: Մնացած խաղերի մէջ նշանաւոր են՝ ճանը (վէգ) եւ դ ա մ ա ն (շատրուքար), վերջինը շախմատի խաղի նմանութիւն ունի եւ խաղում են աւելի զարգացած տղաները:

Խաղերի տեսակները այնքան զանազան են հայ մանուկների մօտ, որ առանձին ուսումնասիրութեան արժանի են, բայց ես մի փոքրիկ գաղափար տալու համար բաւականանում եմ այդքանով միայն: Պէտք է նկատել, որ, ինչպէս վերեւում յիշեցի, ծնողները սաստիկ արգելում են խաղը, եւ եթէ մանուկները ժամանակ են գտնում խաղալու դա կատարվում է ովպէս կծնտրաբանդա: Գիւղացին այնքան պէտք ունի օգնականի, որ ամենափոքր հասակից սովորեցնում է իր մանուկին աշխատութեան, որ նա գընահատէ ժամանակը եւ հեռու մնայ դատարկութիւնից: Պէտք է օգուտ քաղել փոքրիկ ուժից, եւ աշխատութիւնների ծանրութիւնը համեմատաբար աճում է նրա տարիների հետ: 5—6 տարեկան հասակում նրան սովորեցնում են կատարել տնային թեթեւ ծառայութիւններ. 8—10 տարեկան հասակում նրան կարելի է տեսնել կալի մէջ, նստած կամնասայլի վրա, քշում է եզները: 12 տարեկան հասակում նա արածացնում է հորթերը, գառները, կամ նստած լծան վրա, օգնում է իր հօրը գութանը վարելիս. իսկ 15 տարեկան հասակում նա իր ծերքն է առնում բահը եւ

** Ջ ի ր ի դ կամ ջ ի դ դ այ նշանակում է նիզակ, տէգ, մզրակ:

մանգաղը: Ոչինչ այնքան չէ կարող զարմացնել ժողովրդի ստոր դասի վիճակով հետաքրքրվողներին, որպէս գիւղացի մանուկի աշխատասիրութիւնը: Նա ամբողջ տարին անգործ չէ մնում՛. տարվայ ամեն մի եղանակում՛ նրա հասակի եւ ուժի համեմատ գործեր կան: Տղայութիւնից սնվելով եւ աճելով խիստ պայմանների մէջ, նա հեռու է մընում՛ փափկութիւնից եւ թուլացնող քնքշութիւններից. անձրեւը, կարկուտը, ձիւնը, ամառվայ տօթը, ձմեռվայ ցուրտը մի օրինակ այրում՛ են նրան, թրծում՛ են, մխում՛ են եւ տալիս են նրա կազմուածքին ուժ եւ երկաթի ամրութիւն: Ամեն պայմանները պատրաստում՛ են նրան վշտալի կեանքին դիմանալու համար:

Փիզիքական կրթութեան հետ լծորդաբար տարվում՛ է մանուկի եւ բարոյական կրթութիւնը, որ պայմանաւորվում՛ է գլխաւորապէս խոնարհութեան, համբերութեան եւ միամտութեան մէջ: Ամենափոքր հասակից նա գիտէ, թէ պէտք էր տէրտէրի աջը համբուրել, հասակաւոր մարդերին գլուխ տալ եւ պառաւ տատին ու ծերունի պապին չը բարկացնել: Նա գիտէ, թէ տանը հիւր եկած ժամանակ պէտք էր սեղանի մօտ սպասաւորել, կամ՛ ձեռքերը սրտին դրած եւ կանգնած սպասել հօր հրամաններին, մինչեւ հիւրերը ուտէին, խմէին, յետոյ նրանց ձեռքերի վրա պէտք էր ջուր ածել, որ նրանք լուացվէին եւ այլն: Ընտանիքի մէջ ամենի առաջեւ խոնարհվում՛ է նա բացի իր քոյրերից: Ծնողների գործ դրած խստութիւնը աղջիկ զաւակի եւ տղայ մանուկի մէջ՝ շատ վաղ զգալ է տալիս վերջինին իր գերազանցութիւնը. նա սկսում՛ է բռնանալ քրոջ վրա եւ երբեմն ծեծել նրան: Ծեծելով քրոջը, նա սովորում՛ է ծեծել իր կնոջը: Տղամարդի բռնակալութիւնը տկար սեռի վրա սկսվում՛ է երեխայութիւնից:

Գիւղացի մանուկը խիստ փոքր հասակից անձնատուր է լինում՛ ցնորամտութեան: Նախապաշարմունքներով եւ սը-

նահապետութեամբ լի ընտանիքը ազդում է նրա մէջ Ֆանտազիայի սաստիկ զարգանալուն։ Ամէն մի հասարակ երեւոյթ բացատրվում է նրան առասպելական առեղծուածներով։ Երազը, կայծակը, ամպի որոտը, ցոլացող աստղը, արեգակի եւ լուսնի խաւարումը, թալթառը, եւ մինչեւ անգամ կատուի մռչունը, բուի կռնչիւնը նրա համար ունեն խորհրդաւոր եւ գերբնական նշանակութիւններ։ Պառաւ մամիկի հրաշալի հեքեաթները վառում են, բորբոքում են նրա երեւակայութիւնը շարժական դրախտների, կաթնի աղբիւրների, խօսող տունկերի, եօթն գլխանի դիվերի*, վիշապների, հուրիների եւ փէրիների պատմութիւններով։ Ես բախտ եմ ունեցել երկու տարի մի մեծ գիւղում վարժապետ լինելու. շարադրութեան առաջին դասերը ես տալիս էի, որ աշակերտները եւ աշակերտուհիները գրէին իրանց լսած առածները եւ առակները. երբ մի փոքր զարգանում էին, ես գրել էի տալիս իրանց գիտցած հեքեաթները։ Ո՛րքան շատ հեքեաթներ իմանում էին նրանք։ Ամենահմուտ վիպասանը չէ կարող այնպէս պարզ, այնպէս բնական խօսքերով շարադրել մի հեքեաթ, որպէս գրում է մանուկը. նրա տղայ հասակին խիստ յատուկ է մարդկութեան տղայամտութեան ստեղծագործութիւնը։

Եւ զարմանալի չէ տեսնել, որ բացի կլիմայական պայմաններից, կան եւ ուրիշ շարժառիթներ, որոնք նպաստում են մանուկի շուտ հասունութեանը։ 15—16 տարեկան հասակում նրա մէջ արդէն զարթնում են կրքերը. սիրուն աղջիկ տեսնելիս նրա սիրտը բաբախում է, եւ սկսում է իր ընկերների հետ գաղտնի խօսել կնիկների վրայ։ Բայց

* Դ ի վ բառը պէտք չէ շփոթել մեր դեւի հետ, որ ընդունված է չար ոգու նշանակութեամբ. դիվը հեքեաթների մէջ պէտք է հասկանալ այն մտքով, ինչ նշանակութիւն որ ունի այս բառը պարսից լեզւում. այսինքն՝ հսկայ, փահլէվան։

ընտանեկան խիստ օրէնքները, գիւղացի կնիկների անմատ-չելութիւնը դեռ եւս երկար պահում են նրա նոր բողբոջ-վող սիրտը մանկական անմեղ ողջախոհութեան մէջ:

Կեանքը ոչ բոլորովին զուրկ է մեր գիւղացի մանուկ-ների համար հոգեկան եւ մտաւոր սնունդից, որ մատակա-րարում է նրան ժողովրդական բանաստեղծութիւնը, որ դեռ եւս պահպանված է իր մաքուր, լուսապայծառ պարզութեան մէջ: Գողթանի հին երգիչներին, հայոց հին ռափսոդնե-րին, այժմ փոխարինում են ա շ ղ ն ե ր ը: Նա իր սազով շրջում է գիւղից գիւղ, երգում է եւ վէպեր է պատմում: Գիւղերում շատ անգամ կարելի է տեսնել աշղին, ամառ-նային լուսնկայ գիշերների պահուն, հրապարակի վրա, ար-ձակ, աստղալից երկնքի տակ, սազը ձեռին, խորին ոգե-ւորութեան մէջ երգում է, ածում է եւ պատմում է մի վէպ լի հերոսական եւ սիրահարական արկածներով: Գիւ-ղացիները նրա շուրջը հաւաքված, նստել են մերկ գետնի վրա եւ ուշադրութեամբ լսում են սիրելի երգչին:

Գիւղական կեանքում շատ բաներ նպաստում են մա-նուկներին, որ նրանք չը լինէին անզգայ, անսիրտ, դա-տարկ եւ զուրկ մարդկային ազնիւ կրքերից: Ամեն գիւղե-րում գտնվում են մի տեսակ տեղեր, որ ուրիշ խօսքով կարելի է կոչել գիւղական կլուբներ, իսկ գիւղացիները ա-նուանում են օ ղ ա յ *: Օղան ախոռատան մի բաժանված մասն է, որ ունի իր մէջ վառարան, յատակը ծածկված է յարդով, որի վրա փռած են հասիրներ (փսիաթ) եւ որը ձմեռը խիստ տաք է լինում անասունների շնչառութիւնից եւ խիստ յարմար ժողովարան է գիւղացիների համար: Ա-մենասմաքուր օղայ ունենում են գիւղի տանուտէրը կամ փոքր ի շատէ կարողութիւն ունեցող գիւղացիները: Բայց

---

* Օ ղ ա յ՝ ռամկօրէն օթաղ կամ գրոց օթեակ բառերի նշանակու-թիւնն ունի:

գլխաւոր կենտրոն լինում է տանուտէրի օդան. այստեղ հա-
ւաքվում են գիւղացիները եւ անց են կացնում ձմեռվայ
երկար գիշերները: Այստեղ լինում են ամեն տեսակ խօ-
սակցութիւններ, դատում են իրանց հասարակական գոր-
ծերի վրա, պատմում են իրանց կեանքում պատահած զա-
նազան արկածներ, կատակներ եւ սրախօսութիւններ են ա-
նում, առակներ եւ առածներ են ասում, եւ երբեմն գիւ-
ղական տէրտէրը կամ տիրացուն իրանց խելքին զօռ են
տալիս եւ սկսում են խօսել սրբերի, հրեշտակների, սա-
տանաների, դժոխքի, արքայութեան, վերջին դատաստա-
նի մասին այնպիսի առասպելական աւանդութիւններ, որ
ոչ մէկ գրքի մէջ չէք գտնի: Մանուկ սերունդը թէեւ չէ
մասնակցում ծերունիների զրոյցներին, բայց հաւաքված
նրանց շուրջը, լսում է նրանց իմաստալից խօսակցութիւ-
նները:

Օդաները աւելի կեանք են առնում, երբ այնտեղ յայ-
տնվում են աշուղները: Այդ կոյր հոմերոսները, որ մի ժա-
մանակ իրանց երգերով զմայլեցնում էին մեր թագաւոր-
ների եւ նախարարների պալատները, այժմ զուարճացնում
են գիւղացու ձմեռնային օդան: Աշուղը գիտէ հարիւրաւոր
բերանացի վէպեր, որոնք դեռ ոչ թղթի վրա են գրվել եւ
ոչ տպագրութեան մամուլի տակն են ճնշվել: Նրա վէպե-
րը երգախառն են լինում, եւ որպէս արեւելեան բորբոք-
ված ֆանտազիայի ծնունդ, բովանդակում են իրանց մէջ
սէր եւ հրաշալի արկածներ: Նա միանգամ սկսած վէպը
հազիւ կարողանում է վերջացնել մի քանի գիշերվայ մէջ:
Գիւղացի մանուկները գտնում են աշուղի վէպերի մէջ այն
կենսատու աղբիւրը, որ կազդուրում է նրանց զգացմունք-
ները մի սրբազան ջերմութեամբ: Գիւղացի մանուկը այն-
քան անգամ լսել է աշուղի վէպերը, որ մեծ մասը ինքն էլ
գիտէ: Նա գիտէ արկածախնդիր Քօրօղլիի արշաւանքները
գիտէ Քարամի եւ Ասլիի սիրահարութիւնները: Աշղ Ղարի-

քի եւ Շահնամահի վառված սէրը, Լէյլիի եւ Մաջնունի անճնաւորութիւնները, Շահ Սմայիլի քաջագործութիւնները, Փարհադի անբախտ սէրը,—հարիւրաւոր այսպիսի ռոմաններ գիտէ նա: Այժմեան աշղների երգերը մի բերանացի հաւաքածու են իրանցից առաջ եղած երգիչների, եւ ամեն մի երգ կրում է իր վերջում հեղինակի անունը եւ այս պատճառով ամեն մի երգ զանազանվում է իր բնաւորութեամբ. մի մասը բնարերգութիւն (լիրիկա) է, մի մասը փիլիսոփայական եւ ըստ մեծի մասին միստիքական հայեցուածներ է բովանդակում. մի մասը խրատական կամ բարոյագիտական բնաւորութիւն ունի, իսկ սիրահարական, հեգնական, ծաղրական երգերը կրում են իրանց մէջ թէեւ կոշտ, բայց խիստ կենդանի սրամտութիւններ, թէ որպէս կծել եւ կատակել գիտէ արեւելքցին:—Այս բոլորը ազդում են մանուկների սրտի վրա եւ թողնում են նրանց մէջ անջնջելի տպաւորութիւններ: Աշղը աւելի մեծ պաշտօն է կատարում ժողովրդի ստոր դասի կրթութեան, մտաւոր եւ բարոյական ուղղութեան մէջ, քան թէ տէրտէրը, որի չոր ու ցամաք քարոզները միայն սառցնում են, քարացնում են սրտերը:

Զարմանալի է, թէ ո՛րպէսի եռանդով մեր գիւղացիները աշխատում են, որ իրանց զաւակները ուսում ստանային: Մի անբացատրելի զօրութիւն մղում է նրանց դէպի այդ ցանկութիւնը: Մեզ մօտ գիւղ չէք գտնի, որ եկեղեցուն կից մի փոքրիկ դպրոց չունենար, եւ ուր որ այդ չը կար, մանուկները հաւաքվում են գիւղի քահանայի կամ տիրացուի մօտ: Տարվայ երեք եղանակներում,—գարունը, ամառը եւ աշունը,—մանուկները զբաղված են լինում գիւղատնտեսական գործերով, եւ ժամանակ չեն գտնում դպրոց գնալու, իսկ ձմեռը նրանք աւելի ազատ են տնտեսական հոգսերից եւ սկսում են սովորել: Բայց կան այնպիսի գիւղեր, որոնց թիւը սակաւ չէ, որ ունեն կանոնա-

*ւոր դպրոցներ, որոնց մէջ մանուկները սովորում են ամբողջ տարին, բացի ամառվայ երկու տաք ամիսներից: Մեր գիւղացիները, մանաւանդ վերջին տասն տարվայ ընթացքում, այն աստիճան հասկացել են ուսման կարեւորութիւնը, որ ամեն զոհաբերութիւն յանձն են առնում որ որքան կարելի է, իրանց դպրոցները կանոնաւոր վիճակի մէջ դնէին: Շատերը, որոնց նիւթական դրութիւնը ներում է, չեն բաւականանում գիւղական դպրոցներով եւ ուղարկում են իրանց զաւակներին մերձաւոր քաղաքները, կամ Թիֆլիզ, Մօսկվա, Ս. Պետերբուրգ եւ մինչեւ անգամ արտասահման, բարձր, համալսարանական կրթութիւն ստանալու: Եւ մեր գիւղացիներից կարելի է տեսնել բազմաթիւ բժիշկներ, իրաւաբաններ, տնտեսագէտներ, գիտութեան ամեն մէկ ճիւղի մէջ աւարտածներ, եւ մինչեւ անգամ պրօֆէսօրներ, եւ բարձրաստիճան եկեղեցականներ: Առհասարակ խօսելով, պէտք է ասած, որ մեր գիւղացին բոլորովին ազատ է այն նախապաշարմունքից, թէ որդին պէտք է լինէր հօր կեանքի շարունակութիւնը, եւ բնաւ չը պիտի շեղվէր այն ճանապանհից, որով ապրել էին նրա պապերը: Նա, կարծես, բնազդումով զգում է իր վիճակի տաժանութիւնը եւ ցանկանում է որդու համար մի աւելի լաւ վիճակ: Այդ վիճակը նրա կարծիքով կարելի է գտնել միմիայն ուսման եւ կրթութեան մէջ: Վերջին աղքատն անգամ այսպէս է մտածում: Ինձ շատ է պատահել, երբ ցանկացել եմ գիւղացի մանուկներից սպասաւոր վարձել. տեսնում ես, մի հեռու եւ անյայտ գիւղից հայրը բերում է իր որդին, երբ հարցնում ես, թէ որքան պէտք էր վճարել, նա պատասխանում է. „աղայ, ոչինչ չեմ ուզում, թող ձրի ծառայէ, միայն դուք սովորեցրէք որդուս գրել եւ կարդալ:“*

*Խօսելով առհասարակ գիւղական մանուկների կրթութեան վրայ, ես ստիպված եմ փոքր ինչ շեղվել իմ հետազօտութեան նպատակից եւ ցոյց տալ, թէ ինչ են դուրս*

քերում մանուկները գիւղական բազմաթիւ դպրոցներից: Եթէ ընդունում ենք, թէ ուսումը եւ կրթութիւնը պէտք է համապատասխանէ իւրաքանչիւր դասի իրական պահանջներին եւ պէտք է լրացնէ այն, ինչ որ պակաս է նրան,— այս կէտից նայելով մեր գիւղական դպրոցները բոլորովին ապարդիւն եւ մինչեւ անգամ վնասակար կը գտնենք: Գիւղացին զործ ունի հողի եւ անասունների հետ: Արդեօք դպրոցը տալի՞ս է նրա որդուն փոքր ինչ տեղեկութիւն, թէ որպէս պէտք էր խնամել անասուններին, որ նրանք աճէին, բազմանային, եւ ազնուացնէին իրանց ցեղը: Արդեօք դպրոցը ծանօթացնում է նրա որդուն հողի որպիսութեան հետ եւ բոյսերի լաւ մշակելու պայմանների հետ: Դրանցից ոչ մէկը չէ անում դպրոցը: Նա սովորեցնում է մանուկներին գրել, կարդալ, հաշուել, կրօն եւ այլն, որոնց մէջ մեծ պէտք չունի գիւղացու զաւակը: Այքուբենը սոված փորին հաց չէ տալիս: Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ իմ խօսքը կանոնաւոր գիւղատնտեսական դպրոցների մասին չէ, որ շատ ցանկալի էր, եթէ մի խումբ գիւղերի կենտրօնում գոնէ մի հատ գտնվէր,— ես խօսում եմ գիւղատնտեսական բոլորովին մասնաւոր եւ տարրական հմտութիւնների մասին, որ ամենահասարակ վարժապետը կարող էր քաղել զանազան գրքերից եւ հաղորդել իր աշակերտներին: Գուցէ ինձ կը նկատեն, թէ մենք այսպիսի վարժապետներ չունենք: Մենք իսկապէս ոչ մի առարկայի համար պատրաստված գիւղական վրաժապետներ չունենք. նրանք իրանք իրանց պատրաստում են, իսկ եթէ կը պահանջվի նրանցից, կարող են սովորել եւ շատ բան գիւղատընտեսութեան մասին: Այն եւս պէտք է ի նկատի ունենալ, որ մեր գիւղերում վճարում են վարժապետին աւելի շատ, քան թէ մի վարժապետ ստանում է, օրինակ, Գերմանիայի մի գիւղում: Ուրեմն կարելի է լաւ ընտրութիւն անել ուսուցիչների մէջ:

*Այլ է, եթէ գիւղական դպրոցները այն աստիճան զարգացնէին մանուկներին, որ նրանք աւարտելուց յետոյ կարողանային ամեն գրքեր կարդալ, հասկանալ. կարողանային ինքնակրթութեամբ իրանց տնտեսութեան վերաբերութեամբ հմտութիւններ ստանալ: Այդ անել անկարող են նրանք, որովհետեւ դպրոցներից խիստ փոքր գիտութիւն են դուրս բերում: Բայց այդ փոքր գիտութիւնը աւելի խանգարում է նրանց օրինաւոր գիւղացիներ լինել, քան թէ նպաստում է: Կիսակատար եւ թերի կրթութիւնը միշտ հպարտացնում է ուսանողներին: Մանուկները մի բան սովորելով, լաւ եւս է ասել՝ ոչինչ չը սովորելով, սկսում են այնուհետեւ արհամարհանքով նայել իրանց ծնողների պարապմունքի վրա. նրանք դառնում են մի տեսակ թշուառ արարածներ, որ կորցնում են իրանց հակումը դէպի ծընողների ապրուստի աւանդական եղանակը, եւ մի նոր ձեւ, մի նոր եղանակ էլ չեն սովորում, եւ այսպէսով մնում են „ա ւ ա ր ա յ“, այսինքն մոլորված,—ոչ այս եւ ոչ այն: Գիւղը սկսում է անտանելի լինել նրանց, եւ միակ ելքը, որ գտնում են իրանց դժուար դրութիւնից դուրս գալու համար, այն է, որ դիմում են դէպի օտար երկրներ նոր ապրուստ գտնելու: Ահա ինչով է բացատրվում գիւղացի մանուկների սաստիկ գաղթականութիւնը դէպի քաղաքները:*

*Այս դէպքում մեծ ազդեցութիւն է գործում օրինակը: Այս ինչ գիւղացու որդին, ուսում ստանալով, դարձաւ աստիճանաւոր, բժիշկ, վարժապետ, բարձրաստիճան եկեղեցական, կամ հարուստ վաճառական,—միւսները աշխատում են, որ իրանք էլ մի եւ նոյն բախտաւորութեանը հասնէին: Այստեղից առաջ է գալիս գիւղացի մանուկների սաստիկ հոսանքը դէպի մերձաւոր եւ հեռաւոր քաղաքները: Մի գաղտնի եւ մանուկի համար անհասկանալի դրութիւն քաշում է նրան դէպի քաղաքը. նա դիմում է այնտեղ լի*

*անորոշ յոյսերով, ինքնավստահ, եւ միանգամայն յանձնըված իր բախտին: Տարակոյս չը կայ, որ այսպիսի անփորձ եւ անմեղ բախտախնդիրներից ոմանք անտէրութիւնից, ոմանք խնամակալ չունենալով, ընկնում են քաղաքների մոլորութիւնների մէջ եւ դառնում են թշուառ արարածներ, բայց մեծ մասը հասնում են իրանց նպատակին:*

*Գալով քաղաքը, գիւղացի մանուկը անպատճառ ունի մի նպատակ: Եթէ ցանկանում է նա վաճառական դառնալ, մտնում է մի վաճառականի մօտ որպէս „դուքնի աշակերտ“. Նա ոչինչ վարձ չէ պահանջում, միայն թէ տային նրան հաց եւ հագուստ: Երբեմն մինչեւ տասն տարի անտանելի նեղութիւնների համբերելով, վերջապէս նա փոքրիկ գումարի տէր է դառնում եւ սկսում է իր համար մի առանձին առեւտուր անել: Նա բացի սովորելուց առեւտրական եղանակները, մի եւ նոյն ժամանակ ստանում է վարպետից նրա բարոյականութեան լաւ կամ վատ յատկութիւնները: Մի եւ նոյն կերպով են սկսում իրանց ասպարէզը եւ այն մանուկները, որոնք ցանկանում են որ եւ իցէ արհեստ սովորել. աշակերտութիւնից անհնարին նեղութեամբ հասնում են վարպետութեան: Քաղաքների թէ վաճառականները, թէ արհեստաւորները մեծ յօժարութեամբ ընդունում են իրանց մօտ գիւղացի մանուկներին, որովհետեւ նրանք հաւատարիմ են լինում, չեն գողանում, եւ շուտ սովորելով, օգուտ են տալիս իրանց վարպետներին:*

*Որպէս հայ աղջիկներից չէ կարելի գտնել աղախիններ, այնպէս էլ հայ մանուկներից չէ կարելի գտնել տան սպասաւորներ: Բացառութիւնները խիստ աննշան են: Եթէ հայ մանուկը մտնում է մէկի մօտ ծառայելու, անպատճառ նպատակ ունի մի բան սովորել, որ կազատէր նրան ստոր պարապմունքից:*

*Ոչ սակաւ հետաքրքրութեան արժանի է, թէ որպիսի եռանդով, որպիսի անձնանուիրութեամբ եւ առանց բնաւ*

միջոցների գիւղացի մանուկը քաղաքում աշխատում է ուսում ստանալ: Դա մի կատարեալ նահատակութիւն է, որի մասին կը խօսեմ իր տեղում, երբ կը նկարագրվի առհասարակ մեր ուսանողների դրութիւնը:

Գիւղացի մանուկների սաստիկ հոսանքը դէպի քաղաքները զրկում է գիւղական ժողովրդին իր թարմ ուժերից եւ թուլացնում նրա աճելութիւնը: Մանուկը քաղաքում սովորելով որ եւ իցէ արհեստ, կամ վաճառականութիւն, եւ կամ ուսումնական դառնալով,—այլ եւ սովորելով քաղաքի կեանքին եւ հեշտութիւններին, այլ եւս չէ վերադառնում իր հայրենական տունը, որովհետեւ իր արհեստը, իր գիտութիւնը գիւղում գործադրութիւն չեն գտնում: Նա բնակութիւն է հաստատում քաղաքում, այնտեղ ամուսնանում է, եւ այնտեղ էլ ապրում է մինչեւ իր կեանքի վերջը: Երբեմն միայն գնում է տեսնելու իր ծնողներին եւ ազգականներին, եւ եթէ իր դրութիւնը ներում էր ծնողներին, քոյրերին, եղբայրներին իր մօտ է բերել տալիս, եւ այսպէս գիւղական հասարակութիւնը զրկվում է մի ծուխից: Բայց որքան այդպիսի ծուխեր մարում են ամեն տարի:

Գիւղական մանկտոյ սաստիկ հոսանքը դէպի քաղաքները, թէեւ, որպէս յիշեցի, մի կողմից զրկում է գիւղացուն իր թարմ ուժերից, բայց միւս կողմից էլ մտցնում է գիւղերի մէջ նոր կեանք, նոր քաղաքակրթված տարր: Քիչ չէ պատահում, այն երիտասարդները, որոնք քաղաքներում զարգացել էին, աչքները բացվել էին եւ հասկացել էին կեանքի նպատակը ու պահանջները, կրկին վերադառնում են գիւղը, յորդորում են իրանց հայրենակիցներին կրթութեան գործի մէջ, դպրոցներ հիմնել տալով, եւ նրանց հասարակական կեանքի եւ տնտեսութեան մէջ նոր ձեւեր, նոր բարւոքումներ մտցնելով: Օրինակներ շատ են եղել, որ մի գիւղացի պատանի, մանկութեան հասակում քաղա-

քը գնալով, այնտեղ մնալով եւ հարստանալով, դարձեալ չէ մոռացել իր ծնված տեղը, եւ հայրենասիրական զգացմունքից դրդված, կամ՝ բոլորովին իր ծախսով, կամ՝ օժանդակութիւններ հաւաքելով, հիմնել է իր հայրենի գիւղում՝ մի դպրոց, եւ կամ՝ օգնել է իր հայրենակիցներին այս եւ այն տնտեսական գործի մէջ: Այսպիսով գիւղացիները դուրս են գալիս իրանց անշարժութիւնից եւ իրանցից քաժանված ուժերը առաջնորդում են նրանց դէպի յառաջադիմութիւն:

Գիւղացի մանկտին չափազանց առաձգական եւ դիւրաթեք բնաւորութիւն ունի. նա շատ չէ ենթարկվում պապերից մնացած աւանդական սովորութիւններին ոչ միայն կեանքի մէջ, բայց եւ պարապմունքների մէջ: Նրա մօտ չէ կարելի տեսնել այն քաստայական ջոկութիւնը, որ պահում է գիւղացուն իր անփոփոխ, անշարժ եւ քարացած միակերպութեան մէջ: Բաւական էր մի օրինակ, բաւական էր, որ հանգամանքները նպաստէին նրան, նա արդէն փոխում է իր կացութեան ձեւերը: Այս է պատճառը, որ մենք չունենք գիւղական ազգաբնակութիւն իր նեղ նշանակութեամբ վեր առած: Տեսնում ես, նա պարապում է հողի մշակութեամբ, այգեպանութեամբ, անասնապահութեամբ եւ այլն, իսկ մի եւ նոյն ժամանակ վաճառականութիւն է անում, մտնում է արքունական կապալների մէջ, եւ հէնց որ փողի տէր դարձաւ, էլ չես ճանաչի երէկվայ կոշտ, գըռեհիկ գիւղացուն, նա ոտքից գլուխ փոխվում է եւ ցոյց է տալիս բոլոր ձեւերը փոքր ի շատէ կրթված քաղաքացու: Ես կը բերեմ մի համեմատութիւն: Վեր առնենք օրինակի համար ռուս մուժիկին, նա որքան էլ հարստանայ, մինչեւ անգամ միլիօնի տէր դառնայ, դարձեալ կը մնայ նոյն մուժիկը, դարձեալ կը տեսնես նրան ահագին մօրուքով, ուղիղ կտրած երկայն մազերով, կարմիր չթեղէն շապիկով, մինչեւ ծնկները վեր քաշած կոպիտ կօշիկներով, եւ ուսերի վրա ձգած տուլուփով.—Թէ քաղաքում եւ թէ գիւղում նա

մի եւ նոյն հագուստն է կրում, մի եւ նոյն ռամկական լեզուով է խօսում, եւ մի եւ նոյն կերպով ձեւվում է, մինչեւ գետին խոնարհվում է եւ գլուխ է տալիս, երբ գործ ունէր մի դեղին կօճակաւոր մունդիրի հետ: Հարստութիւնը եւ միջոցները չեն փոխում նրան. բնակվում է սովորական խրճիթի մէջ, ուտում է իր „բշչին“ փայտէ ամանի մէջ, փայտէ գդալով, խմում է արաղ եւ „կըվաս“, հաստացնում է փորը, եւ օրըստօրէ բթանում է, յիմարանում է: Բայց մեր նորահաս գիւղացին այսպէս չէ: Նիւթական միջոցների համեմատ նա փոխում է եւ արտաքին ու կացութեան ձեւերը: Ես տեսել եմ գիւղացի երիտասարդներ ցիլինդրով, զուգաւոր նուրբ ձեռնոցներով, օսլայած սպիտակ շապիկներով, հագնված որպէս մի փարիզեան ֆրանտ, մատին դրած ունի բրիլիանտ մատանի, ոսկի ժամացուցով, խօսում է զանազան լեզուներով, լրագիրներ է կարդում, եղել է եւրօպական զանազան քաղաքներում, դատում է պօլիտիկայի վրա, բնակվում է ճաշակով կահաւորած տան մէջ, որի լուսամուտները զարդարած են գոյնզգոյն ծաղիկների թաղարներով: Ի հարկէ, բացառութիւնը մեծ է, մանաւանդ այն գիւղերի վերաբերութեամբ, որ հեռու են քաղաքներից եւ մեծ ճանապարհներից, որ ընկած են խուլ անտառների, անմատչելի լեռների եւ անյայտ ձորերի մէջ:

Անցնում եմ դէպի այն երիտասարդութիւնը, որ գիւղից դուրս չէ եկել, քաղաք չէ տեսել, որ դեռ պահպանել է իր պապերի ընտանեկան եւ աւանդական յատկանիշները:

Բարոյականութիւնը մանուկ սերունդի մէջ պահպանելու համար գիւղացի ծնողները աշխատում են շուտով ամուսնացնել իրանց որդիներին: 15—16 տարեկան հասակում նրանք արդէն կնոջ տէր են, իսկ դեռ քսան տարեկան չեղած, զաւակներ ունեն: Սովորած լինելով ամէն պէտքերի մէջ ընդունել ծնողների հաճութիւնը, եւ կնոջ ընտրութեան մէջ պատանին խոնարհվում է նրանց կամքին: Նա իր սըր-

տից չէ հարցնում՝ արդեօք սիրում է աղջկան, թէ ոչ, եւ կամայ-ակամայ հաշտվում է անհրաժեշտութեան հետ: Եւ ի՞նչով կարող էր նա հասկանալ կնոջ լաւ կամ վատ յատկութիւնները, քանի որ նա երբէք կնոջ հասարակութեան մէջ չէր գտնվել, չէր փորձել, եւ չը գիտէր, թէ ինչպէս է լինում կնոջ սէրը: Պատկեցին նրան մի աղջկայ հետ, լաւ թէ վատ, մի եւ նոյն է նրա համար,—այս է, որ կայ. —մտածում է նա, նրանով զոհանում է եւ նրա մէջ գըտնում է իր բաւականութիւնները: Եթէ հայրը գնել էր մի նոր եզ, որին շուտով կարող էր հասկանալ, թէ որքան այդ անասունը կարող էր յարմարվել գործին, որովհետեւ շատ այսպիսիները փորձել էր նա, բայց կնոջ հետ գործ չէր ունեցել, կինը նրա համար մի անծանօթ առարկայ էր:

Կինը առհասարակ խիստ աննշան դեր է խաղում գիւղական երիտասարդութեան վիճակի մէջ: Նա ապրում է փակված տան չորս պատերի մէջ եւ պահպանվում է սաստիկ հսկողութեան ներքոյ: Եւ եթէ պատահում է, որ նա տնից դուրս է գալիս, հարեւանի տղան իրաւունք չունի մօտենալ նրան կամ խօսել նրա հետ: Եւ ի՞նչ հաճութիւն կարող էր գտնել երիտասարդութիւնը կանանց հասարակութեան մէջ, երբ նրանցից կտրված էր, երբ ամբողջ գիւղի մէջ չէր կարելի գտնել մի կամ երկու կին, որ թեթեւ վարքի տէր լինէին: Ես ականատես եմ եղել մի ծիծաղելի հանդէսի, թէ որպիսի խայտառակութեամբ գիւղական հասարակութիւնից արտաքսում էին մի կնոջ: Նրան նստացրել էին էշի վրայ դէպի հակառակ կողմը, այսինքն երեսը դարձրած դէպի զաւակը, եւ նօխտայի (երասանակ) փոխարէն ճեռքումը բռնել էին տուել էշի ագին: Կնոջ գլուխը բոլորովին բաց էր առանց ծածկոցի, ծամերը սափրել էին, իսկ երեսը սեւացրած էր մուրով: Մի մարդ քաշում էր էշի նօխտան, իսկ երկու մարդիկ առաջեւն ընկած, մէկը թմբուկ էր ածում, իսկ միւսը՝ զուռնայ: Բազմութիւնը

աղաղակներով եւ կատակներով ճանապարհ էր դնում ո-ղորմելի յանցաւորին դէպի գիւղից դուրս:

Պէտք է նկատել, որ բարոյականութիւնը պահպանելու համար գործ դրված այսպիսի խիստ միջոցները այժմ օր-ըստօրէ թուլանալու վրա են: Բարքերի ապականութիւնը, որպէս ժամտախտ, սկսել է վարակել գիւղական մաքուր պահված ժողովուրդը: Այս ախտից զերծ են մնացել այն գիւղերում միայն, որոնք առանձնացած են եւ քաղաքների հետ հաղորդակցութիւն չունեն եւ որոնք սալդաթի կամ աֆիցերի երես դեռ չեն տեսել:

Պատահում է աւելի զգայուն բնաւորութիւն, որ իսկա-պէս սիրում է մի աղջկայ, որին տեսել էր, որի հետ զու-ցէ ունեցել էր մի քանի գաղտնի խօսակցութիւններ: Բայց որդիների սէրը երբէք չէ մտնում ամուսնական հաշիւների մէջ, որոնք միանգամայն կախված են ծնողների կամքից: Որպէս որդին չէ կարող ուտել այն կերակուրը, որից ինքը ախորժում է, այլ պէտք է ուտէ այն, որ մայրը նրա հա-մար պատրաստում է,—որպէս որդին չէ կարող հագնել այն հագուստը, որ ինքը ցանկանում է, այլ պէտք է հագնէ այն, որ հայրը նրա համար գնում է,—այնպէս էլ պատանին չէ կարող կին ունենալ այն աղջկան, որին ինքը սիրում է, այլ նրան, որին ծնողները ընտրում են: Այս պարագանե-րիս մէջ խիստ յատկանիշ է այն պատկը, որ տեղի էր ու-նեցել մի գիւղում. քահանան հարցնում է պատանուց ցոյց տալով նորահարսի վրա, թէ „տէ՞ր ես, սիրում ես:“—„Հայրս գիտէ, տէրտէր, նրանից հարցրու“, պատասխանում է պա-տանին:

Առհասարակ սէրը գիւղացի պատանիների եւ աղջիկ-ների մէջ լոկ բանաստեղծական ֆանտազիա է, որ վերջին տարիներում նիւթ դարձաւ մի քանի անշնորք եւ անհամ վէպիկների, բայց կեանքի մէջ նա չը կայ: Վեր առէք մեր բոլոր ժողովրդական երգերը եւ աշուղների վէպերը, նրանց

մէջ չէք գտնի իսկական սէր իր հոգեբանական ծչգրիտ կողմերով։ Բանաստեղծը խորին հիացմունքով գովում է կնոջ թուխ մազերը, կարմիր թշերը, սեւորակ աչերը, չինարի պէս ծզված հասակը, մարգարտի նման ճերմակ ատամները, եւ այլն, մի խօսքով, նա յափշտակված է կնոջ արտաքին գեղեցկութիւններով միայն, բայց նրա հոգու եւ սրտի մէջ ոչինչ չէ տեսնում, նրա բնաւորութեան, բարքի եւ վարքի մէջ ոչինչ գրաւիչ բան չէ նկատում։ Դա շատ բնական է։ Ի՞նչպէս կարող էր սիրողը թափանցել կնոջ սրտի եւ հոգու մէջ, երբ նրա հետ յարաբերութիւն չէր ունեցել, նրա բերնից մի բառ անգամ չէր լսել։ Իսկ յարաբերութիւնները մեր գիւղերում տղաների եւ աղջիկների մէջ միանգամայն կտրված են։ Տղային գրաւում է աղջկայ արտաքին ֆիզուքան միայն, երբ հեռուից հեռու տեսնում է նրան, ինչպէս շատ մարդ կարող է յափշտակվել մի գեղեցիկ արձանի արտաքին կերպարանքով, բայց հոգին եւ սիրտը քըննել չէ կարող, որովհետեւ նա սիրտ չունի, որովհետեւ նրա լեզուն չէ խօսում։ Բայց հոգու արտայայտութիւնները արտաքին կերպարանքի վրա տեսնելու համար պէտք է ունենալ բաւական կրթված ճաշակ եւ նուրբ դիտողութիւն, որոնցից զուրկ է գիւղացին։

Տարվայ երեք եղանակներում,—գարունը, ամառը եւ աշունը,—գիւղացին այնքան զբաղված է իր մշակութիւններով, որ ամենեւին ժամանակ չունի իր սրտի հետ խօսելու. այն ժամանակ գործում են նրա ֆիզիքական ուժերը միայն, իսկ հոգին մնում է անգործ։ Բայց ձմեռը մի փոքր հանգստանում է նա, եւ դատարկութեան մէջ զարթնում են զգայական կրքերը։ Ձմեռը կատարվում են գիւղական հարսանիքները, որ մօտեցնում են տղամարդերին կնիկների հետ։ Գիւղական հարսանիքը ամբողջ գիւղի հարսանիքն է. վերջին աղքատը մասնակցում է այդ ընդհանուր ուրախութեանը, կերակրվում է նրա սեղանից եւ խմում

է նրա զինին: Գիւղական հարսանիքը մի մեծ մխիթարութիւն է մանաւանդ ջահիլ աղջիկների եւ պատանիների համար, որոնք շատ զուրկ են մնում ուրախալի հանդէսներից: Հարսանիքը, նայելով փեսայի հօր կարողութեանը, տեւում է մի քանի օրեր. առհասարակ երեք օրից պակաս չէ լինում: Ցերեկները անց են կացնում ուտելով եւ խմելով, իսկ գիշերները՝ նուագարաններ ածելով, պար գալով եւ երգելով: Ձեռնաքռնուկ խաղը (ճալլի) այն բարերար խաղերից մէկն է, որ առիթ է տալիս տղամարդերին շօշափել մի կնոջ ձեռք: Բայց այստեղ եւս հայկական պարկեշտութիւնը դրել է իր խիստ սահմանները: Պարի մէջ տղամարդը իրաւունք չունի բռնել մի օտար կնոջ ձեռք, նա անպատճառ պէտք է ընտրէ իր մօտ ազգականներից, կամ իր քրոջը, կամ մօրաքրոջը եւ այլն: Ամուսնաւոր կնիկները բոլորը դիմակաւորված են լինում, այսինքն երեսները ծածկված է լինում թանձր եւ անթափանցիկ քօղով, ոչինչ չէ կարելի տեսնել: Բայց ազափ աղջիկների երեսները բաց են լինում: Կին եւ տղամարդ, աղջիկ եւ պատանի, միմեանց ձեռքից բռնած, կազմում են մի երկար շղթայ, որ զանազան ուղղութեամբ պտոյտվում է ընդարձակ տան մէջ: Սազանդարների ածելու եղանակով շարժվում են պարողները, լուռ ու մունջ կերպով, կարծես, կատարվում է մի բալետ իր խորհրդաւոր պօնտօմիմայով: Այն գիւղերում, ուր ժողովուրդը դեռ եւս գտնվում է նահապետական պարզութեան մէջ, տղամարդերի յարաբերութիւնը կնոջ հետ աւելի արձակ է, եւ հարսանիքների մէջ կամ զանազան տօնական հանդէսներում պարերը եւ խաղերը աւելի զուարճալի կերպարանք են ստանում:

Հարսանիքի ժամանակ հայկական աւանդութիւնները երեւան են գալիս իրանց նախնական պարզ կերպարանքով. հետաքրքիր աչքը կարող է տեսնել նրանց մէջ ժողովրդական հանճարի շատ ստեղծագործութիւնները, որ

այժմ կորչելու, անհետանալու վրա են։ Եթէ ունեցել ենք մենք մի ժամանակ թատերական ներկայացումներ, եթէ մեր նախնիքներն եւ զուարճացել են իրանց Էսքիլէսների, Սօֆօկլէսների եւ Եւրիպիդէսների արարչութիւններով,—այժմ նրանցից ոչինչ չէ մնացել, այժմ նրանց նշոյլներն միայն մնացել են գիւղական ժողովրդի մէջ, որ յայտնվում են զանազան հանդէսներում։ Հարսանիքի համար ընտրում են առհասարակ ընդարձակ տներ, որ բաւական լինէր բազմութեան համար։ Եթէ հարսանիքատիրոջ բնակարանը փոքըր էր, ղրացին տալիս է նրան իր տունը։ Ամեն գիշեր սովորական կերուխումը, ուրախութիւնները եւ պարերը վերջանալէն յետոյ, լինում են մի տեսակ թատերական ներկայացումներ, որ ռամկի լեզուով կոչվում է օ յ ի ն (խաղ)։ Դերասանների պաշտօն կատարում են գլխաւորապէս սազ ա ն դ ա ր ն ե ր ը (նուագածուներ)։ Ներկայացնում են ժողովրդի կեանքից առած ծիծաղաշարժ պատկերներ, երբեմն առանց բովանդակութեան եւ երբեմն իրանց տգեղութեամբ անցնում են բարոյականութեան չափը։ Բայց այդ կոշտ, կոպիտ եւ անմաշ վոդըվիլները սաստիկ ազդում են մանուկ սրտերի վրա։ Մանկտին նրանց մէջ տեսնում է այն գաղտնիքները, որոնք իր համար առաջ անորոշ էին, անբացատրելի էին։

Վերջապէս պատանին ամուսնանում է։ Հարսանիքի ուրախութիւնները շուտով անցնում են, որպէս թէ ոչինչ չէր պատահել եւ միւս օրը նորափեսան սկսում է իր սովորական պարապմունքը։ Կրկին սկսվում է տաժանական կեանքը։ Երկու նորապսակ ամուսինների յարաբերութիւնները հէնց առաջին օրից խիստ օտարոտի ձեւ են ստանում։ Գիւղացու ընտանեկան պայմաններին անծանօթ մարդը, տեսնելով նրանց, կը կարծէ, թէ նրանք կռուել են, կամ միմեանց հետ անհաշտ են ապրում։ Դրսումը միասին չեն յայտնվում, իսկ տան մէջ միմեանց հետ չեն խօսում։

Հայրը իր քողը չէ բարձրացնում եւ երեսը չէ ցոյց տալիս փեսային, եթէ այնտեղ ներկայ էր ընտանիքի անդամներից մէկը: Միասին չեն ճաշում, ընթրիք չեն ուտում. որդին ուտում է հօր հետ, իսկ հարսը՝ սկեսրոջ հետ: Գիւղերում կանանց սեռի սեղանը տղամարդերից բաժանված է: Այսպէս անցնում են տարիներ եւ շատ տարիներ. հարսը տեսնվում է իր ամուսնի հետ կամ գաղտնի, կամ գիշերը, երբ բոլորը քնած էին:

Ամուսնութիւնից յետոյ երիտասարդի վիճակը փոխվում է ընտանիքի մէջ. հայրը նրա հետ այլ եւս խստութեամբ չէ վարվում, իսկ մայրը յարգում է: Նա այժմ այր է եւ ոչ տղայ: Նրա խօսքերը, նրա կարծիքները բանի տեղ են դնում, եւ նա սկսում է ձայն տալ ընտանեկան խորհուրդների մէջ: Բայց աստիճանը յարաբերութիւնների մէջ չէ փոխվում, մնում է մի եւ նոյնը: Խորհուրդների մէջ գերակշռում է աւելի հասակաւորի կարծիքը: Եթէ նոր ամուսնացածը կրտսեր որդի էր, խոնարհվում է երէց եղբօրը, իսկ երէց եղբայրը՝ հօրը: Ընտանիքի գլխաւորութիւնը պատկանում է նրան: Հօր մահից յետոյ նրա տեղը բռնում է անդրանիկ որդին: Որպէս կրտսեր եղբայրը հնազանդվում է երէց եղբօրը, այնպէս էլ կրտսեր եղբօր կինը պէտք է հնազանդվի երէց եղբօր կնոջը: Ինձ շատ է պատահել տեսնել գիւղերում, երբ երէց եղբայրը իր հիւրի հետ սեղան էր նստել, կրտսեր եղբայրը ոտքի վրա ծառայում էր նրանց: Փոքր եղբայրը այն աստիճան պատկառում է եւ յարգում է մեծ եղբօրը, որ աստիճան յարգում է եւ իր հօրը: Նրա ներկայութեամբ չէ ծխում, գինի կամ արաղ չէ խմում, թէեւ մեծ եղբայրը գիտէ բոլորը, եւ առհասարակ մատների միջից է նայում իրանից փոքրի այս տեսակ համեստութիւնների վրա:

Հօր կենդանութեան ժամանակ որդիների մէջ բաժանում լինել կարող չէ. եթէ նրանցից մէկը անհնազանդ էր

զսպվում եւ խանգարում էր ընտանեկան կարգերի ներդաշնակութիւնը, արտաքսվում է ժառանգութիւնից զրկված։ Հօր մահից յետոյ եղբայրները երկար շարունակում են դարձեալ միասին ապրել, մինչեւ նրանք եւս ունենում են որդիներ, որոնց ամուսնացնում են եւ թոռների տէր են լինում։ Տունը լցվում է ահագին բազմութեամբ, գերդաստանը ստուարանում է եւ ընտանիքի կազմակերպութիւնը աւելի բարդացրեալ ձեւ է ստանում։ Երբ հին սերունդը անցնում է, մնում են ջահիլները, այդ ժամանակ առաջ է գալիս բաժանմունքը. յանկարծ մէկ մասնատված գերդաստանից կազմվում են 5—6 ընտանիքներ։ Բայց նկատողութեան արժանի է այն, որ գիւղացի հայրերը չափազանց հեռատես են լինում եւ իրանց կենդանութեան ժամանակը կարգադրում են այն բոլորը, ինչ որ պէտք էր որդիների ապագայ տնտեսութեան եւ ապրուստի համար։ Օրինակ, մէկ հայր ունէր երեք որդի, գիտէր որ իր մահից յետոյ, վաղ թէ ուշ, նրանք կը բաժանվեն. նա աշխատում է շինել իւրաքանչիւրի համար մի առանձին խրճիթ, եւ եթէ իր միջոցները չէին ներում այդ անել, նա գոնէ տալիս է իր տան շինութեանը այնպիսի ձեւ, որ կարելի լինէր երեք հաւասար մասների բաժանել, որ յետոյ երեք որդիների համար յարմար բնակարաններ լինէին։ Գիւղերում սովորաբար լսվում է՝ այս ինչ աղայի եօթը ջրաղացները, եօթը օրավար հողը, եօթը այգիները, եօթը հօտ ոչխարները եւ այլն,—իսկոյն կարելի էր եզրափակել, թէ նա ունեցել է եօթը որդի, եւ ամեն մէկի համար առաջուց անօրինել է մի եւ նոյն կայքերը, որ եղբայրներից իւրաքանչիւրը հաւասար չափով ստանար հօր ժառանգութիւնից իր բաժինը։ Բայց եթէ հայրը այնքան աղքատ էր, որ իր կենդանութեան ժամանակ չը կարողացաւ անօրինել որդիների համար մի ապահով ապագայ, նրանից յետոյ որդիները այնքան ժամանակ միմեանց հետ անբաժան ապրում են, մի-

տանն աշխատում են, մինչեւ կարողանում են վաստակել այնքան, որ բաւական կը լինէր իւրաքանչիւրի կանոնաւոր տնտեսութեան համար, եթէ հարկաւոր կը լինէր բաժանվել միմեանցից:

Այսքանը բաւական համարելով երիտասարդների ընտանեկան յարաբերութիւնների մասին, այժմ դառնում եմ դէպի նրանց հասարակական գործունէութիւնը:

Այն գիւղերում, ուր նահապետական սովորութիւնները դեռ տիրում են կեանքի մէջ, երիտասարդութիւնը չէ մասնակցում հասարակական գործերում: Որպէս ընտանիքի մէջ, այնպէս էլ հասարակական գործերի մէջ ձայն ունեն ա ղ ս ա խ կ ա լ ն ե ր ը (սպիտակ մօրուք ունեցողները) միայն: Օրինակ, պէտք էր հարկերը բաժանել ծուխերի կամ կայքերի վրայ, պէտք էր ջրերին հերթ նշանակել, եկեղեցու երեսփոխանի հաշիւը տեսնել, կամ պէտք էր այս եւ այն յանցաւորին պատժել, մի խօսքով բոլոր գիւղական գործերի համար հաւաքվում են „սպիտակամօրուքները", ժողով են կազմում, խօսում են, դատում են եւ վճռում են: Բայց նոյն օրից, երբ գիւղերում հիմնվեցան կանոնաւոր շինական դատարաններ, երբ նրանց տրվեցան որոշեալ օրէնքներ, եւ երբ ձանցելարիական ֆորմալիստութիւնը մերժեց սպիտակամօրուքների բերանացի դատավճիռները,—այն օրից ծերերի դարը անցաւ եւ ասպարէզը մնաց երիտասարդներին: Որովհետեւ շինական դատարաններում մասնակցելու համար՝ պէտք է փոքր ի շատէ գրագէտ լինել, պէտք է փոքր ի շատէ ծանօթ լինել օրէնքների հետ, եւ վերջապէս պէտք է կանոնաւոր խօսել գիտենալ, բայց դրանցից զուրկ են ծերունիները: Ես առիթ եմ ունեցել մի քանի անգամ ներկայ լինել շինական դատարաններում ժողովների վիճաբանութիւններին. նախագահում է տանուտէրը, խօսել ցանկացողները ձայն են խնդրում, միմեանց չեն խանգարում, չեն ընդմիջում, վերջապէս տեսնում ես մարդիկ,

որ հասկանում են իրանց պէտքերը, եւ վիճաբանութիւնների մէջ տիրում է աւելի առողջ դատողութիւնը. Թէեւ պարզ եւ համեստ կերպով, եւ ոչ սոփեստական պերճախօսութիւնը, որ շատ անգամ կարելի է նկատել մեր քաղաքների դումաների մէջ:

Այսուամենայնիւ, հին սերունդը դեռ ոչ բոլորովին կորցրել է իր նշանակութիւնը: Երբ պատահում են գիւղում զանազան հրաւէրքներ, օրինակ, երբ կնունքաճաշ են տալիս, երբ մի հանգուցեալի համար հոգեհաց են տալիս, երբ մի տան մէջ նաւասարդին հարիսա էին եփել, կամ ղաւուրմայի համար մորթած ոչխարներից խաշ էին պատրաստել,—միշտ հրաւիրում են ծերունիներին, իսկ երիտասարդներին չեն կանչում: Եթէ հրաւէրքներում պատահում են երիտասարդներ, նրանք ծերերի հետ սեղան նստելու համարձակութիւն չունեն, այլ նրանց պատուելու համար ոտքի վրա սպասաւորութիւն են անում: Երիտասարդները իրանց զուարճութիւնը գտնում են իրանց շրջանի մէջ. հաւաքվում են միասին, գնում են գիւղից դուրս, առանձնանում են մի այգու կամ մի ձորի մէջ եւ այնտեղ քէֆ են անում, բայց տանը հիւրեր հրաւիրելու իրաւունք չունեն, քանի որ դեռ կենդանի էր ծերունի հայրը: Հայրերը առհասարակ չեն ներում որդու անձնիշխանութիւնը ընտանիքի մէջ, իսկ դրսումը, եթէ մի լաւ բան անում է նա, չեն արգելում. որովհետեւ որդու փառքը, որդու ստացած գովասանութիւնները դարձեալ իրանց են վերաբերում: Այս է պատճառը, որ նրանք երբեմն անում են այն մեծ զիջողութիւնը, երիտասարդ որդիներին թոյլ տալով իրաց հաճոյքների համեմատ վարվել:

Անցնում եմ դէպի գիւղական երիտասարդութեան մտաւոր, հոգեկան եւ առհասարակ կուլտուրական առանձնութիւնները:

Տեղագրական եւ կլիմայական պայմանները Հայաս-

տանում, աւելի քան թէ մի ուրիշ տեղ, արտայայտում են իրանց ազդեցութիւնը ժողովրդի մտաւոր, հոգեկան եւ առհասարակ կուլտուրական առանձնութիւնների վրա: Այս կէտից նայելով մեր գիւղական ազգաբնակութիւնը կարելի է երկու որոշ խմբերի բաժանել՝ լ ե ռ ն ա բ ն ա կ ն ե ր եւ դ ա շ տ ա բ ն ա կ ն ե ր: Խօսենք իւրաքանչիւրի մասին առանձին:

Լեռնաբնակները, թէ հովիտների մէջ, թէ ձորերում, թէ բարձրաւանդակների վրա եւ թէ անտառներում, դեռ ապրում են գետնափոր խրճիթների մէջ, որոնք աւելի գազանների որջի են նման, քան թէ մարդկային բնակութեան: Խրճիթը բաժանված է երկու մասների. մէկի մէջ կենում են անասունները, միւսի մէջ՝ տէրերը: Մշտավառ խարոյկը—տնային օջախը—յարաժամ ծխում է բնակարանի կենտրոնում, որ սփռում է իր շուրջը լոյս եւ ջերմութիւն: Գլխաւոր պարապմունքը անասնապահութիւնն է: Անասունը մատակարարում է նրանց ամեն ինչ, որ պէտք էր ապրուստի համար՝—կերակուր, հագուստ եւ վառելիք: Հագուստի համար գործուածներ պատրաստում են կնիկները բրդից եւ իր բնական գունով, որ շատ տեղերում բաւական նրբութեան է հասցրած: Մսակերութիւնը սովորական եղած չէ, կերակրվում են անասունների կաթնով, մածնով, իւղով, պանրով եւ բանջարեղէններով միայն: Ձմեռը բաւական երկարատեւ լինելով, իսկ տարվայ միւս եղանակները ցուրտ, այս պատճառով երկրագործութիւնը զարգացած չէ. մշակում են ցորեան, գարի եւ հաճար միայն: Մշակութեան համար մեծ աշխատութիւն պէտք չէ, որ զարգացնէր մեծ հմտութիւններ. թեթեւ արօրով փոքր ինչ խրխրում են լեռների հողով պատած կուրծքը, ցանում են եւ թողնում են բնութեան կամքին. անձրեւը ինքը ջրում է, եւ արեգակի անզօր ճառագայթները բուսցնում են: Շատ անգամ վաղահաս ձմեռը ձիւնով ծածկում է դեռ չը հասունացած հուն-

ծը, եւ գիւղացին ուտելու հաց չունի: Կեանքը նահապետական է: Մարդը դեռ չէ տաշուել, չէ կոկուել, դեռ պահպանել է իր նախնական կոշտութիւնը՝ թէ լեզուի, թէ մտածութեան եւ թէ կենցաղավարութեան մէջ: Կեանքի պահանջները խիստ սակաւ են. մարդը բաւականանում՛ է փոքրով, եւ չափաւոր կարիքը չէ ստիպում՛ շատ մտածել: Գոհութիւնը վիճակից տիրում՛ է կեանքի վրա անշարժութեան հետ միասին:

Երիտասարդութիւնը լեռնաբնակների մէջ նշանաւոր է իր տիպական յատկանիշներով: Նա, որպէս բնութեան ազատ զաւակ, դաշտեցիների նման ցած, խորամանկ եւ տափակ բնաւորութիւն չունի: Լեռնեցի երիտասարդութիւնը նոյնպէս պարզամիտ, նոյնպէս կոշտ-կոպիտ, նոյնպէս անխորտակելի, նոյնպէս վայրենի է, որպէս ինքը լեռը: Նա ծանօթ է զէնքերի հետ, որսում՛ է անասուններ, պատերազմում՛ է գազանների հետ, եւ հարկաւորած դէպքում՛, չէ խընայում՛ իր զէնքը գործ դնել եւ իր նման մարդերի դէմ: Մեր բոլոր նշանաւոր աւազակները, որոնց քաջագործութիւնները հերոսութեան են հասնում՛, լեռնեցիներ են եղել: Հայոց անկախութիւնը մինչեւ մեր մօտ ժամանակները պահպանուեցաւ Ղարաբաղի լեռներում՛: Դաւիթ-բէկը, մեր 18-րդ դարու հերոսը, նոյն տեղացի էր: Նշանաւորն այն է, որ այդ քաջ, եւ կազմուածքով, հոգով, ուղեղով առողջ եւ զօրաւոր երիտասարդներից առաջ են գալիս երեւելի մարդիկ, երբ դէպքերը գցել էին մէկին կրթութեան ճանապարհի վրա, եւ նա համալսարանական բարձր ուսում՛ էր ստացել:

Խօսենք դաշտաբնակների մասին:

Բոլորովին հակառակ պատկեր են ներկայացնում՛ դաշտաբնակները: Նրանք գետնափոր խրճիթներում՛ չեն ապրում՛, բնակվում՛ են կաւաշէն կամ՛ քարաշէն տներում՛, որոնք բաւական բարձր են գետնի մակերեւոյթից: Անասունների ախոռատունը միացած չէ տէրերի բնակարանի հետ:

Ուտում են մսէղեն կերակուրներ եւ հագնում են գունաւոր գործուածներ, որ արդիւնաբերվում է ոչ թէ իրանց կընիկների աշխատասէր ձեռքով, այլ եւրոպական Փաբրիկաների շոգիով: Բնաւորութեամբ, որպէս յիշեցի, նման են իրանց բնակած դաշտերի տափարակութեան,—նոյնպէս ցած, նոյնպէս հարթած եւ նոյնպէս տափակ են, բայց կրթութեամբ եւ խելքով—բարձր, քան թէ լեռնաբնակները: Զէնք չեն սիրում, վառօդից վախենում են, երկաթը գործ են ածում միայն բահի, մանգաղի եւ խոփի համար: Երկաթով պատերազմում են հողի հետ: Դաշտեցիք չը տուեցին մեզ ոչ մի աւազակ եւ ոչ մի քաջ մարդ, միայն հասցրին բարեսիրտ երկրագործներ եւ խորամանկ վաճառականներ: Գիւղատնտեսական մշակութիւնների մէջ աշխատութեան գլխաւոր ծանրութիւնը բառնում է իր վրա երիտասարդութիւնը: Ալեւոր հօրը, հասակն առած եղբօրը շատ չեն բանեցնում, խնայում են, որպէս խնայում են երկրագործական ծերացած անասուններին: Հասկանալի է, որ դաշտային տափարակ երկրների վրա, ուր հողը արգաւանդ է, ուր ջուրը առատ է, ուր բաւական տաք է լինում, ուր ձմեռը երկարատեւ չէ, գիւղատնտեսական պարապմունքները աւելի բաղադրեալ ձեւ են ստանում: Այս է պատճառը, որ մեր դաշտաբնակների ձեռքում երկրագործութիւնը իր բոլոր ճիւղերի մէջ բաւական ծաղկած եւ զարգացած վիճակի է հասել: Գիւղացին մշակում է ընդեղէնների եւ հացահատիկների բոլոր տեսակները, մշակում է զանազան ազարակային բանջարեղէններ եւ սեխանոցի պտուղներ: Ջրաւէտ տեղերում բրնձի մշակութիւնը կատարելագործութեան է հասցրած: Բայց բամբակի եւ մետաքսի մշակութիւնը գիւղական հարստութեան ամենամեծ մասն է կազմում: Այգեգործութիւնը նոյնպէս ծաղկած վիճակի է հասցրած, մրգեղէնների ամեն տեսակները հիանալի են. խաղողը որքան ազնուացրած է, այնքան գինին շատ տեղե-

րում դեռ կատարելագործված չէ: Անասնապահութեամբ չեն պարապում, որովհետեւ երկիրը մշակված լինելով, արօտատեղիներ չը կան: Պահում են այնքան անասուններ, որքան պէտք է իրանց վարուցանքի եւ տնտեսութեան համար:

Այժմ ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ մեր դաշտայնակ գիւղացիները թէ կրթութիւնով, թէ մտաւոր զարգացումով եւ թէ նիւթական կարողութիւնով գերազանցում են լեռնայնակներից, բայց չունեն այս վերջինների ոչ բարքի մաքրութիւնը, ոչ հոգու ազնւութիւնը, ոչ մարմնի առողջութիւնը եւ ոչ սրտի քաջութիւնը: Մի սաստիկ բաղձանք հարստանալու եւ խիստ շուտ հարստանալու թուլացնում է նրանց մէջ բարոյական կողմերը եւ ամեն ինչ զոհում է ագահութեան: Նրանք բաւական չեն իրանց վիճակով եւ միշտ բողոքում են, թէ սակաւ ունեն: Բայց մի փոքր հարստացան թէ չէ, թողնում են գիւղը եւ տեղափոխվում են դէպի քաղաքը: Այնտեղ այլ եւս չես կարող ճանաչել մեր գիւղացուն: Բայց պէտք չէ մոռանալ, որ այս դէպքում մեծ պատճառ է տալիս հողերի անձկութիւնը: Մեր գիւղերում հողը բնակիչների թւի համեմատ այնքան սահմանափակ է, որ չէ բաւականացնում նրանց ընդարձակ գործունէութիւնը: Շատերը այժմ սկսել են գնել կալուածատէր խաների, բէգերի եւ վրաց ազնուականների հողերը, որոնք խաղաթղթի եւ շռայլութեան մէջ սպառում են իրանց հարստութիւնը, եւ կալուածները անցնում են մի ժամանակ նրանցից ճնշված հայ գիւղացու ձեռքը: Ամեն տեղ նշմարվում է մի սաստիկ ձգտում դէպի նիւթական հարստութիւն, որ առհասարակ հայի դարեւոր յատկանիշն է եղել:

Ես սկսեցի գիւղացի մարդու երեխայութիւնից, կը վերջացնեմ մի քանի խօսքով նրա ծերութեան մասին: Երբ հասնում է խորին ծերութեան, գիւղացի հայրը շատ չէ

խառնվում ընտանեկան եւ տնտեսական գործերի մէջ. նա թողնում է, որ „ջահիլները“ անեն, որպէս խելքները կըտրում է: Երբեմն բարի խրատներ եւ խորհուրդներ է տալիս, բայց պահանջումներ չէ անում: Այդ հասակում նա յաճախ խօսում է տէրտէրի հետ, մօտենում է եկեղեցուն եւ առաւօտ ու երեկոյ ժամից յետ չէ մնում: Տան մէջ նրա վրա նայում են որպէս մի հիւրի վրա, որ եթէ երկար մնալու լինէր, կարող էր ձանձրացնել: Բայց նա դարձեալ չէ հրաժարվում իր հեղինակութիւնից, գոնէ ազդելով բարոյական կողմից: Գերդաստանի մէջ յարգանք է վայելում, եւ գիւղի մէջ համարվում է պատկառելի անձնաւորութիւն: Եթէ ծերունին փոքր ի շատէ կարողութեան տէր մարդ էր, նա ընդունվում է որպէս հասարակութեան հայր: Երբ նա նստած էր իր տան դռան մօտ, „տէր ողորմեա“ էր քաշում եւ սառած անդամները ջերմացնում էր արեգակի ճառագայթներով, գիւղացի կնիկները չեն համարձակվում այն կողմով անցկենալ, որ նրանց չըտեսնէ ծերունին: Երբ նա նկատում է մանուկներին դրսումը որ եւ իցէ անկարգութիւն անելիս, ում զաւակները որ լինէին նրանք, իրան իրաւունք էր համարում մօտենալ, յանդիմանել եւ երբեմն ականջներից բռնել ու ծիգ տալ: Փողոցով անցնելիս, նստած երիտասարդները ոտքի են կանգնում նրա առջեւ: Նրա աջը համբուրվում է, որպէս քահանայի ձեռք. ամեն ոք նրան „ափի“ կամ „պապի“ է կոչում եւ ցանկանում է լսել նրա խորհուրդները:

Մեր ալեւորները իսկապէս այնքան յիմար չեն լինում, որպէս առհասարակ լինում է շատ ազգերի մէջ ծերացած մարդը: Կեանքի մէջ այնքան տանջվել է նա, այնքան մաքառել է դժուարութիւնների դէմ, որ նրա մտածութիւնները դարձել են մի տեսակ ճշմարտութիւններ, որ հետեւանք էին դառն փորձերի: Այս յատկութիւնները աւելի երեւում են այն ալեւորների մէջ, որ մնացել են

պարսկական տիրապետութեան ժամանակներից: Ես առիթ եմ ունեցել մեծ բաւականութեամբ խօսակցել շատ գիւղացի ալեւորների հետ, որոնք բոլորովին անգրագէտ մարդիկ են եղել: Նրանց հայեացքները կեանքի պայմանների վրա այն աստիճան ուղիղ են լինում, որ բոլորովին զարմացք են պատճառում: Մի պարզ առածով, մի խորհրդաւոր առակով, մի կարճ նախադասութեամբ նրանք այնքան խորին միտք են յայտնում, որ հազիւ թէ մի փիլիսոփայ կարող էր բացատրել իր բոլոր մթին ֆրազների ուժով: Առողջ դատողութիւն—ահա յատկանիշը մեր գիւղական ծերունիների մտաւոր կարողութեան, ի հարկէ այն առարկաների վերաբերութեամբ, որ ծանօթ էր նրանց:

Համարեա բոլոր գիւղացի հայրերը մեռնում են առանց կտակ թողնելու, իսկ այդ ժառանգների մէջ խռովութիւն չէ պատճառում: Վաղեմի սովորութիւնները ընդունված են որպէս օրէնք. ամեն մէկը ստանում է իր բաժինը:



## Բ.

### Գաւառական քաղաքների երիտասարդութիւնը *

Կեանքը մեր գաւառական քաղաքներում շատ նման է միմեանց. բաւական է վերցնել մի քաղաքի երիտասարդութիւնը, եւ միւսների մասին կը ստանանք համանման տեղեկութիւն:

Այստեղ աւելի պարզ կերպով աչքի է զարկում այն սթափումը, որ նշմարեցինք գիւղերում: Ամեն ինչ մի անյայտ խթանով ձգտում է դէպի նորը, դէպի աւելի վայելուչը: Տարակոյս չը կայ, որ ամեն մի փոփոխութիւն կեանքի մէջ, որ ինքնուրոյնաբար չէ ծագում նոյն իսկ կեանքի փոքր առ փոքր եւ յաջորդաբար քաղաքակրթվելուց, այլ միանգամով ընդունում է ամեն ինչ դրսից եւ օրինակից,—մի այսպիսի կապկութիւնը շատ անգամ կարող է ձգել եւ ծուռ ճանապարհի վրա: Այդ դէպքում գաւառական քաղաքների վիճակի մէջ մեծ դեր է խաղում Թիֆլիսը:

Միայն մի քանի գաւառական քաղաքներ ունեն արքունի գիմնազիաներ, միւսները պրօգիմնազիաներ, իսկ մեծ մասը տարրական միջնակարգ դպրոցներ: Բացի յիշեալներից, համարեա բոլոր քաղաքներում հայերը ունեն իրանց ազգային կամ թեմական կամ ծխական դպրոցները: Վեր-

* Գաւառական քաղաքներ ես կոչում եմ Թիֆլիսի վերաբերութեամբ մնացած բոլոր քաղաքները:

ջինները լցված են լուսաւորչական հայերով միայն. օտարազգիներ, կաթոլիկ, կամ բողոքական հայեր չեն ընդունվում: Արքունական դպրոցների մէջ նոյնպէս հայ աշակերտների թիւը մեծամասնութիւն է կազմում. կարելի է մօտաւորապէս ասել, որ 10 ուսանողից 9-ը հայ է: Բայց պէտք է գիտենալ, որ ռուսական Հայաստանի քաղաքներից շատերի մէջ, որպէս են՝ Հին-Նախիջեւանը, Օրդուբադը, Շուշին, Գանձակ, Շամախի, Նուխի, Բաքու, Դէրբէնդ,—մահմետականները եթէ մեծամասնութիւն չեն կազմում, գոնէ թւով հայերից շատ պակաս չեն, այսուամենայնիւ նրանց զաւակները դպրոցների մէջ ամենաչնչին տեղ են բռնում: Կրօնական մոլեռանդութիւնը առաջնակարգ դեր է խաղում այստեղ: Զարմանալին այն չէ, որ դպրոցները լցված են ըստ մեծի մասին հայ աշակերտներով, այլ այն, թէ որպէս այդ ողորմելի հիմնարկութիւններից դուրս են գալիս նշանաւոր մարդիկ, որ սովորել էին միայն ռուսերէն գրել, կարդալ եւ սխալներով խօսել: Ես ճանաչում եմ նահանգական դատարանի նախագահ, հաշտարար դատաւորներ, նօտարիուսներ եւ այլ բարձր պաշտօնավարներ, որոնք բացի գաւառական միջնակարգ դպրոցներից, մի այլ տեղ չեն սովորել: Հասկանալի է, որ դրանք իրանց յառաջադիմութիւնով պարտական են ոչ թէ դպրոցներին, այլ իրանց սեփական աշխատութեանը, որ սկսելով ստոր ծառայութիւններից, եւ գործնականապէս վարժվելով, զարգանալով, վերջապէս ծերութեան հասակում հասել են բարձր պաշտօնների:

Դժուար է որոշել, թէ ո՛ր դասակարգի մանուկները յաճախում են արքունական եւ ո՛րը բուն ազգային դպրոցները, բայց այսքանը յայտնի է, որ արքունական դպրոցները մտնում են գլխաւորապէս որդիները մանր աստիճանաւորների, որոնց ծնողները միջոց չունէին նրանց Թիֆլիս ուղարկելու, որ պահանջում է մեծ ծախսեր: Իսկ մեր թեմական եւ ծխական դպրոցները մտնում են որդիները վաճա-

ռականների եւ արհեստաւորների, որոնք շատ փոքր պէտք ունենն ռուսաց լեզուի մէջ, եւ կամենում են շարունակել իրանց հօրերի պարապմունքը: Բայց լինում են եւ այնպիսիները, որոնց թիւը փոքր չէ, որոնք ազգային վարժարաններում պատրաստվելով մտնում են արքունական դպրոցները:

Բոլոր աշակերտները բնակվում են իրանց ծնողների հետ եւ բացի հօր տնից եւ ուսումնարանից մի ուրիշ տեղ չեն ճանաչում. շատ-շատ կարելի է տեսնել նրանց հասարակաց այգում, խումբով նստած իշոտիքի վրա, անշարժ նայում են զբօսնողներին: Մինչեւ անգամ մերձակայ գիւղերից եկած աշակերտները չեն վարձում առանձին սենեակներ բնակութեան համար, այլ կենում են մի բարեկամի կամ ծանօթի ընտանիքի մէջ: ծնողները վճարում են, գիւղից ուղարկելով իւղ, պանիր, ալիւր եւ այլն: Շատ գիւղացի աշակերտներ, որոնց ծնողները բոլորովին աղքատ են, վճարում են իրանց ծառայութեամբ: Դա մի զարմանալի միջոց է ուսում առնելու, որով յայտնվում է այն սաստիկ ծարաւը, որ քաշում է մեր մանուկներին դէպի դպրոցը: Գիւղից եկած աշակերտը մտնում է մի ընտանիքի մէջ որպէս ծառայ, առաւօտեան վաղ վեր է կենում, տնային գործերը կատարում է, յետոյ գնում է վարժատուն, այնտեղ մնում է մինչեւ ճաշ, եւ վերադառնալով, կրկին շարունակում է իր տնային ծառայութիւնները. երբ է պատրաստում նա իր դասերը,—դա մի հրաշք է. միայն գոհ է, որ նրան տալիս են մի կտոր հաց, հագցնում են տան հնոտիքներով, թէեւ պատահած ժամանակը սաստիկ ծեծում են, եթէ գտնում են որ եւ իցէ զանցառութիւն իր պարտաւորութիւնների մէջ: Այսպէս է սկսում գիւղացի աղքատ ուսանողը, եւ պատերազմելով անհագին դժուարութիւնների հետ, հասնում է մինչեւ համալսարան:

Գաւառներում ծնողները սաստիկ խիստ են դէպի

ուսանող աշակերտը. նրան պահում են զգոյշ հսկողութեան ներքոյ, որպէս մի աղջիկ, եւ դրսումը կորցրած ամեն մի աւելորդ րոպէի համար հաշիւ են պահանջում: Միջոց ունեցող հայրերը որդուն առանց սպասաւորի դպրոց չեն ուղարկում, եւ նա երեխայութիւնից սովորում է այն բանին, որ միշտ մէկը պէտք է առաջնորդէր նրան կեանքի մէջ: Այսպէս, բարոյականութեան հետ պահպանվում է եւ աշակերտի անծանօթութիւնը աշխարհի հետ: Ամենահարուստ աղայի որդին զրպանում չունի մի կոպէկ ծախսելու համար, եւ այդ, հօր կարծիքով, կը պահէր նրան շռայլութիւնից, բայց որդին երբեմն խարջելու փող է գտնում. որտեղից. Աստուած գիտէ . . .

Գաւառական քաղաքներում նշմարվում է նոյնը, ինչ որ տեսանք գիւղերում. այսինքն՝ թէ մանուկների եւ թէ ծնողների մէջ մի սաստիկ բաղձանք դէպի բարձրը եւ դէպի աւելի կատարեալը: Աւարտելով տեղային տարրական դպրոցում, աշակերտը աշխատում է դիմել Թիֆլիս, ինչ հնարքով եւ լինէր, մտնել այնտեղի գիմնազիաներից մէկի մէջ, եւ յետոյ Մոսկվայում կամ Պետերբուրգում համալսարանական բարձր ուսում ստանալ: Բայց ոչ բոլոր ծնողները ունեն այնքան նիւթական միջոցներ, որ կարողանային հոգալ որդու ծախսերը, այն ժամանակ ապրուստի հոգսն ընկնում է որդու վրա: Ես ծանօթ եմ եղել Թիֆլիսում մի քանի գաւառացի աղքատ գիմնազիստների հետ, որոնց աշխատութիւնները եւ անձնազրկութիւնը կատարեալ հերոսութեան են հասնում: Բնակվում են մի քանի հոգի միասին մի խոնաւ եւ նեղ սենեակում, առանց սպասաւորի, կերակրվում են օրը մի անգամ ամենաէժանագին հիւրանոցում, շատ անգամ ամբողջ օրեր անց են կացնում մի կտոր երշիկ ուտելով. բայց դարձեալ միշտ կը տեսնէք նրանց ուրախ եւ գոհունակ դէմքով: Գիմնազիայից տուն դառնալով, նրանք շտապով ճաշում են, յետոյ տա-

բաժնվում են քաղաքի մէջ, ընտանիքներում կամ մասնաւոր դպրոցներում դասեր տալու: Շատ անգամ նրանց աշակերտները մէկը միւսից կէս վերստ կամ աւելի հեռաւորութեան վրա են գտնվում, բայց այդ հոգ չէ, միայն թէ դասեր լինէին: Ամբողջ ճաշից յետոյ պտտելով քաղաքի մէկ ծայրից մինչեւ միւսը, վերադառնում են տուն ուշ—գիշերային պահուն, բոլորովին ուժաթափ: Մի կամ երկու գաւաթ թէյը սեւ հացով կազդուրում է նրանց, այնուհետեւ սկսում են պատրաստել իրանց սեփական դասերը: Ամառային արձակուրդները մեծ հունձք են ընծայում գաւառացի աղքատ գիմնազիստներին: Նրանք պատրաստում են զանազան դպրոցների այս եւ այն դասատունը մտնելու համար աշակերտներ եւ փող են ստանում: Այսպէս մի կողմից իրանք սովորելով, միւս կողմից ուրիշներին սովորացնելով, աղքատ գիմնազիստները շարունակում են իրանց ուսումը: Մի եւ նոյն ժամանակ նրանք չեն զրկում իրանց մի քանի բաւականութիւններից, որպէս են՝ երբեմն թատրոն գնալ, տեսնել մի լաւ պիեսա, լսել մի նշանաւոր երաժշտի, հասարակաց գրադարանից գիրք վեր առնել, կամ ընկերութեամբ վճարելով, ստանալ մի լրագիր, ամսագիր եւ այլն: Լինում են եւ այնպիսի երախտաւորներ, որ իրանց վաստակած փողի աւելորդով օգնում են ընկերներին, կամ ուղարկում են իրանց չքաւոր ծնողներին, որոնց թողել էին հայրենիքում: Յայտնի բան է, որ միջոց ունեցող գիմնազիստները, որոնք ստանում են ծնողներից 50—60 րուբլի, բոլորովին տարբեր պայմանների մէջ են սովորում: Լաւ զահաւորած սենեակ, լաւ ճաշ, զանազան տեսակ զուարճութիւնները եւ զբօսանքները նրանցից շատ ժամանակ են խլում, եւ այս պատճառով նրանք լինում են աւելի թոյլ ուսանողներ, քան թէ իրանց աղքատ հայրենակիցները:

Ես դառնում եմ դէպի այն աշակերտները, որոնք

*ուսանելու համար Թիֆլիս կամ ուրիշ քաղաքներ չեն գընում, այլ աւարտելով գաւառական միջնակարգ դպրոցներում, մնում են այնտեղ եւ գործում են իրանց հայրենիքում:*

*Մեր ժամանակից 20—30 տարի առաջ, եւ կարելի է ասել այն օրից, երբ ռուսները տիրապետեցին Կովկասը, հայ երիտասարդութեան առջեւ բացվեցաւ մի ընդարձակ ասպարէզ: Նոր տիրապետողները անծանօթ լինելով երկրին եւ տեղային պայմաններին, եւ որ աւելի կարեւորն է, իրանցից պատրաստի մարդիկ չունենալով, որ գիտենային զանազան ցեղերի լեզուները, կարօտ էին տեղային գործիչների նոր կառավարութեան բոլոր հիմնարկութիւնների մէջ: Հայերի մէջ գտան ընդունակ գործիչներ: Փոքր ի շատէ ռուսերէն խօսող երիտասարդը, փոքր ի շատէ ռուսերէն գրել կարդալ իմացողը ստացաւ տեղ, պաշտօն եւ ծառայութիւն: Դատարանները, պօլիցիաները, գանձարանները, փոստերը եւ մաքսատները լցվեցան հայերով: Ժամանակի սաստիկ պահանջը խտրութիւն չէր դնում ոչ անձերի եւ ոչ ընդունակութիւնների մէջ, բաւական էր, որ գործը „եօլայ էին տանում“: Այսպէս շատերը հարստացան, շատերը բարձր աստիճանների հասան:*

*Բայց հետզհետէ պահանջը պակսելով, եւ կառավարութեան հիմնարկութիւնները աւելի կանոնաւոր ձեւ ստանալով, ծառայել ցանկացողներից պահանջվեցաւ մի որոշ չափով գիտութիւն: Այժմ կարելի է հասկանալ, թէ գաւառական դպրոցներից դուրս եկած ողորմելի գիտութեան համեմատ ստացած պաշտօնը ինչ կը լինի: Համարեա բոլոր աւարտողները սկսում են գրագրութիւնից կամ ստոր պաշտօններից: Սարսափելի բան է ամբողջ կեանքում թեքված լինել գրասեղանի վրա, գրել եւ միշտ գրել: Մարդը դառնում կատարեալ մեքենայ, երբ աշխատում է ձեռքը միայն, իսկ գլուխը մնում է անգործ: Այստեղից հա-*

կանալի է այն իդիօտութեան հասած բթամտութիւնը մեր ծառայողների, որ իսկոյն աչքի է զարկում, երբ նրանց հետ խօսում ես: Մշտապէս թեքված լինելով գրասեղանի վրա, նրա իրանը նոյնպէս ծալված դիրք է ստանում.—այդ ներգործութիւնը անցնում է սրտի, հոգու եւ ամբողջ բնաւորութեան վրա: Նրա մէջ ուղիղ ոչինչ չէ մնում: Սաստիկ դիւրաթեք է լինում նա. ամեն հողմից շարժվում է եւ ամեն ճնշման ներքոյ խոնարհվում է: Այդ յատկութիւնները նպաստում են նրա յառաջադիմութեանը, եւ քիչ չէ պատահում, որ ծերութեան հասակում դառնում է ստօլնաչալնիկի օգնական, կամ մի աւելի բարձր պաշտօն է ձեռք գցում:

Դատաստանական բարենորոգումներից յետոյ՝ ռուսերէն խօսել եւ գրել կարդալ իմացող երիտասարդների համար բացվեցաւ մի նոր ասպարէզ եւս, աւելի ազատ եւ աւելի շահաւէտ: Բոլորը վարակվեցան փաստաբանութեան ախտով եւ սկսեցին սերտել օրէնքների ստատուաներ: Շատերը առանց ամենափոքր տեղեկութիւն ունենալու իրաւաբանութիւնից, ընդունում էին մեծ-մեծ գործեր: Դըրանք աւելի թարգմաններ էին իրանց հաւատարմատարների կողմից, քան թէ փաստաբաններ: Ժողովուրդը չը գիտէր դատարանի լեզուն, ստիպված էր խօսող վարձել: Բայց այս տեսակ անկիրթ, անուս փաստաբանների յաջողութիւնը մի քանի տարի միայն տեւեց, երբ սկսեցին նրանցից պահանջել մի որոշ չափով գիտութիւն եւ վկայական: Մեծ մասը զրկվեցաւ իր պարապմունքից եւ ասպարէզը մեաց բարձր ուսում ստացածներին:

Գաւառական դպրոցներում աւարտող երիտասարդներից ոչ բոլորը մտնում են արքունական ծառայութիւնների մէջ: Ստոր պաշտօնով, չնչին ռոճիկ ստանալով, դըժուար է ամբողջ ընտանիք պահել: Նրանք տեսնում են, որ վաղեմի ժամանակների շահերը չեն մնացել, եւ ինչ-

պէս ասում են՝ „խէրը դուրս է եկել“: Իսկ զինուորական ծառայութեան մէջ մտնողները բոլորովին աննշան թիւ են կազմում: Շատերը սկսում են վաճառականութիւն անել, ծեռք են զարկում կապալների, կամ ազգային դպրոցներում վարժապետութիւն են անում: Սակաւ է եւ այնպիսիների թիւը, որ քահանայ դառնային, կամ մտնէին մի վանքի մէջ վարդապետ լինելու համար: Առհասարակ պէտք է ասել, որ գաւառական դպրոցների պտուղները խիստ փոքր յառաջադիմութիւն են գործում կեանքի մէջ: Այժմ օր ըստ օրէ սահմանափակվում է այն բախտաւորների ասպարէզը, որոնք շատ փոքր գիտութեամբ, կամ ոչինչ գիտութիւն չունենալով, կարողանում էին առաջ գնալ: Ես չեմ խօսում մի քանի անհատների մասին, որոնք ինքնակրթութեամբ եւ բնական խելքով իրանց համար ճանապարհ են բաց անում առաջ գնալու:

Այժմ խօսենք գաւառացի ուսանողների մասին, որոնք դիմում են Մօսկվա, Պետերբուրգ, արտասահման, եւ համալսարանական բարձր ուսում ստանալով, վերադառնում են դէպի իրանց հայրենիքը:

Գաւառացի ուսանողները գլխաւորապէս աւարտում են իրաւաբանական եւ բժշկական ֆակուլտետներում. երկու մասնագիտութիւններ, որոնց մասին այժմ մեծ պահանջ կայ: Վերադառնալով իրանց հայրենիքը, փոքրիկ քաղաքի տժգոյն եւ տխուր կեանքը, կարծես, շուտով ձանձրացնում է նրանց. մի քանի ամիսներ որպէս հիւր մնում են ծնողների մօտ, յետոյ գնում են Թիֆլիս, ուր կեանքը աւելի փայլուն պայմանների մէջ է դրված, ուր ասպարէզը լայն է, ուր վերջապէս կարող են մի հարուստ աղջկայ հետ պսակվել: Կարծես նրանք այնքան մեծ եւ խոշոր մարդիկ լինէին, որ փոքրիկ քաղաքներում չեն զետեղվում: Խիստ սակաւներին միայն պատահում է մնալ գաւառներում. բայց նրանք եւս իրանց կնիկները բերում են Թիֆլիսից, հայրե-

նիքում իրանց զոյգը չեն գտնում: Իրաւաբանները կամ պարապում են փաստաբանութիւնով, կամ նահանգական դատարանի անդամի պաշտօն են վարում, կամ բաց են անում նոտարիուսի կանտօրա եւ կամ հաշտարար դատաւոր են դառնում որ եւ իցէ փոքրիկ քաղաքում: Բժիշկները չեն պարապում ազատ պրակտիկայով, այլ արքունական պաշտօնի մէջ են վարում իրանց ծառայութիւնը:

Բայց ինչ որ աւելի աչքի է զարկում, այն է, որ այդ բարձր ուսում առացած երիտասարդները գաւառներում շուտով ենթարկվում են այնտեղի շրջանին, եւ այն աստիճան փոխում են իրանց գոյնը, որ չես կարող ճանաչել, թէ մի ժամանակ դրանք ուսանողներ են եղել: Ես մի քանիսներին միայն ճանաչում եմ, որոնք իսկապէս չեն կորցրել իրանց արժանաւորութիւնները, գործում են, աշխատում են, եւ ցոյց են տալիս կենդանութեան նշոյլներ: Բայց մեծ մասը այն աստիճան վայրենացել եւ բթամտացել են, որ կարծես թէ, ապրում են մի առանձնացած կղզու մէջ, որը բոլորովին կտրված էր ուսումնական աշխարհից: Ոչինչ չեն կարդում, ոչ մի ժամանակակից հարցով չեն հետաքրքրվում, ուտում են, խմում են, քնում են, հաստանում են, եւ պատահած ժամանակ արհամարհանքով ժպտում են, երբ խօսում են նրանց հետ մի ազգային, կամ հասարակական խնդրի վրայ, կարծես, կամենալով ասել, թէ „մենք ամեն բան փորձեցինք, այստեղ ոչինչ չէ կարելի շինել“: Մեր դպրոցները, մեր եկեղեցին, մեր նոր լեզուն, մեր լրագրութիւնը, մեր նոր ծաղկող գրականութիւնը այն աստիճան բարկացնում են նրանց, որ մինչեւ անգամ ասել են տալիս, թէ „խենթացել էք, ո՞ւմ համար էք աշխատում, ո՞ւմ համար էք գրում, եթէ մեզ համար է, մենք ամեն բան գիտենք, իսկ եթէ ամբոխի համար է, նա չէ կարդում“: Անցնում են տարիներ, բարձր ուսում առացած երիտասարդը ալեւորում է, պառաւում է, բայց դառ-

ձեւալ նա իրան երեւակայում է նոր մտքի, նոր գաղափարների ներկայացուցիչ, չընայելով, որ նրա շուրջը ամեն ինչ փոխուել էր, իսկ ինքը անշարժ, անփոփոխ մնացել էր իր տեղում, յառաջադիմութեան մի քայլ անգամ չանելով։

Կը հաղորդեմ մի քանի գծեր առհասարակ գաւառական երիտասարդութեան կեանքից։

Հասարակական կեանքը գաւառական քաղաքներում, եթէ չասեմ բոլորովին քնացած է, բայց եւ չէ արտայայտում այն կենդանութիւնը, որ կարելի է տեսնել փոքր ի շատէ զարգացած հասարակութեան մէջ։ Գաւառները դեռ չեն թօթափել իրանցից հին պարսկական փօշին, ասիականութիւնը դեռ տիրում է իր բոլոր այլանդակ ձեւերի մէջ։ Ամեն մարդ իր տխրութիւնը եւ իր զուարճութիւնները անց է կացնում իր տան չորս պատերի մէջ։ Նա իր զգացմունքները չէ բաժանում հասարակութեան հետ։ Ամեն մարդ իր շահերի համար է աշխատում, իսկ հասարակաց շահերի վրա չէ մտածում։ Այստեղից ինքն ըստ ինքեան առաջ է գալիս անհատների առանձնութիւնը, եւ մի ընդհանուր կապ չէ ամբողջացնում նրանց այն միութեան մէջ, որ կոչվում է հասարակական կեանք։ Այս բանին փոքր արգելք չէ լինում եւ այն, որ հասարակութիւնը կազմված է տարբեր ցեղերից, որոնք բոլորովին բաժանված են միմեանցից թէ լեզուով, թէ կրօնով, թէ սովորութիւններով, թէ իրանց շահերով։

Երիտասարդութիւնը անց է կացնում իր օրերը կատարեալ դատարկութեան մէջ, եթէ նա իր գործերով զբաղված չէ, ուրիշ մի զուարճութիւն չը կայ, որ պարապ ժամանակում զբաղեցնէր նրան։ Մի քանի քաղաքներում վերջին տարիներում միայն յայտնվեցան հասարակաց պարտէզներ, ուր ծառերը դեռ ստուեր չեն ձգում, եւ ճեմելիքները ծածկված են խոտերով։ Խիստ սակաւ երեկոներ կարելի է տեսնել այնտեղ մի ծառայող ռուս զբօսնում է իր

կնոջ հետ. տեղացի կնիկները տան մէջ փակված են, նը-րանց դուրս չեն թողնում: Վաճառական եւ արհեստաւոր մարդիկ չէք տեսնի այդ պարտէզներում, նրանք ամբողջ օրը զբաղված են իրանց գործերով, երեկոյեան խանութնե-րը կը կողպեն, կը գնան, կը մտնեն իրանց տունը, դռները կը փակեն: Ժողովրդի այդ դասերը առողջութեան վրա չեն մտածում: Պարտէզներում կարելի է տեսնել երբեմն մի քանի ծառայողներ, եւ մանր աստիճանաւորներ միայն, եւ երբեմն դպրոցների վարժապետներին, երբ մանաւանդ ած-վում էր զինուորական մուզիկա:

Կաֆէներ եւ հիւրանոցներ կամ բոլորովին չը կան գաւառական քաղաքներում, կամ եթէ պատահում են այս-պիսիները, նրանք ծառայում են անցուդարձ անող օտարա-կանների համար միայն, երբ ցանկանում էին բաւական թանգ գնով մի փոքր ի շատէ մաքուր տեղ գտնել օթեւա-նելու: Ասիական հին քարվանսարաները դեռ չեն կորցրել իրանց նշանակութիւնը. նրանք ծառայում են եւ որպէս մթերանոց ապրանքների, եւ որպէս հիւրանոց նոյն ապրանք-ները կրող անասունների եւ վաճառականների: Վերջին ռուս-թիւրքական պատերազմի ժամանակ այն քաղաքնե-րում, որ աւելի մօտ էին կռուի դաշտին, որպէս են՝ Երե-ւանը, Ալէքսանդրապոլը, յայտնվեցան բազմաթիւ հիւրա-նոցներ, որոնք անմիջապէս փակվեցան պատերազմը վեր-ջանալուց յետոյ: Կաֆէն եւ հիւրանոցը դեռ ժողովրդի պա-հանջ չեն դարձել գաւառներում. բնիկներից ոչ ոք այնտեղ չէ մտնում, չէ ճաշում. ամեն մարդ ունի իր խոհանոցը. իսկ մի քանի ծառայող ռուսներով հիւրանոց պահպանել անկա-րելի է: Պէտք է ասած, որ նրանք էլ ենթարկվում են տե-ղային սովորութիւններին: Եւ այսպէս, յիշեալ հիմնարկու-թիւնները կամ գոյութիւն չունեն, կամ եթէ գտնվում են, երիտասարդութիւնը նրանց մէջ չէ խմբվում: Միայն Ալէքսանդրապոլում կարելի է տեսնել մի տեսակ կաֆէ-

ներ տաճկական ձեւով, ուր կարելի է նարգիլէ ծխել եւ փոքրիկ ֆինջաններով դառն սուրճ խմել: Այնտեղ յայտնվում է երբեմն մի թափառական երգիչ, ածում է թամբուրայի վրա եւ երգում է: Դա տաճկական սրճանոց է, որ բերել էին իրանց հետ այդ քաղաքի գաղթական բնակիչները Թիւրքիայի Հայաստանից: Ուրիշ հիմնարկութիւններ ես չեմ ճանաչում, ուր կարելի լինէր հաւաքվել, խօսակցել եւ ժամանակ անցկացնել, բացի գինետներից: Այդ անքարոյականացնող հիմնարկութիւնները մեծ դեր են խաղում գաւառացիների կեանքի մէջ:

Վերջին տարիներում միայն մի քանի քաղաքներում հիմնվեցան կլուբներ, որոնք միացնում են իրանց մէջ եւ հիւրանոց, ուր կարելի էր կերակուր գտնել, եթէ մի քանի ժամ առաջ կը պատուիրէիր պատրաստել: Կլուբները դարձեալ բնիկների պահանջներից առաջ չեն եկել, նրանց հիմնողները կամ ինիցիատիւ տուողները եղել են ռուս եւ օտարազգի ծառայողները, որոնց պէտք էր մի կենտրօն հաւաքվելու համար: Բայց որովհետեւ միայն փոքրաթիւ ռուսներով կլուբները պահպանվել կարող չէին, այս պատճառով եւ հայ ծառայողները իրանց ռուս մեծաւորների „խաթրը չը կոտրելու համար", հարկադրված անդամ են գրվել: Թէ այսպէս եւ թէ այնպէս, կլուբները, իրանց որոշեալ պայմանների պատճառով, հասարակաց հիմնարկութիւն չէ կարելի համարել, որովհետեւ նրանք մատչելի չեն այս եւ այն վիճակի մէջ գտնվող երիտասարդներին, եթէ անդամակցութիւն ունենալու միջոցներ չունէին: Այս բոլորից կարելի է եզրակացնել, թէ ինչ տեսակ հասարակութիւն է հաւաքվում կլուբներում,—միայն զինուորական եւ քաղաքական ծառայողներ, անգործ ազնուականներ, երբեմն վարժապետներ, բայց ոչ երբեք մի վաճառական կամ արհեստաւոր մարդ: Այն տեղ հաւաքվում են միմիայն թուղթ եւ բիլիարդ խաղալու համար: Թէեւ մի առանձին սենեակում

ձեւի համար գրասեղանի վրա ածած են մի քանի լրագիրներ, բայց նրանց վրայ ոչ ոք չէ նայում: Թղթախաղը որպէս ժանտախտ տարածված է գաւառներում, մանաւանդ այն հասարակութեան մէջ, որ համարվում է ընտրեալ, բարձր հասարակութիւն: Եւ այդ շատ բնական է, քանի որ ուրիշ զբաղմունք չը կայ, պէտք է մի բանով սպանել ժամանակը: Բայց մեծ մասը ընտրել է թղթախաղը որպէս ապրուստի միջոց: Կլուբներում շատ անգամ ամբողջ գիշերները լուսացնում են խաղալով: Շատ անգամ խաղում են առանց գրպանում մի կօպէկ փող ունենալու,— պարտքով միայն: Ամսական 15 րուբլի ստացողը մէկ գիշերվայ մէջ տանել է տալիս մի քանի հարիւրներ: Որտեղից պէտք է վճարէ: Աստուած գիտէ: Կլուբներում երբեմն լինում են պարահանդէսներ, ուր պարում են գլխաւորապէս ռուս կամ օտարազգի աստիճանաւորների կանայքը, որոնք այնքան սակաւ են թւով, որ հազիւ թէ 10 կ ա ւ ա լ է ր ի ն հասնում է մի դ ա մ ա:

Գաւառներում թատրօններ չը կան. շատ-շատ ամեն տարի լինում է սիրողների մի կամ երկու ներկայացում բարեգործական նպատակով: Տօմսակները զօռով են ծախվում:

Հասարակաց գրադարան կամ ընթերցարաններ չը կան: Ինձ պատահել է տեսնել մի քանի քաղաքներում բուն հայոց ընթերցարաններ, բայց երբէք չեմ տեսել, որ մի մարդ այնտեղ նստած կարդալիս լինէր: Եւ ի՞նչպէս կարելի է այդ ողորմելի հիմնարկութիւնները ընթերցարաններ կոչել, ուր բացի մի քանի հնացած գրքերից, բացի երկու-երեք լրագրից կարդալու համար ուրիշ բան չես գտնի: Գրավաճառանոց ոչ մի քաղաքում չը կայ, եթէ հարկաւոր էր մի գիրք, պէտք է բերել տալ Թիֆլիսից:

Կինը, որպէս գիւղերում, այնպէս էլ գաւառական քաղաքներում բոլորովին աննշան դեր է խաղում երիտասարդների կեանքի մէջ: Կարելի է կարճապէս ասել, որ

նրանք բացի իրանց մայրերից եւ քոյրերից ուրիշ կնոջ երբեւ չեն տեսնում: Եղբայրը եղբօր կնոջ հետ խօսակցելու իրաւունք չունի: Այստեղ հասկանալի է, որ օտար ընտանիքների մէջ մտնելիս, երիտասարդները միայն կարող են տղամարդերի հետ տեսնուել: Հարեմական դրութիւնը դեռ տիրում է ընտանիքի մէջ: Թողեալ այդ, երիտասարդները մուտք չունեն օտար ընտանիքների մէջ, եթէ մերձաւոր ազգական չը լինէին: Գաւառներում մի բարեկամի կամ ծանօթի տուն կարող ես մտնել այն ժամանակ միայն, երբ քեզ հիւր են կանչում: Գործի համար կարելի է տեսնուել փողոցում կամ բազարում, ուր կարող ես ուզած մարդին միշտ գտնել: Եթէ մի երիտասարդ սկսում է յաճախել որ եւ իցէ տուն, իսկոյն աչքի է զարկում, իսկոյն կասկածանքով են նայում, „այստեղ մի բան կայ“, մտածում է ամեն մարդ: Զամուսնացած երիտասարդը վարում է կատարեալ ամուրի կեանք: Գաւառներում բացարձակ ախտեր չը կան: Խիստ սակաւ է այն կնիկների թիւը, որ թեթեւ վարքի տէր լինէին: Մնում են „համբերատար տները“, ուր չես գտնի երկու կամ երեք կին ամբողջ քաղաքի համար: Այստեղ մտնում է երիտասարդը մեծ երկիւղով, ամաչում է ոչ միայն ծնողներից, այլ մինչեւ անգամ իր մտերիմ ընկերներից: Հասարակութիւնը խիստ սուր աչքով է նայում դէպի այս տեսակ մոլութիւնները: Եթէ պատահում է մի կին, որ փոքր ի շատէ շեղված լինէր բարոյական ճանապարհից, անպատճառ նա եկած պիտի լինէր Թիֆլիսից: Այսպիսիները լինում են ըստ մեծի մասին եկուոր ռուս ծառայողների աղախինները, որ չեն ցանկանում հետեւել տէրերին նրանց վերադարձի ժամանակ: Տեղային հայ կնիկները չեն մտնում հասարակաց տները, եթէ պատահում է մէկին մեղանչել, այդ անում է նա ծածկաբար: Իսկ մահմետական կնիկներին միշտ սպասում է մահ իրանց հաւատակիցների կող-

մից, երբ ոչ-մահմեդականների հետ յարաբերութիւն են ունենում: Կրօնական ֆանատիզմը մեծ վիհ է ձգել հաղորդակցութիւնների մէջ:

Վերջացնում եմ գաւառացիների մասին, ձգելով մի թեթեւ հայեացք նրանց հասարակական, ազգային եւ կըրօնական յատկանիշների վրա:

Առհասարակ պէտք է ասել, որ գաւառներում դեռ նոր է սկսվել նոր սերունդի մաքառումը հնի դէմ: Յաջողութիւնը նորերի կողմն է, հները հետզհետէ կորցնում են իրանց բռնած դիրքերը, որոնց վրայ դարերով ամրացած, իշխում էին: Ժամանակը, կեանքի այժմեան պայմանները, որոնց մէջ անընդունակ են հները, եւ մտաւոր զարգացումը նպաստում են նոր սերնդի յաղթութեանը: Ոչ միայն ապագան դրանց է պատկանում, այլ եւ ձեռք են ձգել եւ ներկայի մի մասը: Առաջ որդին հօրից խորհուրդներ էր հարցնում, այժմ հայրը ստիպված է որդու հետ մ ա ս լ ա հ ա թ ն ե ր անել: Գործը, իրաւ է, դանդաղ է ընթանում, բայց յաջողութիւնը մեծ ապագայ է խոստանում:

Երիտասարդութիւնը այժմ աշխատում է իր տիրապետութեան ներքոյ առնել հասարակաց յառաջադիմութեան երկու գլխաւոր գործիչները՝ ը ն տ ա ն ի ք ը եւ դ ը պ ր ո ց ը: Ընտանիքի մէջ նա ջանք է անում վերանորոգութիւններ մտցնել, իսկ դպրոցի հոգաբարձութիւնը իր ձեռքը առնել: Այդ անում է նա զուցէ առանց նախատեսութեան, առանց սկզբից խորհած նպատակների, եւ միայն դրդվելով իր հասակին յատուկ զգացմունքներից, բայց հետեւանքը բարի է: Ընտանիքի վերանորոգութիւնը սկսվում է կնոջ դրութիւնից. նոր պսակված երիտասարդը աշխատում է իր ամուսնին փոքր ի շատէ ազատ վիճակի մէջ դնել. փոխում է նրա հագուստի հին ձեւերը, ցանկանում է, որ նրա հետ վարվէին որպէս մարդու հետ, եւ պատահած ժամանակ նրան չէ թագցնում իր բարեկամներից:

Օրինակները սակաւ են, բայց այդ սակաւ օրինակները բազմաթիւ հետեւողներ են գտնում: Նոյնը անում է երիտասարդը եւ իր քոյրերի վերաբերութեամբ: Երբեմն պատահում են ընդդիմադրութիւններ. ալեւոր ծնողները հակառակում են, եւ երիտասարդը ստիպված է լինում թողնել իր հայրենական տունը եւ առանձին բնակվել:

Հասարակական գործերում, բացի դպրոցից, երիտասարդութիւնը մի ուրիշ հող չունի: Բայց պէտք է նկատել, որպէս ընտանիքի մէջ դեռ եւս իր հեղինակութիւնը չի կորցրել ծերունի հայրը, այնպէս էլ հասարակական գործերում դեռ եւս մեծ նշանակութիւն ունի ա ղ ա ն եւ ա ղ ա յ ո ւ թ ի ւ ն ը: Դպրոցների հոգաբարձութիւնից խիստ դժուար է լինում հեռացնել այդ յիմար, տգէտ եւ բոլորովին անգրագէտ փառասէրներին, որոնք, բացի վնասից եւ խռովութիւններից, մի այլ օգուտ չեն բերում: Բայց երիտասարդութիւնը փոքր առ փոքր յաղթող է հանդիսանում եւ իր ձեռքն է ձգում դպրոցները:

Խօսելով դպրոցների հոգաբարձութեան վրա, ես չեմ կարող չը յիշել վարժապետներին, որոնք ներկայացնում են գաւառական քաղաքների մտաւոր զօրութեան գլխաւոր մասը: Ամեն տեղ դպրոցների սաստիկ բազմացնելու եւ նոր դասատներ բացվելու համեմատ, պատրաստի վարժապետների թիւը շատ փոքր լինելով, իւրաքանչիւր բախտախնդիր, իւրաքանչիւր անուս տիրացուն մուտք է գտնում գաւառական դպրոցներում: Թիֆլիսում անգործ թափառող անաջողակները վազում են դէպի գաւառները եւ իրանց ձեռքն են առնում կրթութեան գործը: Յայտնի է, որ մարդիկ, որոնք իրանց գիտութեամբը չէին կարող ասպարէզ բաց անել, միշտ դիմում են խարդախ եւ անազնիւ միջոցների: Դրանով կարելի է բացատրել, թէ ի՞նչու ինտրիգան եւ խռովութիւնները միշտ անպակաս են լինում գաւառական դպրոցներից: Այստեղից հասկանալի է թէ ինչ

բարոյական ազդեցութիւն կարող էր ունենալ վարժապետը իր աշակերտների վրա, որոնք ամեն օր լսում՛ են նրա մասին շատ գայթակղական խօսքեր, նկատում՛ են նրա մոլի վարքը, ականատես են լինում՛ նրա կռիւներին իր ընկերների հետ: Վարժապետի բարոյականութիւնը ազդում՛ է նոյն իսկ ժողովրդի վրա, որ քննում՛ է նրա իւրաքանչիւր քայլը, եւ որի վարմունքը չէր կարող աննկատ մնալ փոքրիկ քաղաքում, ուր բամբասանքը հասարակաց խօսակցութեան գլխաւոր նիւթն է կազմում:

Մի քանի խօսք գաւառների մտաւորապէս զարգացած երիտասարդութեան մասին, որոնք ներկայացնում՛ են, եթէ այսպէս կարելի է կոչել, գաւառների ինտելիգենցիան: Բարձր ուսում՛ ստացած, համալսարանական երիտասարդութիւնը, որպէս նկատեցի այս գլխի մէջ, իրան հեռու է պահում՛ ազգային գործերից, նա ապրում՛ է իր համար, հասարակութիւնը չէ հետաքրքրում՛ նրան: Նրանք անպատւութիւն են համարում՛ թղթակցել որ եւ իցէ հայոց լրագրին (պէտք է խոստովանվել, որ շնորք էլ չունեն), աշխատակցել մի ամսագրի, կամ՛ հրատարակել մի փոքրիկ գրքոյկ: Ուսումը նրանց մէջ ոչինչ չէ արդիւնաբերում: Բացառութիւնները խիստ մասնաւոր են: Փոքր ի շատէ կենդանութիւն երեւում՛ է՝ ոչ մի բարձր դպրոցում՛ չաւարտած, ինքնուս երիտասարդների մէջ. դրանք են, որ ամեն բանի վրա դատում՛ են, շատ անգամ՛ ծուռ եւ սխալ կերպով, բայց գրում՛ են, քանի որ ուրիշ լաւը չը կայ: Դրանք գործում՛ են, որքան կարող է գործել մի մարդ որ բնական խելք եւ սաստիկ եռանդ ունի, բայց մի նշանաւոր բան արդիւնաբերելու համար պակասում՛ է նրան հիմնաւոր գիտութիւնը:

Կրօնական զգացմունքն աւելի վատ է պահված գաւառներում: Երիտասարդութիւնը թէեւ չէ համակրում՛ եկեղեցականին, բայց սիրում՛ է իր եկեղեցին: Մնահաւատու-

թիւնը երիտասարդների մէջ կորցրել է իր նշանակութիւնը. նախապաշարմունքները չեն կաշկանդում նրան: Տաների մէջ յայտնվում է բողոք դէպի եկեղեցական այս եւ այն ծիսապաշտութիւնը: Բայց դարձեալ՝ նրանք յաճախում են հանդէսներին, որովհետեւ կարծում են, թէ այդ բոլորը դեռ եւս հարկաւոր են անզարգացած ժողովուրդը իր եկեղեցու հետ կապված եւ հայութեան մէջ հաստատուն պահելու համար: Ազգայնութեան գաղափարը աւելի զարգացած է գաւառական երիտասարդութեան մէջ. նա հասնում է մինչեւ ազգասիրական մոլեռանդութեան: Բացի մի քանի մանր աստիճանաւորներից, չէք գտնի մէկին, որ ամօթ համարէր հայերէն խօսելը: Որպէս հասարակութեան մէջ, այնպէս էլ ընտանիքներում տիրապետում է մայրենի լեզուն: Բայց չեմ կարող չյիշել հայերի այն ընդհանուր մոլութիւնը, որ սովորական է դարձել եւ մեր գաւառներում. տեսնում ես մի տեղ, մի ժողովի մէջ, մի խումբի մէջ տասն հայ, իսկ նրանց թւում մի օտարազգի. անպատճառ տասն հոգի հայերը կը սկսեն մէկ օտարականի լեզուով խօսել, ինչ ազգից եւ լինէր նա: Չը գիտեմ ե՞րբ պէտք է հայը ազգային հպարտութիւն ունենայ:



## Գ.

### Ուսանող երիտասարդութիւնը

Իսկապէս մենք չունենք այն տարրը, որ հասկացվում է բառերով ո ւ ս ա ն ո ղ կամ ո ւ ս ա ն ո ղ ո ւ թ ի ւ ն: Ասելով գերմանական ուսանողութիւնը, Փրանսիական ուսանողութիւնը, մենք իսկոյն ըմբռնում ենք մի միտք բոլորովին որոշ եւ կազմակերպված տիպերի մասին, որ յայտնի են իրանց գաղափարներով, ձգտումներով եւ յատկանիշ առանձնութիւններով: Բայց հայ ուսանող ասելով, մենք հասկանում ենք միայն բարձր ուսում ստացած երիտասարդ, որ սովորել էր այս եւ այն համալսարանում—եւ աւելի ոչինչ: Այդ տարրը մեզանում մի որոշ ձեւ չէ ստացել. նա դեռ իր քաօսական դրութեան մէջն է գտնվում: Եւ շատ բնական է. որովհետեւ մի ազգ, որ սեփական համալսարան չունի, նա չի էլ կարող ունենալ իր յատուկ ուսանողութիւնը: Գիտութիւնը, արդարեւ, համազգային սեփականութիւն է, բայց ոգին, որ համալսարանի մթնոլորտը ներշնչում է ուսանողի մէջ եւ տալիս է նրա բնաւորութեանը մի որոշ գոյն,—դա առանձնական նշանակութիւն ունի: Այդ պատճառով շատ դժուարին է ներկայացնել հայ ուսանողութիւնը որպէս մի կազմակերպված մարմին եւ նկարել նրա պատկերը իր ամբողջական ձեւի մէջ, քանի որ նրանք ուսանում են զանազան պետութիւնների զանազան համալսարաններում: Այսուամենայնիւ, ես կաշխատեմ իմ ըն-

թերցողներին մօտաւորապէս ծանօթացնել այդ հասարակութեան հետ, որ համարվում է նոր սերունդի ներկայացուցիչը *:

Հայ ուսանողները սովորում են մեծ մասամբ Ռուսաստանի համալսարաններում եւ ընտրում են գլխաւորապէս Ս. Պետերբուրգի եւ Մօսկվայի համալսարանները, իսկ փոքր թւով դիմում են արտասահման՝ Գերմանիա, Փրանսիա եւ Զվիցերիա: Սկսենք առաջ Ռուսաստանի ուսանողների մասին:

Ես ի նկատի ունեմ երկու մայրաքաղաքների, այսինքըն Ս. Պետերբուրգի եւ Մօսկվայի ուսանողներին: Հայ ընտանիքի մէջ սեղմված եւ փոքրիկ գաւառական քաղաքներում դեռ աչքերը չը բացված երիտասարդը յանկարծ ընկնում է մեծ աշխարհի ծովի մէջ: Ընկերները վարձում են նրա համար մի զահաւորած սենեակ, եւ նա սկզբում, կարծես, վախենում է դրսի լոյսից եւ պտըտվում է իր համազգիների նեղ շրջանի մէջ: Բաւական պատրաստված չը լինելով կեանքի համար, նա իրան միշտ հեռու է պահում հասարակութիւնից. ռուս կամ օտարազգի ուսանողների հետ յարաբերութիւն չէ կազմում, նրանց ընտանիքների մէջ չէ մտնում, եւ հայ ընտանիքներից հազիւ է պատահում, որ իրանց մօտ ուսանողներ ընդունէին, եթէ տանը հասած աղջիկ չունէին, որին դժուար էր մայրաքաղաքում „խարջել": Երբեմն նա տեսնվում է հայ հասարակութեան հետ, երբ ազգասիրութիւնից դրդված, կիրակի կամ տօն օրերում հայոց եկեղեցի է գնում: Եւ այսպէս բնականաբար կազմվում է հայ ուսանողների նեղ եւ սահմանափակ շրջանը, որ միշտ առանձնացած եւ անխառն է

* Ես իմ տեղեկութիւնները առհասարակ կեանքի մասին քաղել եմ զանազան գրքերից, իսկ ինչ որ վերաբերում է հայ ուսանողներին, այդ վերաստուգել եմ իմ բարեկամներից:

մնում օտար տարրերից: Ոմանք մեր ազգասէրներից խիստ զոհացուցիչ են գտնում այդ դրութիւնը, մտածելով, թէ այսպէսով հայ ուսանողները պահպանում են իրանց հայութիւնը եւ չեն օտարանում: Բայց իմ կարծիքով, կեանքի մէջ կուլ չը գնալու համար պէտք է մտնել նոյն իսկ կեանքի մէջ, որպէս ծովի մէջ չը խեղդվելու համար պէտք է անպատճառ ջրի մէջ մտնել եւ լողալ սովորել . . .

Այսպէս առանձնացած կեանք վարելով, իրանց նեղ հայկական շրջանից չը դուրս գալով, օտարազգի ուսանողներից եւ օտարազգի ընտանիքներից միշտ իրանց հեռու պահելով,— հայ ուսանողները, թէեւ պահպանում են իրանց ցեղական յատկութիւնները, բայց մի եւ նոյն ժամանակ չեն փոխում իրանց բնաւորութիւնը եւ իրանց վարքը, որ շատ կարօտ էին քաղաքակրթվելու: Բացի դրանից, նրանք մտաւորապէս եւս չեն զարգանում: Ուսանողը աւելի շատ բան սովորում է դրսի աշխարհից, քան թէ համալսարանի ամբիօնից: Կեանքը—ահա մարդու գլխաւոր վարժապետը: Ով որ իրան հեռու է պահում կեանքից, մընում է անկիրթ, անտաշ եւ վայրենի: Դրանով կարելի է բացատրել հայ ուսանողների նեղ աշխարհահայեցութիւնը, որ միշտ սահմանափակված է մնում նախապաշարմունքների շրջանակի մէջ:

Ես յիշեցի հայկական ուսանողների հայկական շրջան եւ այլն, բայց իսկապէս այդ էլ չը կայ: Ի՞նչ շրջան կարող է կազմվել հայ ուսանողների մէջ, քանի որ նրանց մէջ ոչինչ կապ չը կայ, քանի որ ոչ մի ընդհանուր միտք եւ ոչ մի ընդհանուր նպատակ չէ միացնում նրանց: Նրանք միայն հայրենակցական եւ ազգակցական կապեր ունեն, եւ աւելի ոչինչ: Հայ ուսանողը երբեմն հայ ընկերի մօտ է գնում, նրա հետ տեսնվում է, նրա հետ ժամանակ է անցկացնում, որովհետեւ մի ուրիշին չէ ճանաչում: Իսկ նա իր ներքին կեանքի մէջ եւս բոլորովին առանձնացած է ապ-

րում, առանց սերտ յարաբերութիւններ ունենալու նոյն իսկ իր ազգայինների հետ: Կարճ ասեմ, նա իր բաւականութիւնները, իր զուարճութիւնները եւ իր զարգացումը գտնում է իր սենեակի չորս պատերի մէջ: Բացառութիւնները խիստ աննշան են:

Կը բերեմ մի քանի պատկերներ նրանց կեանքից:

Մտնում ես ուսանողի սենեակը, այնտեղ կը տեսնես մի քանի աթոռներ, մահճակալ եւ գրասեղան, որի վրայ մի թղթի կտոր անգամ չես գտնի գրելու համար: Թանաքամանի մէջ մի անգամ ածված մելանը վաղուց ցամաքել է: Գրքեր չես տեսնի: Գրասեղանի վրայ դրած են մի քանի վիմագրութեամբ տպված տետրակներ միայն՝ դրանք պրօֆէսօրի լեկցիաների տետրակներն են, որոնց վրայ մի թիզ փոշի է նստած, երեւի, ուսանողի ձեռքը վաղուց չէ դիպել նրանց: Սենեակի մէջ աչքի են ընկնում կանացի պաճուճանքներ, ժապաւէնի կտորներ, երկայն գուլպաներ եւ այլն: Դրանք ի՞նչ են շինում այնտեղ:—Ուսանողը սիրուհու հետ է ապրում:

Եթէ տեսնենք, թէ ինչ տեսակ կնիկներ դեր են խաղում ուսանողների կեանքի մէջ, հասկանալի կը լինի նրանց քաղաքակրթութեան աստիճանը: Մօսկվայում եւ Պետերբուրգում կայ մի ամբողջ դաս աղջիկների, որոնք կոչվում են սպիտակեղէնների կարուհիք (белошвейка). այդ ողորմելի արարածները մօղնի մազազինների գործաւորներ են, որոնք երբ ձանձրանում են աշխատութիւնից, մտնում են ուսանողի մենարանը զուարճանալու համար: Մի կեղծ սէր կապում է ուսանողին այդ աղջիկների հետ, որոնք այնքան անգամ խաբված են երիտասարդներից, որ իրանք էլ այլ եւս չեն հաւատում սէրին: Ուսանողը անդադար փոխում է նրանց, որպէս հնացած կօշիկներ: Բայց լինում են եւ այնպիսի միամիտներ, որոնք խաբվելով երիտասարդի խոստմունքներից, իսկապէս սիրում են նրան: Ե-

րիտասարդը տարիներով ապրում է նրա հետ, աւարտում է իր ուսումը եւ վերադառնում է իր հայրենիքը, իսկ սիրուհին, որպէս մի լաթի կտոր, ձգում է մի կողմ, առանց խղճահարուելու եւ առանց բնաւ մտածելու, թէ ում խնամակալութեանն է թողնում իր սիրոյ պտուղները . . . Գընացող ընկերոջ սիրուհին մնում է մնացողին, եւ այսպէս նա անցնում է ձեռքից ձեռք եւ երբէք չէ դուրս գալիս ուսանողների աշխարհից:

Իմ վերեւի նկարագրութիւնը դեռ բաւական ազնիւ ձեւն է ուսանողների յարաբերութեան կանանց հետ: Բայց լինում են եւ այնպիսի փչացած բնաւորութիւններ, որ յաճախում են եւ հասարակաց տները: Մէկը այս ասպարէզի հերոսներից ինձ պատմում էր, թէ ինքը ամբողջ օրը քնում էր, իսկ գիշերը սկսում էր ամենաբարձր հասարակաց տնից, ուր կարելի էր գտնել պիանո, լաւ նախաճաշիկ եւ նուրբ ըմպելիքներ, եւ առաւօտեան վերջացնում էր այն ցած եւ կեղտոտ տներով, ուր բաւական էր հինգ կոպէկ միայն ծախսել:—Ի՞նչու, հարցրի ես:—Այնպէս, այդ զուարճութիւն էր պատճառում ինձ, պատասխանեց նա: Բայց պատահում են եւ այնպիսի անազնիւներ, որ գըտնում են մի պառաւ, բայց հարուստ այրի կին եւ ապրում են նրա հետ եւ նրա հաշւով:

Ուրիշ զուարճութիւններից, որ կարող էին կրթողական ազդեցութիւն ունենալ, զուրկ են հայ ուսանողները: Թատրոն հազիւ են գնում, թատրոնով հետաքրքրւում են այն ժամանակ միայն, երբ պէտք էր տեսնել մի սիրուն պարուհի, կամ լսել մի հռչակված երգչուհու: Կաֆէներում ժամանակ չեն անցկացնում, այլ իրանց հայկական սովորութեամբ հաւաքւում են մի ընկերոջ սենեակը, „տնավարի“ կերպով արաղ են խմում, ծխում են եւ թուղթ են խաղում,—արաղը եւ թղթախաղը, ահա գլխաւոր պարապմունքները, որ զբաղեցնում են ուսանողներին: Այսպիսի

*շրջաններում, որոնք խաղալու փող չունեն, նստում են, կամ ապուշ կերպով նայում են խաղացողների գործողութեանը, եւ կամ մի կողմ քաշված, խօսում են, վիճում են բոլորովին իրանց անծանօթ, բոլորովին չը սովորած եւ չը կարդացած առարկաների վրա: Հիւրանոց մտնում են միայն ճաշելու համար եւ անմիջապէս դուրս են գալիս: Ուսանողը երբեմն ամբողջ ամիսներ ուտում է մի հիւրանոցում պարտքով. երբ պարտքը շատացաւ եւ անկարող էր վճարել, փոխում է հիւրանոցը, գտնում է մի նորը, ուր նրան չեն ճանաչում եւ նոր կրեդիտ է բաց անում:*

*Հայ ուսանողները առհասարակ փոքր են սովորում, ոչ թէ այն պատճառով, որ նրանցից շատ ժամանակ է խլում արաղը, թղթախաղը եւ սիրուհին, ոչ, այլ ընդհանրապէս ծոյլ են: Խիստ սակաւ է այն ուսանողների թիւը, որոնք հեշտութեամբ յաճախում են դասախօսութիւններ լսելու, ոմանք գնում են շաբաթը մի անգամ, ոմանք ամիսը մի անգամ, իսկ ոմանք ամենեւին չեն գնում: Մեծ մասը, համարեա 10-ից 8-ը լսում են դասախօսութիւններ իրաւաբանական եւ բժշկական ֆակուլտէտներում: Մի բան, որ աւելի յատկանիշ է Ռուսաստանի մեր ուսանողներին, այն է, որ նրանց չէ հրապուրում գիտութեան սէրը, այլ ընտրում են այս եւ այն մասնագիտութիւնը որպէս միջոց կեանքի մէջ ասպարէզ բացելու եւ ապագայում իրանց համար որ եւ իցէ դրութիւն հաստատելու: Աւելի պարզ ասած, նրանք սովորում են դ ի պ լ օ մ ի համար: Բայց դիպլօմ ստանալու համար մեծ գիտութիւն, մեծ աշխատութիւն պէտք չէ, բաւական էր տարին մի քանի անգամ դասախօսութիւններ լսել, յետոյ սերտել մի քանի տետրակներ եւ քննութիւն տալ: Որպէս համբակի սերտողութեամբ լցնում է իր գլխում ուսանողը գիտութեան պաշարը այդ ողորմելի վիմագրական տետրակներից, այս-*

*պէս էլ շուտով դուրս է թռչում նրա գլխից, երբ թողնում է համալսարանը։ Բայց դիպլօմը իր զօրութիւնը չէ կորցնում։ Իմ խօսքը բժիշկների մասին չէ, որոնցից պահանջվում է մի որոշ չափով գործնական աշխատութիւններ, բայց մնացեալ մասնագիտութիւնների մէջ գլխաւորապէս գործ է կատարում յիշողութիւնը, աշակերտի սերտողութիւնը, եւ ոչ թէ գիտութեան իւրացնելը, կամ ուրիշ խօսքով՝ մարսելը։ Եւ ի՞նչով կարող էր հարստացնել ուսանողը իր մտաւոր պաշարը, երբ նա իր մասնագիտութեանը վերաբերեալ ոչ մի ուրիշ գիրք չէ կարդում, այլ եւս չեմ խօսում այն զանցառութեան վրայ, որ նա հետաքրքրվէր զանազան գիտութիւններով, որոնք իր մասնագիտութեան հետ կապ չունէին։*

*Ռուսաստանի հայ ուսանողը ոչինչով չէ զանազանվում Ռուսաստանի հայ վաճառականից։ Երեւակայեցէք ձեզ մի թիֆլիսեցի, որ գնացել էր Մօսկվա. նա առնում է այն ապրանքները միայն, ինչ որ պէտք էր իր կրպակի համար, ինչ որ ինքը ծախում էր, ինչ որ իր վաճառականութեան մասնաբաժինն էր կազմում. բայց ուրիշ ինչ էր վաճառվում առեւտրական հրապարակի վրայ, որոնցից դարձեալ կարելի էր շահվել,—նրանցով չէ հետաքրքրվում։ Նոյն կերպով վարվում է եւ հայ ուսանողը, նա բացի իր մասնագիտութիւնից ուրիշ գիտութիւններով չէ հետաքրքրվում։ Այս է պատճառը, որ մեր ուսանողներից չեն յայտնվում զօրաւոր տաղանդներ կամ փոքր ի շատէ խոշոր գիտնականներ։ Հայ ուսանողի ամբողջ գործունէութիւնը սահմանափակվում է մի հ ա շ ի ւ ի մէջ, սկզբից նախագծած մի վաճառականական հաշւի մէջ, որ հասցնում է նպատակին։ Այս հաշւից դուրս նա ուրիշ բան չէ ճանաչում։ Գիտութեանը վերաբերվում է նա բոլորովին նրա պաշտօնական կողմից։ Նա հաշուել է, թէ բժիշկ, փաստաբան, նօտար լինելու համար պէտք է այսչափ գիտութիւն,*

որ կարողանայ դիպլօմ ստանալ, եւ այն չափից չէ անց կենում:

Ուսանող մանկտին ամեն ազգի մէջ եւ ամեն ժամանակներում եղել է ազատութեան սիրահար, բռնութեան թշնամի, յառաջադիմութեան առաջնորդ եւ լուսաւորութեան առաքեալ: Նա պաշտպան է հանդիսացել նեղեալին եւ պահանջել է արդարութիւն մարդկանց յարաբերութիւնների մէջ: Նա ցանկացել է ընդհանուր մարդկային բարին, ցանկացել է, որ մարդը ապրէր հանգիստ, գոհ, եւ հարստահարիչ ձեռքը չըյափշտակէր նրա օրեկան հացը: Բայց հայ ուսանողը չափազանց եսական է. նա երբէք չէ յափշտակվում ընդհանուր մարդասիրական բարձր գաղափարներով: Նա մինչեւ անգամ չէ մտածում իր ազգի վրա. այլ մտածում է իր անձի մասին միայն: Իդէալ կոչված բանը նրա համար չը կայ. նա սաստիկ նիւթապաշտ է:

Եւ որտեղից կարող էր նա հրապուրվել բարձր գաղափարներով, երբ գրքեր չէ կարդացել, ծանօթ է մի քանի հեղինակների անունների հետ, առանց նրանց գործերի հետ ծանօթ լինելու. լրագրութեան չէ հետեւում, եւ ամենեւին չէ հետաքրքրվում, թէ ինչ է կատարվում իր շուրջը, կամ ի՞նչ են անում զանազան ազգեր զանազան երկրներում: Այս է պատճառը, որ հայ ուսանողի աշխարհահայեցութեան շրջանակը մնում է խիստ նեղ, եւ նա այնքան փոքր ծանօթ է ժողովուրդների պատմութեան եւ նրանց կենցաղավարութեան պայմանների հետ, որ իր զարգացումով շատ չէ զանազանվում մի հասարակ գիմնազիստից: Բայց գտնվում են եւ այնպիսի խենթեր, որոնք գրաւվում են բուն ռուս ուսանողների մէջ բորբոքվող մի քանի նոր գաղափարներով, որպէս անմիտ թիթեռը յափշտակվում է ճրագի լոյսով եւ այրում է իր թեւիկները . . .

Աւելորդ չէր լինի համեմատութեան համար յիշել մի քանի գծեր ռուս ուսանողների մասին:

Ռուս ուսանողները, իրաւ է, նոյնպէս ծոյլ են, ընտրած մասնագիտութեանը չեն հետեւում, վատ են սովորում, բայց նրանք ունեն մի առաւելութիւն, որից զուրկ են հայ ուսանողները: Ռուս ուսանողները շատ կարդում են, եթէ ոչ գիտնական գրքեր, գոնէ տենդենցիայով գրված ռոմաններ, կրիտիկաներ, փիլիսոփայութիւններ, հետեւում են ժամանակակից մտքերի եւ շարժումների, եւ հետաքրքրվում են ժողովրդի ստոր դասի վիճակով, զբաղվում են քաղաքական մտքերով: Կայ եւ մի ուրիշ բան, որ ռուս ուսանողների գլխաւոր յատկանիշն է, եւ որով որոշվում են նրանք եւրոպական բոլոր ուսանողներից, այն է, որ ռուս ուսանողը խիստ բարձր կարծիք ունի կնոջ վրա: Նա կնոջ մէջ տեսնում է մի զօրութիւն, որ մեծ դեր պիտի խաղայ ժողովուրդների քաղաքակրթութեան մէջ, եւ ամեն ջանքով աշխատում է մշակել, զարգացնել այդ զօրութիւնը: Այս պատճառով նա ոչ միայն մեծ նշանակութիւն է տալիս կնոջ դաստիարակութեանը, այլ ինքը ընտանիքների մէջ մտնելով, միսիոնարի եռանդով աշխատում է անձնապէս ազդել, ներգործել կնոջ վրա, զարգացնել նրա միտքը եւ ծանօթացնել ժամանակի ոգու հետ: Այս է պատճառը, որ նա իրան հեռու չէ պահում ընտանիքներից: Տեսնում էք մի ուսանող որ եւ իցէ ընտանիքի մէջ ծանօթանում է մի մանկահասակ աղջկայ հետ, հէնց որ նկատեց նրա մէջ ընդունակութեան մի նշոյլ, իսկոյն կը սկսէ ինքնակոչ վարժապետի դեր կատարել: Նա այնքան շատ կարդացել է, այնքան բազմակողմանի հմտութիւններ ունի, որ աղջիկը երբէք իրանից չի ձանձրանայ: Ազդեցութիւնը սկսվում է անզգալի կերպով: Ուսանողը վազ կը տայ այս եւ այն գրատունը, կը բերէ նրա համար նոր գրքեր. ցոյց կը տայ թէ այս ինչ ամսագրի մէջ մի հետաքրքիր յօդուած է

*տալված, որ արժէր կարդալ շատ անգամ՝ ինքը կը նստէ, կը կարդայ նրա համար, կը բացատրէ, կը վիճէ նրա հետ, վերջապէս այնքան կաշխատէ, մինչեւ աղջկայ միտքը բոլորովին կը դարձնէ ուսումնասիրութեան վրա: Եթէ աղջիկը միջոցներ չունէր, նա իր վերջին կոպէկները կը զոհէ նրա համար զանազան ուսումնական պարագայք գնելով, եւ չի խնայի ոչ ժամանակ եւ ոչ աշխատութիւն նրան զարգացնելու համար: Պատահում՝ է, որ աղջիկը բոլորովին անքախտանում՝ է ուսանողի ազդեցութեան տակ, այսուամենայնիւ, նրանից պատրաստվում՝ է մի էակ, որ հակառակ է ընթանում՝ հասարակական նախապաշարմունքների դէմ: Ուսանողների ազդեցութիւնն է պատճառ, որ այժմ՝ բազմաթիւ ռուս աղջիկներ եւրօպական զանազան ուսումնական հիմնարկութիւնների մէջ դասախօսութիւններ են լինում:*

*Բայց հայ ուսանողը կնոջ վրա բոլորովին առիական կէտից է նայում: Ապրելով իր հայրենակիցների նեղ շրջանում, եւ ուրիշ խումբերի մէջ չը մտնելով, նա զոհէ չէ ստանում՝ այն արտաքին փայլը՝ որ տալիս է մարդուն մեծ աշխարհի քաղաքակրթութիւնը: Դրսից նա երեւում՝ է իր կոպտութեամբ եւ անշնորք դանդաղկոտութեամբ, իսկ ներսից՝ խորին դատարկութեամբ: Նա այնքան սակաւ է կարդացել, այնքան սակաւ ծանօթ է, թէ ինչ է կատարվում՝ իր շուրջը, որ անընդունակ է վարել որ եւ իցէ լուրջ եւ բաղադրեալ վիճաբանութիւն: Մի քանի սերտած եւ „մօդնի“ ֆրազներից յետոյ նրա գիտութեան պաշարը սպառվում՝ է եւ սկսում՝ է դուրս տալ ծիծաղելի յիմարութիւններ:*

*Ես նկարագրեցի Ռուսաստանի հայ ուսանողներին, բոլորովին նրանց մթին կողմերը վեր առնելով, բայց անարդարութիւն կը լինէր ասել, թէ բոլորը ծոյլ են, բոլորը ոչինչ չեն սովորում, բոլորը անքարոյական են եւ այլն: Կան եւ ճշմարիտ աշխատասէր ուսանողներ, բայց դժբախ-*

տաքար այսպիսիների թիւը այնքան փոքր է, որ պէտք է բացառութիւն համարել: Դժուար է ճշդութեամբ որոշել, թէ մեր ժողովրդի ո՞ր դասակարգին են պատկանում լաւ ուսանողները: Միայն մի երեւոյթ, որ ճշմարիտ է, այն է, որ գիւղացիները գերազանցում են քաղաքացիներից, քաղաքացիները թիֆլիսեցիներից, իսկ աղքատները՝ հարուստներից: Ի՞նչից է այդ, արդեօք ընտանեկան կրթութիւնի՞ց, թէ՞ առանձին ֆիզիօլօգիական պատճառներից, ես պարզապէս բացատրել չեմ կարող: Բայց հասկանալի են պատճառները, թէ ինչու աղքատ երիտասարդները աւելի յաջողակ ուսանողներ են լինում քան թէ հարուստները: Իսկ այն, որ գիւղացի եւ քաղաքացի երիտասարդները միշտ գերազանցում են բուն թիֆլիսեցիներից, ես այդ երեւոյթին մի ուրիշ պատճառ չեմ գտնում, բացի նրանից, որ քաղաքացիների եւ գիւղացիների ընտանեկան կրթութիւնը աւելի լաւ պայմաններով է կատրվում. նրանք երեխայութեանից սովորում են աշխատութեան, եւ որ ամենագլխաւորն է, նրանք ունեն բարոյական հաստատուն հիմք, մինչդեռ թիֆլիսեցի երիտասարդը հէնց ընտանիքից փչացած է դուրս գալիս թէ բարոյապէս եւ թէ մտաւորապէս: Մի եւ նոյն կերպով կարելի է բացատրել եւ այն երեւոյթը, որ թիֆլիսեցի երիտասարդը Ռուսաստանի դպրոցներում ամբողջովին օտարանում է, որովհետեւ հէնց սկզբից անունով միայն հայ էր, չէր սովորել իր մայրենի լեզուն, չէր կրում իր ազգի ցեղական առանձնութիւնները: Բայց մի երեւանցի, մի ղարաբաղցի եւ մի լոռեցի երիտասարդը, որ կրթվել էր բուն հայկական ընտանիքում, որ գիտէր իր մայրենի լեզուն, երբէք չէ օտարանում, այլ ընդհակառակըն, աւելի հաստատվում է իր ազգայնութեան մէջ:

Քաղաքացի եւ գիւղացի ուսանողները լինում են կամ բոլորովին աղքատ, կամ փոքր միջոցներ ունեցող երիտասարդներ: Անկարելի է նկարագրել, թէ որպիսի դժուա-

բութիւնների դէմ պատերազմելով, աղքատ ուսանողը կարողանում է աւարտել իր ուսումը։ Նրա տոկունութիւնը, եռանդը, անձնազոհութիւնը հասնում է կատարեալ նահատակութեան։ Երեւակայեցէք կեանքի բոլոր տաժանութիւնը Մոսկվայի կամ Պետերբուրգի նման քաղաքներում, ուր փոքր ի շատէ համեստ ապրուստը պահանջում է ամսական գոնէ 30 րուբլի, իսկ նա կառավարվում է 10 կամ 15 րուբլիով։ Եւ այդ ողորմելի գումարը նա պիտի ձեռք բերէ անհագին դժուարութիւններով։ Ես ճանաչում եմ մի քանի խեղճ ուսանողներ, որոնք ամառվայ արձակուրդների ժամանակ գալիս էին Թիֆլիս դասեր տալու, կամ պարապելու մի հարուստի երեխաների հետ ամարանոցում, եւ այսպիսով փող էին վաստակում, եւ կրկին վերադառնում էին Մոսկվա կամ Պետերբուրգ շարունակելու իրանց ուսումը։ Եւ այսպիսիները լինում են ամենալաւ աւարտողները իրանց մասնագիտութիւնից։

Ցոյց տալով հայ ուսանողների թոյլ եւ զօրաւոր կողմերը, աւելորդ չէր լինի ասել մի քանի խօսք եւս նրանց ընդհանուր գաղափարների մասին։

Միանգամայն անարդար կը լինէր ասել, թէ բոլոր հայ ուսանողների ձգտումները միայն անձնական եւ նիւթական նպատակ ունեն, թէ նրանց մէջ չը կային բարի երիտասարդներ ազնիւ ցանկութիւններով։ Կան շատ ուսանողներ, որոնք յափշտակվում են եթէ ոչ ընդհանուր մարդասիրական գաղափարներով, գոնէ նեղ ազգասիրական բաղձանքներով։ Նրանք հաւաքվում են միասին, ծխում են, վիճում են եւ տնօրինում են իրանց „սիրելի ազգի“ համար մի լաւ ապագայ։ Սկսում են սովորել հայոց լեզուն, ծանօթանալ նրա գրականութեան հետ եւ ուսումնասիրել նրա պէտքերը, եւ լի բարի ցանկութիւններով վերադառնում են իրանց հայրենիքը գործելու համար։ Մենք միւս անգամ կը տեսնվենք այդ պարոնների հետ կեանքի մէջ, թէ ո՛ր աս-

*տիճան նրանք հաւատարիմ են մնում իրանց ուխտին: Այժմ վերջացնում եմ իմ նկարագիրը Մօսկվայի եւ Ս. Պետերբուրգի ուսանողների մասին, աւելացնելով մի քանի խօսք նրանց ժողովների վերաբերութեամբ:*

*Վաղուց է որ Մօսկվայի եւ Ս. Պետերբուրգի ուսանողները ունեն մի տեսակ ժողովներ, կազմել են մի տեսակ ե ղ բ ա յ ր ո ւ թ ի ւ ն բոլորովին բարեգործական նպատակով: Նրանք ունեն առանձին կասսա, որի մէջ հաւաքվում են ուսանողների նուէրները իրանց չքաւոր ընկերներին օգնելու համար: Մի համակրական գործ, որ կատարել են ուսանողները—այդ է: Բայց ցաւալի է տեսնել, այն ուսանողները, որ մի ժամանակ վայելել էին յիշեալ կասսաների օժանդակութիւնը, աւարտելուց եւ կեանքի մէջ մտնելուց յետոյ բոլորովին մոռանում են անցեալը: Ինձ պատահել է լսել շատ տրտունջներ, թէ այս ինչ ուսանողը այսքան հարիւր րուբլի պարտ է մնացել ուսանողական կասսային, իսկ վերադարձնելու մասին չէ մտածում, թէեւ այժմ տարեկան մի քանի հազար րուբլի եկամուտ ունի: Ինձ յայտնի են մինչեւ անգամ այդ ապերախտների անունները. . .*:*

*Հայ ուսանողները բացի Ռուսաստանի երկու մայրաքաղաքների համալսարաններից փոքր թւով դիմում են Օդեսա, Կիեվ, Կազան եւ Դորպատ: Դրանք չեն զանազանվում առանձին յատկանիշներով, բայց նոյնը չէ կարելի ասել Դորպատի ուսանողների մասին: Դորպատի համալսարանը, եթէ չեմ սխալվում, առաջինը եղաւ, որ քաշեց դէպի ինքը հայ ուսանողներին, եւ ճանապարհը դէպի այդ ռուս-գերմանական քաղաքը բաց արեց Աբով-*

---

* Մինչեւ այսօր մենք չունենք որ եւ իցէ գրուածք հայ ուսանողների մասին, բացի դոք. Գր. Արծրունիի „Ա յ ն տ ե ղ ե ւ ա յ ս տ ե ղ“ վէպիկը, որ մի գեղեցիկ պատկեր է Ռուսաստանի ուսանողների կեանքից: Այս աշխատութիւնը տպվեցաւ „Մշակի“ մէջ եւ թարգմանվեցաւ ռուսաց լեզուով:

եանցը. նրան հետեւեցին շատերը, իսկ այժմ համարեա թէ դադարել են Դորպատ գնալուց: Դորպատի համալսարանը տուեց մեզ երկու նշանաւոր մարդիկ՝ Աբովեանցին եւ Նազարեանցին: Բայց պէտք չէ մոռանալ եւ այն, որ առհասարակ Դորպատի ուսանողները ունեն մի առանձին յատկանիշ գոյն, որով որոշվում են ռուսաց միւս համալսարանների հայ ուսանողներից: Մի տեսակ ծածկամտութիւն, մի տեսակ քրմական Փանատիկոսութիւն, մի տեսակ կոյր յամառութիւն տիրում է նրանց ամբողջ մտաւոր կարողութեան վրա: Նրանք փոքր ի շատէ կարդացել են եւ առանց համոզմունքի մարդիկ չեն, բայց իրանց համոզմունքների մէջ այն աստիճան կամակոր են, որ դա պահում է նրանց միշտ քարացած անշարժութեան մէջ: Այդ պատճառով զարմանալի չէ տեսնել, որ Դորպատից աւարտողները մեր ազգային, հասարակական եւ եկեղեցական խնդիրների վերաբերութեամբ համարեա բոլորն էլ պահպանողականներ են: Ինչ որ աւելի աչքի է զարկում, այդ է նրանց թէթեւ ազգասիրութիւնը, որ չեն թաքցնում երեւան հանել, երբ այդ ցուցամոլութիւնը չէր պահանջում նրանցից որ եւ իցէ աշխատութիւն կամ զոհ:

Դառնում եմ դէպի արտասահմանեան ուսանողները:

Ռուսաստանի սահմաններից դուրս հայ ուսանողները դիմում են մեծ մասամբ Գերմանիա, իսկ մասնաւորապէս Փրանսիա եւ Զվիցերիա: Սկսենք Գերմանիայից:

Հայ ուսանողը դիմում է Գերմանիայի այս եւ այն համալսարանական քաղաքը առանց մի բառ գերմաներէն գիտենալու: Նա վարձում է մի ընտանիքի մէջ բնակութիւն, ուր վեց ամսից յետոյ սովորում է եթէ ոչ վարժ խօսել, բայց հասկանում է լսածը: Տարին չը լրացած, նա համարձակ կարող է յաճախել իր ընտրած մասնագիտութիւնից դասախօսութիւններ լսելու: Սկզբից քննութիւն տալ չէ պահանջվում, բաւական է, որ ուսանողը յայտնում է

համալսարանի վարչութեանը իր ցանկութիւնը մտնել ուսանողների թւում, յետոյ նրա անունը գրվում է վարչութեան գրքի մէջ (матрикулярная книга)։ Գերմանական համալսարանը ազատ հիմնարկութիւն է, նրա կազմակերպութեան մէջ չեն տիրում այն պաշտօնական խիստ ձեւերը, որ կարելի է բացատրել բառովս ա ր ք ո ւ ն ա կ ա ն ո ւ թ ի ւ ն (казенщина)։ Ուսանողին տուած է կատարեալ ազատութիւն թէ առարկայի եւ թէ պրօֆեսօրի ընտրութեան մէջ. նշանակված կուրսեր եւ քննութիւններ չը կան. ուսանողը ինքն է տնօրինում իր ժամանակը, որի ընթացքում նա մտադիր է սովորել։ Եթէ հանգամանքները չեն ներում, նա կարող է ընդհատել իր ուսումը եւ ամիսներից կամ տարիներից յետոյ կրկին շարունակել։ Շատ անգամ մի եւ նոյն ուսանողը իր ընտրած առարկայից լսում է զանազան պրօֆեսօրների մօտ, զանազան քաղաքներում. այստեղից առաջ է գալիս ուսանողների գաղթականութիւնը մի համալսարանական քաղաքից դէպի միւսը,—Բերլին, Լէյպցիգ, Մինխէն, Հայդելբերգ, Իենա եւ այլն։ Այդ նպաստում է ուսանողին ծանօթանալ զանազան գիտնականների հայեացքների հետ իր ընտրած առարկայի վերաբերութեամբ։ Լսելով զանազան պրօֆեսօրներին, զանազան համալսարաններում, ուսանողը կարող է վերջապէս ընտրել մէկը եւ այն համալսարանում քննութիւն տալ. այդ մասին արգելք չը կայ, բաւական է, որ նա ցոյց տայ իր թղթերը, թէ այս ինչ պրօֆեսօրների մօտ այսքան ժամանակ լսել է։ Շատ անգամ պատահում է, որ մի ուսանող բացի իր ընտրած մասնագիտութիւնից, լսում է եւ մի քանի ուրիշ առարկաներ. պատմաբանը կամ ֆիլոլօգը մի եւ նոյն ժամանակ յաճախում է լսել մի նշանաւոր նատուրալիստին, կամ նատուրալիստը գնում է լսելու մի երեւելի փիլիսոփային։ Եւ այսպէս, ա-

մեն մի լսող կարող է ազատ կերպով ուսումնասիրել իր ընտրած արհեստի բոլոր յայտնի աւտօրիտետներին:

Պրօֆեսօրի յարաբերութիւնները ուսանողի հետ ընտանեկան բնաւորութիւն ունեն: Նա չէ վարվում որպէս մի զօրապետ իր սօլդատների հետ: Նրա տունը մատչելի է ամեն մի ուսանողին, որ դիմում էր նրա մօտ որ եւ իցէ խորհուրդի համար: Այս է պատճառը, որ գերմանական պրօֆեսօրը, գերմանական համալսարանը չէ վախեցնում ուսանողներին. եւ ոչ մի ազգի մէջ պրօֆեսօրը այնքան յարգված եւ այնքան սիրված չէ իր լսողներից, որպէս Գերմանիայում: Նկատված է, որ պրօֆեսօրները աւելի մեծ ուշադրութիւն դարձնում են օտարազգի ուսանողներին, քան թէ բուն գերմանացի ուսանողների վրա, որոնք գիտեն իրանց գործը եւ շատ կարօտ չեն նրանց խնամատարութեանը:

Համալսարանական պարապմունքները լինում են գըլխաւորապէս՝ դասախօսութիւններ, որ լսում են ուսանողները, վճարելով մի նշանակված վարձ իրանց պրօֆեսօրին, այլ եւ մասնաւոր հետազօտութիւններ եւ փորձեր լաբօրատօրիաներում պրօֆեսօրի աջակցութեամբ, եւ վերջապէս սեմինարիաներ, որ կատարվում են ուսանողների վարժութեան համար: Սեմինարիաները որոշվում են նրանով, որ պրօֆեսօրը տալիս է իր լսողներին մի հարց նրանց մասնագիտութեան վերաբերութեամբ մշակելու համար, ուսանողները պատրաստում են եւ նրանցից մէկը բարձրանում է ամբիօնի վրա եւ խօսում է: Պրօֆեսօրը այդ միջոցին նստած է լինում միւս ուսանողների շարքում, լսում է եւ նշանակում է իր նկատողութիւնները. մի եւ նոյնը անում են եւ միւս ուսանողները: Յետոյ իւրաքանչիւրը իր կողմից հարցեր է առաջարկում եւ ամենքին պէտք է պատասխանէ դասախօսը:

Գերմանական համալսարաններում ամեն ինչ առաջ-

նորդում է ուսանողին դէպի արհեստի եւ գիտութեան խորին ուսումնասիրութիւնը: Չը մոռանանք պրօֆեսօրի զանազան զբօսանքները եւ քննական հետազօտութիւնները (экскурсія) իր լսողների հետ: Ուսանողը յոյս չէ դնում պրօֆեսօրի լիտօգրաֆիական տետրակների վրա, որպէս լինում է այդ Ռուսաստանում, որ նա ամբողջ տարին անգործ մնայ, եւ յետոյ շտապով թութակի նման սերտէ քննութեան համար, եւ այնուհետեւ շուտով մոռանայ: Ամեն մի ուսանող զգում է գիտութեան սաստիկ պահանջը, եւ նրա բոլոր շրջապատը, ուր չես գտնի մի անգործ մարդ, հարկադրում է նրան աշխատել եւ անդադար աշխատել: Առանց գիտութեան դժուար է ապրել այնտեղ, ուր իւրաքանչիւր ոք ունի մի նշանաւոր պաշար գիտութեան. մրցութիւնը սաստիկ է:

Գերմանական ուսանողը չէ բաւականանում նրանով, ինչ ու սովորում է համալսարանի ամբիոնից. նա կարդում է համարեա բոլոր նշանաւոր հեղինակութիւնները, որ վերաբերում էին իր առարկային: Այդ բաւական չէ, նա յաճախում է զանազան ուսումնական հիմնարկութիւնների մէջ: Դիցուք թէ մի ուսանող ընտրել էր իր մասնագիտութեան համար քաղաքական տնտեսութիւնը. մի եւ նոյն ժամանակ նա անդամ է դառնում զանազան ժողովների եւ զանազան ընկերութիւնների, որպէս են՝ աշխարհագրական, բժշկական, երաժշտական, հնագիտական եւ այլն: Մի եւ նոյն ժամանակ կարելի է տեսնել նրան մի զրատան մէջ քրքրում է հին ձեռագրներ, ուսումնասիրում է մի անծանօթ արեւելեան լեզու, կամ թանգարանի մէջ քննում է հին դրամներ եւ կամ հետաքրքրվում է զանազան հազուագիւտ բաներով: Այս բոլոր աշխատութիւններից յետոյ, նա ժամանակ է գտնում պարապելու մարմնամարզութեամբ, վարժվելու զինաշարժութեան մէջ, կամ զուարճանալու որսորդութիւնով: Օրերը, ժամերը, րօպէները նրա մօտ այն-

պէս հաշված են, որ նա ամեն ժամանակի համար զբաղմունք ունի: Եւ այս է պատճառը, որ գերմանական ուսանողը ունի չափից դուրս բազմակողմանի հմտութիւններ: Ամբողջ օրը աշխատելով մի քան սովորել, նա դարձեալ իրան յետ չէ պահում՛ սովորական զուարճութիւններից, նըրան կը տեսնես մի հիւրանոցում՛, շրջապատված իր ընկերներով, գարեջուր է խմում՛, խօսում՛ է, դատում՛ է եւ վիճում՛ է: Մի բան, որ չէ հետաքրքրում՛ գերմանական ուսանողին, այդ է՝ զբաղվել պօլիտիկայով: Նա քաղաքական պրօպագանդիստ չէ, բայց հասարակական գործիչ է: Նա սիրում՛ է երկու բան՝ գիտութիւն եւ գարեջուր:

Կինը մի առանձին դեր չէ խաղում՛ գերմանական ուսանողի կեանքի մէջ: Նա ոչ թոյլ է տալիս իրան ֆրանսիական ուսանողի նման գրիզէտների հետ բուլվարները չափչփել, եւ ոչ ռուսական ուսանողի նման սիրուհու հետ է ապրում՛: Նա իր կրքերի մէջ չափաւոր է եւ համեստ, բացարձակ ախտերով չէ հրապուրվում՛: Այս է պատճառը, որ գերմանական ուսանողը ամեն մի պատուաւոր ընտանիքի մէջ մուտք ունի. նրանից չեն վախենում՛: Կնոջ վրա նայում՛ է նա, որպէս մի քնքուշ առարկայի վրա, որին եթէ զօրաւոր գործերի մէջ գցէիր, կարող էր շուտով կոտըրվել, եւ այս պատճառով, ռուսական ուսանողի նման նա կնոջը չէ ընտրում՛ որպէս պրօպագանդայի գործիք: Նա համարում՛ է կնոջը մի գեղեցիկ արարած, որով կարելի էր զբաղվել առանց ծանրանալու, որով կարելի էր զուարճանալ առանց տխրելու—այսքանը միայն: Կինը նրան խելքից չէ հանում՛. բայց երբ սիրում՛ է, սիրում՛ է միայն ամուսնանալու համար:

Ուսանողական կազմակերպութիւնը ամեն գերմանական համալսարանում՛ բաժանվում՛ է երկու որոշ մասների, մէկը՝ գ ո ւ ն ա ւ ո ր ն ե ր, որոնցից կազմված են զանազան առանձին խմբեր (корпорація), որոնք տարբերվում՛

են իրանց գլխարկների եւ կուրծքի ժապաւէնների գոյներով,—իսկ երկրորդը, հասարակ ուսանողները, որոնք չեն համարում իրանց յիշեալ խմբերի կամ կորպորացիաների անդամ:

Գունաւոր ուսանողների իւրաքանչիւր խումբը կամ կորպորացիան ունի իր առանձին դրօշը, նշանաբանը, օրդէնները, սովորութիւնները, ծէսերը եւ վերջապէս պրինցիպները: Մէկը, օրինակ, ներկայացուցիչ է ազնուապետական սկզբունքի, միւսը ռամկապետական է, երրորդը գիտնական նպատակների է ծառայում, չորրորդը հասարակական տենդենցիաներ ունէ եւ այլն: Իւրաքանչիւր խումբը ունի իր առանձին աւանդական օրէնքները կամ վարչութեան ստատուտները, որ կազմւել են պատմականաբար վաղեմի ժամանակներից եւ պահպանվում են ամենայն սրբութեամբ: Ուսանողը, որ մեղանչում է իր խմբի օրէնքների դէմ, պատժվում է խմբի վարչութիւնից: Երեւակայեցէք ձեզ մի ուսանող իր կորպորացիայի պաշտօնական վենգերկայով. սեւ թաւիշից, գունաւոր գըլխարկով, ժապաւէնով անցկացրած ուսի տակով, եւ հպարտ կուրծքը ծածկված օրդէններով, այստեղ կան խաչեր, աստղեր, այստեղ կան զանազան տեսակ նշաններ եւ զարդեր, բոլորը էժանագին մետալներից, բայց ամենի մէջտեղում, գունաւոր լայն ժապաւէնի վրա, փայլում է գարեջրի բաժակի մեծ պատկերը,—որպէս բարձր նշան, որ նուիրած է նրան գարեջրական թագաւորութիւնից (Biersctaat): Ամեն մի կորպորացիա ունի իր առանձին ժողովները եւ խնջոյքները, որոնց մէջ սովորական ծէսերով կատարվում է գարեջուր խմելու ուրախութիւնը: Խմելու պայմանները չափազանց բաղադրեալ են, որ պէտք էր առաջուց սովորած լինել, ինչպէս օրինակ, սալամանդրա կոչված ձեւը: Ուսանողական երգերը եւ ճառերը մի առանձին կենդանութիւն են տալիս

այս տեսակ խնջոյքներին: Գարեջուրը, որ ուսանողների զուարճութեան ոգին է, շատ անգամ գործ է դրվում որպէս սրբութիւն: Օրինակ, խիստ ծիծաղելի է այն ծէսը, որպէս է գարեջրով մկրտելը մի ուսանողի, որ նոր մըտնում էր որ եւ իցէ կորպորացիայի մէջ: Բացի սովորական ժողովներից եւ խնջոյքներից, կատարվում են եւ հանդիսաւոր օւացիաներ եւ դէմօնստրացիաներ: Տեսնում ես, գունաւորների զանազան խմբեր, զարդարված իրանց համազգեստով եւ օրդէններով, ձեռքներին բռնած դրօշակներ եւ ջահեր, գիշերային պահուն, երգելով անցնում են փողոցների միջով, կանգնում են մի սիրված պրօֆեսօրի տան առջեւ եւ արտայայտում են նըրան իրանց յարգանքը: Երբեմն այսպիսի դեմօնստրացիաներ կատարվում են, որպէս արտայայտութիւն զանազան հասարակական ցոյցերի, երբ կատարվում էր մի անարդարութիւն օրէնքի կողմից: Ուսանողները այդ ժամանակ սաստիկ վրդովվում են, յուզվում են եւ խմբերով հրապարակ են դուրս գալիս, իրանց բողոքը յայտնելով զանազան ցոյցերով: Ժողովուրդը միշտ իր ձայնը խառնում է ուսանողների ոգեւորված երգերին եւ նրանց ազնիւ բարկութեան ձայնին:

Գունաւոր ուսանողները, որ առհասարակ նշանաւոր են իրանց քաջութեամբ, համարձակութեամբ եւ անձնասիրութեամբ, միշտ պատրաստ են վրէժխնդիր լինել մի ամենաչնչին վիրաւորանքի համար պատուի դէմ:

Այս պատճառով մենամարտութիւնը նրանց մէջ այնքան սովորական է, որպէս մի գաւաթ գարեջուր խմելը: Եւ շատ անգամ կարելի է տեսնել երեսը բոլորովին սպիներով այլանդակված ուսանողներ, որ ստացել էին զանազան մենամարտութիւնների մէջ: Բայց նոյն ուսանողը, երբ իր զարհուրելի դէմքով կանգնում է ամբիօնի վրա եւ կարդում է մի ոգեւորված ճառ, այն ժամանակ առանց

հիացմունքի չէ կարելի չը լսել նրան։ Նա որպէս յաջողակ է զէնք բանեցնելու մէջ, այնքան էլ ընդունակ է ընդհանուր մարդկային բարձր գաղափարներ արտայայտելու։ Այսուամենայնիւ, գունաւոր ուսանողներին հասարակ ուսանողների հետ համեմատելով, առաջինները այնքան նշանաւոր չեն լինում իրանց աշխատասիրութեամբ։ Քաջութիւնը մենամարտութեան մէջ եւ զօրութիւնը գարեջուր խմելում—ահա երկու առարկաներ, որոնցով պարծենում են նրանք։ Եթէ գերմանական ուսանողների մէջ կան տոկուն աշխատողներ եւ ճշմարտապէս գիտութեան հետեւողներ,—դրանք են հասարակ ուսանողները, որոնք ոչ մի կորպորացիայի չեն պատկանում։

Պէտք է նկատել, որ այլ եւ այլ կորպորացիաներ, որոնք իրանց սովորութիւններով եւ պաշտօնական ձեւերով այժմ քաղաքական բնաւորութիւն են ստացել, ուրիշ ոչինչ չեն, եթէ ոչ Գերմանիայի միջնադարեան ասպետութեան զանազան ուխտերի եւ կարգերի մի նմանութիւն, որ անցել է ուսանողական կեանքի մէջ։ Այժմ այդ մաշված սովորութիւնները հնանալու եւ մօդայից ընկնելու վիճակին են հասել։ Եւ որպէս հակակշռութիւն գունաւորների ժողովների, վերջին ժամանակներում կազմվել են ուսանողական ընդհանուր ժողովներ, աւելի լայն եւ ընդարձակ նպատակներով եւ ժամանակակից սկզբունքների վրա։ Այդ ժողովներին մասնակցում են հասարակ ուսանողները եւ երբեմն նրանց մէջ լինում են պրօֆէսօրներ։

Բայց մի բան, որ պէտք է նկատողութեան առնել, այն է, մինչդեռ մի ուրիշ պետութեան մէջ չորս-հինգ ուսանող մի տեղ հաւաքվելիս, մի ժողով կազմելիս, միշտ կառավարութիւնը կասկածանքով է նայում նրանց վրա,—դրա ընդհակառակն, գերմանական ուսանողներին տուած է այնքան ընդարձակ ազատութիւն, որ նրանք կարողա-

*նում են վերեւ յիշած կորպորացիաների նման առանձին առանձին խումբեր կամ ժողովներ կազմել, ամենեւին նըրանցից չեն վախենում: Գերմանական ուսանողը իր հայրենիքի հաւատարիմ զաւակն է: Եւ այդ ցոյց տուեց նա վերջին ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակ. թողեց համալսարանը եւ անցաւ կռուի դաշտի վրա:*

*Մինչեւ այստեղ ինչ որ խօսվեցաւ, վերաբերում է բուն գերմանացի ուսանողներին, հիմա տեսնենք, ի՞նչ են անում այնտեղ հայ ուսանողները:*

*Հայ ուսանողները ոչ մի կորպորացիայի մէջ չեն մըտնում. նրանք պատկանում են հասարակ ուսանողների թըւին: Բայց որպէս հասարակ ուսանող եւս, հայերը չունեն այն բազմակողմանի պարապմունքները, որոնցով, բացի իր մասնագիտութիւնից զբաղված է լինում բուն գերմանական ուսանողը: Օրինակ, հայ ուսանողը ոչ մի ուսումնական ժողովի եւ ընկերութեան մէջ չէ մտնում. ոչ մի ուրիշ բան, որպէս են մուզիկա, մարմնամարզութիւն եւ այլն, չէ սովորում, եւ որպէս Մօսկվայում կամ Պետերբուրգում, այստեղ էլ նոյնպէս դուրս չէ գալիս իր հայ ընկերների նեղ շրջանից: Ես մի քանի գերմանական հայ ուսանողներ միայն ճանաչում եմ, որոնց կարելի է բացառութիւն համարել: Իսկ մնացածները ճանաչում են միայն համալսարանի շինութիւնը, իրանց պրօֆէսօրին եւ իրանց ընտրած առարկան, ուրիշ ոչինչով չեն հետաքրքրվում, թէ ինչ է կատարվում իրանց չորս կողմում: Շատ շատ եթէ մէկը այնքան աշխատասէր էր, բացի իր ընտրած մասնագիտութիւնից, կը լսէ դասախօսութիւններ մի քանի ուրիշ առարկաներից եւս, որոնք կապ ունէին իր մասնագիտութեան հետ: Ամեն ինչ նա սպասում է համալսարանից, իսկ դրսի ուսումնական շրջաններից օգուտ չէ քաղում: Երբեմն լրագիրներ կը կարդայ, կամ գրքեր կը վերառնի մի գրադարանից: Բայց պէտք է խոստովանվել,*

*որ գերմանական հայ ուսանողները դարձեալ գերազանցում են Ռուսաստանի հայ ուսանողներից, թէ իրանց աշխատասիրութեամբ եւ թէ իրանց վարքով. դրանք զոնէ համեստ են, ինչ որ սովորել են, սովորել են հիմնաւոր կերպով: Բայց Ռուսաստանի հայ ուսանողը շատ առարկաներ է սովորում առանց լաւ մարսելու, եւ շուտով էլ մոռանում է: Բացի դրանից, զանազանութիւնը մեծ է: Ռուսաստանի հայ ուսանողը, որպէս իր տեղում նկատեցինք, սովորում է ոչ թէ գիտութեան համար, այլ դիպլոմ ստանալու համար, որ պաշտօնի մէջ այս եւ այն արտօնութիւնը կարողանայ ձեռք բերել, եւ այս պատճառով նա վեր է առնում գիտութիւնից այնքան միայն, որ կարող է հասցնել նպատակին: Իսկ գերմանական հայ ուսանողի վրա ազդում է շրջապատը, նա իրան նուիրում է միմիայն գիտութեան,—ուսանում է ուսման համար, առանց որ եւ իցէ արտօնութիւն աչքի առջեւ ունենալու: Գիտութեան առաջելութիւնը—ահա նրա գլխաւոր նպատակը: Նա ծառայում է մի դրօշի, որի նշանաբանն էր—գիտութիւնը միայն: Եւ այսպէսով շատերը մեր երիտասարդներից նշանաւոր եղան ոչ միայն յաջող քննութիւն տալով, բայց նոյն իսկ Գերմանիայում պրոֆէսօրի կամ պրիվատ դոցենտի աթոռն ստանալով: Թէեւ գտնվեցան եւ այնպիսիներ, որ վերադարձան մեզ մօտ առանց քննութիւն տալու, դարձեալ զանց չառնելով իրանց այցետոմսակի վրա տպել տալ դ օ ք թ օ ր տիտղոսը . . .*

*Չեմ կարող չյիշել, որ ոմանք մեր ուսանողներից վատ համարում թողեցին Գերմանիայում, ոչ միայն իրանց վերաբերութեամբ, այլ իրանց վարքով մրոտեցին մինչեւ անգամ հայ անունը, որ այնքան փոքր ծանօթ է է Եւրոպայում: Խաղել, պարտքով ուտել, խմել եւ փողը չը վճարել—այդ արել են ոչ միայն այն ուսանողները, որ զուրկ են եղել նիւթական միջոցներից, այլ նրանք, որ*

*ստանում էին ծնողներից մեծ փողեր: Այլ եւս չեմ խօսում այն բանի վրա, որ ամեն մի հասարակ վաճառականի որդին կամ գռեհիկ գիւղացին իրան ներկայացնում էր իբրեւ հայոց մի երեւելի ազնուական տոհմից: Այս տեսակ խաբեբաներից մէկի համար պատմում էին, թէ նա իրան կոչում էր Ի շ խ ա ն Ա ր ա ր ա տ ա յ . . .*

*Ի հարկէ, վերեւ յիշած տխուր նկատողութիւնները պէտք է բացառական երեւոյթներ համարել, որ աւելի հետեւանք են ընտանեկան վատ դաստիարակութեան, որը չէ փոխում հայի զաւակը, երբ նա ընկնում է մի նոր եւ աւելի քաղաքակրթված աշխարհի մէջ: Բայց առհասարակ խօսելով, գերմանական աշխարհը, գերմանական կըրթութիւնը, գերմանական ուսումը շատ նպատակայարմար է մեզ հայերիս համար, որ ունենք բաւական նմանութիւն գերմանացիների հետ, թէ բնաւորութեան, թէ տոկունութեան, եւ թէ տնտեսական խնայող, հաշուող չափաւորութեան կողմից: Հայը ասիական գերմանացի է: Ինչ որ պակաս է մեզ, կարող ենք ստանալ նրանցից: Մեր նախնիքը Քսենոփոնի օրերում գարեջուր էին խմում. իսկ գերմանացին խմում է այսօր: Մեր մէջ նմանութիւններ կան, ամեն կողմից նայելով:*

*Նկատողութեան պէտք է առնել մի ուրիշ պայման եւս, այն է՝ գերմանական համալսարանի ազդեցութիւնը օտարազգի երիտասարդների վրա: Նա վերադարձնում է ամեն ազգին իր որդուն, աւելի կատարելագործված, աւելի զարգացած, ոչինչ չը խլելով նրա ցեղական յատկութիւններից, այլ ընդհակառակն աւելի ամրապնդելով, աւելի հաստատելով: Նա չինացուն տալիս է լաւ չինացի, ճապօնացուն՝ ճապօնացի, հայաստանցուն՝ հայ: Բոլորը մկրտվում են մի եւ նոյն համալսարանական տաճարի մէջ գիտութեան, իմաստութեան լուսով, բայց իւրաքանչիւր ազգի որդին կրում է իր ցեղական դրօշմը: Շատ ժամանակ չէ անցել. մի խնջոյքի*

մէջ, որ ուսանողները տալիս էին ի պատիւ իրանց պրոֆէսօրի, երբ առաջարկվեցաւ խուրաքանչիւրին իր ազգի լեզուով մի փոքրիկ ճառ կարդալ, եւ երբ հերթը հասաւ մի հայ ուսանողի, նա յայտնեց, թէ չը գիտէ հայերէն. ամեն կողմից ծանր յանդիմանութիւն ստացաւ: Եւ նա այնուհետեւ սկսեց սովորել իր ազգի լեզուն, որովհետեւ նըրանից խոստմունք առեցին, որ միւս տարվայ խնջոյքի ժամանակ անպատճառ պէտք է կատարէ իր ընկերների ցանկութիւնը:

Պէտք չէ մոռանալ եւ այն, որ գերմանական եւ առհասարակ արտասահմանեան դիպլօմները որ եւ իցէ արտօնութիւն չըտալով ուսանողին Ռուսաստանում, նրանք վերադառնալուց յետոյ ստիպված են լինում ընտրել ազատ պարապմունքներ: Եւ այսօր ուրախալի է տեսնել, որ նրանց մեծ մասը ազգային գործիչներ են: Մեր դպրոցների նշանաւոր վարժապետները, տեսուչները, մեր այժմեան խմբագիրները, բոլորը գերմանական համալսարանների պտուղներ են:

Դառնանք դէպի ֆրանսիական ուսանողները:

Փրանսիայում հայ ուսանողները ընտրում են միայն Փարիզը: Ես գոնէ, բացի մի բժշկից, չեմ ճանաչում ուրիշ ուսանողներ, որոնք Փրանսիայում մի բան սովորած լինէին: Բայց ճանաչում եմ շատ թերուսներ, որոնք երկար տարիներ Փրանսիայի մայրաքաղաքում թափառելէն յետոյ, առանց մի հիմնաւոր գիտութիւն սովորելու, վերադարձել են հայրենիքը, բերելով իրանց հետ միայն Փրանսիական արտաքին փայլը, որ աչքի է զարկում կապկութեան բոլոր միմոսութիւններով: Երեւում է, Փարիզը—այդ գիտութեան, յեղափոխութեան, մարսիլիէզի եւ շռայլութեան մայրաքաղաքը—իր գրիզէտներով եւ կաֆէ-շանտաններով, բոլորովին կախարդում է, խելքից հանում է միամիտ հայ ուսանողին, երբ ընկնում է այդ համաշխարհա-

կամ Բաբելօնի մէջ: Փարիզը միջին կէտ չունի. նա միշտ պատրաստում է ծայրայեղ մարդիկ, կամ՝ խոշոր հասարակական գործիչներ, կամ՝ երեւելի հանճարներ, եւ կամ՝ շրջմոլիկ, անպատակ շարլատաններ:

Փարիզում Լատինական Թաղը պատմական նշանակութիւն է ստացել որպէս ուսանողների բնակարան: Նրա խուլ փողոցներով ոչ մի պատուաւոր կին իրան թոյլ չի տայ անց կենալ գիշերվայ 9 ժամից յետոյ, վախենալով, մի՛ գուցէ հանդիպէ ուսանողների անպատկառ մի խումբի: Փարիզի ուսանողները առհասարակ սակաւ են պարապում, խիստ փոքր է այն աշխատասէրների թիւը, որոնք գոնէ ամիսը միանգամ յաճախում են դասախօսութիւն լսելու: Նրանք աւելի շատ սովորում են այն տարերքից, որոնցմով տոգորված է Փարիզի մթնոլորտը: Զուարճութիւնները չափից դուրս շատ եւ բազմատեսակ են: Կան բալեր, թատրօններ, ռեստօրաններ, կաֆէներ եւ այլն: Բայց մանաւանդ կնիկները նրանցից շատ ժամանակ են խլում: Մեծ մասը ապրում է սիրուհու հետ: Մի ամբողջ դաս աղջիկների, որոնք կոչվում են Լատինական Թաղի կանայքը, խիստ հետաքրքիր դեր են խաղում ուսանողների կեանքի մէջ: Դրանք հասարակ գործաւոր աղջիկներ են, որոնք բանում են զանազան հիմնարկութիւնների մէջ, եւ ուսանողների սենեակներում ուրախութիւն ու հանգստութիւն են գտնում, երբ աշխատանքը ձանձրացնում էր նրանց: Այդ մշտազըւարթ, անհոգ եւ դարտակամիտ արարածները երբէք դուրս չեն գալիս ուսանողների աշխարհից, եւ անդադար անցնում են մէկ ձեռքից միւսը:

Ինչ որ աւելի յատկանիշ է Փրանսիական ուսանողներին,—դա է նրանց արտաքին փայլը: Փարիզը սաստիկ յղկում է եւ կոկում է նրանց: Նրանք գերմանական ուսանողի նման անտաշ, անշնորք եւ դանդաղկոտ չեն, որոնց բոլոր արժանաւորութիւնները թաքնված են դրսի սա-

որն եւ ցամաք կեղեւի տակ։ Փարիզի ուսանողը կատարեալ աշխարհային մարդ է իր բազմակողմանի ձեւերի մէջ։ Նա խօսում է, դատում է ամէն բանի վրայ, մինչեւ անգամ այն բաների վրայ, որ ինքը չը գիտէ։ Նրա խելքը սաստիկ ճկուն է, դէպի ամէն կողմ ոլորվում է։ Նա վարում է խիստ բաղադրեալ վիճաբանութիւններ, եւ կարկուտի նըման թափում խոշոր Ֆրազներ։ Այդ նրանից է, որ նա կարդում է մեծ հեղինակների գրքերը, ռօմանները, կարդում է լրագիրներ, գնում է թատրօն, ծանօթ է ամէն բանի հետ, ինչ որ կատարվում է նրա չորս կողմում։ Նա թէեւ հիմնաւոր գիտութիւն չունի, թէեւ խորին կրթութիւն չէ ստանում, բայց շուտով յափշտակվում է իդէաներով։

Ինչ որ վերաբերում է ընդհանուր գաղափարներին, մեծ մասը ազատամիտ եւ յառաջադիմականներ են, եւ պատկանում են հասարակապետական կուսակցութեան։ Այդ բնական է, շատերը նրանցից երազում են համաշխարհական հասարակապետութիւն, երազում են ազգերի եղբայրութիւն եւ չքաւորութեան վախճան։ Ազատութեան եւ արդարութեան իդէաները սաստիկ արբեցնում են նրանց։ Այսուամենայնիւ, Ֆրանսիական ուսանողը պրօպագանդիստի ոգի չունի, որ մտնէր ընտանիքների մէջ, որ մտնէր ամբոխի մէջ, եւ առանց աղմուկի տարածէր իր մտքերը։ Նա իր նեղ, ուսանողական շրջանից դուրս չէ գալիս։ Օրինաւոր ընտանիքներում մինչեւ անգամ նրան չեն ընդունում։ Բայց երբ պատահում է մի ժողովրդական շարժում, երբ ծագում է մի քաղաքական յեղափոխութիւն, ուսանողները խլրտվում են, զարթնում են որպէս քնած առիւծ, եւ առաջինն են լինում, որ թնդեցնում են փողոցները մարսելիէզներով, փշրում են բռնակալների արձանները, եւ թըռչում են բարիկադների վրայ։ Ով որ փոքր ի շատէ ծանօթ է Ֆրանսիական պատմութեան, գիտէ, թէ որպիսի մեծ

ղեր խաղացին ուսանողները 1830 եւ 1848 թուականներում, եւ մանաւանդ կոմմունայի ժամանակ։

Չէ կարելի ասել, թէ բոլոր ուսանողները Փրանսիայում հետեւում են հասարակապետական կարծիքների։ Տականին կղերը եւ մանաւանդ եզուիտները մեծ ջանք են գործ դնում, որ իրանց մտքերը անցկացնեն երիտասարդութեան մէջ, եւ այս պատճառով, նրանք սաստիկ եռանդով ձգտում են իրանց ձեռքը ձգել ուսումը եւ կրթութիւնը։ Եւ կարողացան յաջողացնել, Փրանսիայի զանազան գաւառներում պահպանելով բաւական ծաղկած դպրոցներ, եւ նոյն իսկ Փարիզում բաց անելով մի քանի ուսումնական հիմնարկութիւններ, այլ եւ մի կաթօլիկական համալսարան։ Այդ հիմնարկութիւնների ուսանողները ոչինչ կապ չունեն իրանց հասարակապետական ընկերների հետ, եւ ներկայացնում են սաստիկ ըէակցիա։ Բայց մի բան, որ ուրախալի է, այն է, որ այժմ Փրանսիայի ամենաբարձր մտածողները աշխատում են սահմանափակել կղերի իրաւունքները կրթութեան գործի մէջ։

Հայ ուսանողը ընկնելով Փարիզի քաօսի մէջ, բոլորովին իր գլուխը կորցնում է։ Անթիւ կուսակցութիւններ, անթիւ կարծիքներ, եւ անթիւ ձգտումներ,—նա չը գիտէ, թէ որին պէտք է հետեւել։ Վերջապէս աւելի զօրեղ հոսանքը նրան իր հետն է տանում։ Նա մոռանում է իր անձը, մոռանում է իր երկիրը, մոռանում է, թէ ինչ ազգի որդի է ինքը։ Նա էլ միտքը չէ բերում, թէ իր եղբայրները ինչ դրութեան մէջ են ապրում Տաճկաստանում, Ռուսաստանում եւ Հնդկաստանում,—սկսում է երազել ընդհանուր եղբայրութեան վրա։ Նա դառնում է կ օ ս մ օ պ օ լ ի տ եւ ուրանում է իր հայութիւնը։ Որպէս վերեւում յիշեցի, մենք չունենք շատ թւով Փրանսիական ուսանողներ, իսկ այդ երեւոյթը նշմարվում է Կ. Պօլսի երիտասարդների մէջ, որոնք դժբախտութիւն էին ունեցել մի քանի տարի

Փարիզում թափառելու: Զարմանալին այն է, որ Փարիզի ուսանողը իր ընդհանուր կօսմօպօլիտական հայեացքներով հանդերձ, դարձեալ մնում է ֆրանսիացի. նա առաջ սիրում է իր ազգը, իր հայրենիքը եւ աւելորդը միայն տալիս է օտարներին: Բայց հայ ուսանողը մոռանում է բոլորը... Սրտի եւ մտքի դատարկութեան մէջ միշտ տեղ են գտնում յիմար ցնորքներ . . .

Ես վերջացրի իմ նկարագիրը Ռուսաստանի, Գերմանիայի եւ Փրանսիայի հայ ուսանողների մասին. հիմայ տեսնենք, ինչ են շինում նրանք, երբ վերադառնում են իրանց հայրենիքը եւ մտնում են կեանքի մէջ:



Դ.

## Թիֆլիսը որպէս կենտրոն

*Թիֆլիսը իր այժմեան դրութիւնով ներկայացնում է մի կենտրոն, ուր հանդիպում ենք մեր երիտասարդութեան բազմատեսակ տիպերին: Այստեղ են գտնվում մեր մտաւոր զօրութեան ներկայացուցիչները—մեր ինտելիգենցիան, այստեղ է գործում մեր մամուլը, այստեղ են խմբվում գաւառներից մեր նշանաւոր ուժերը, եւ վերջապէս այստեղ մեր խոշոր եւ մանր դրամատէրները հրաշք են գործում առեւտրական հրապարակի վրա:*

*Իմ հետազօտութեան մէջ ես անձնաւորութիւններ չը պիտի շօշափեմ. ես կը վեր առնեմ առանձին խմբեր միայն, որոնք պատկանում են այս եւ այն դասակարգին եւ գործում են մի որոշ ասպարէզի վրա: Բայց ինչ պէտք է արած, որ մեր շրջանը այն աստիճան նեղ է, որ ամեն մի խմբի վրա խօսելիս, ընթերցողը կամայ-ակամայ պիտի երեւակայէ որ եւ իցէ անձնաւորութիւն:*

*Սկսում եմ համալսարանականներից:*

*Աւարտելով իր ուսումը որ եւ իցէ համալսարանում, կամ կիսաւարտ, երիտասարդը գրքերը ծալում մի կողմ է դնում, ապսպրում է հմուտ դերձակներից մէկին մի քանի ձեռք հագուստ, գնում է ցիլինդր եւ պէնսնէ, ջոկում է ձեռնոցների համեստ գոյները, թողնում է ծնօտի վրա մի պուրակ մազ, եւ այս բոլոր պատրաստութիւններով վերադառ-*

նում է իր հայրենիքը, ուր նրան սպասում են հայր, մայր, բարեկամներ եւ վերջապէս ազգը: Արտաքին կերպարանքը վատ չէ, ներկայացնում է ուսեալ մարդու բոլոր ընդունված ձեւերը, իսկ ներքինը զգուշութեամբ թագցնում է: Նա քիչ է խօսում, չէ մտնում ծանր վիճաբանութիւնների մէջ, եւ միշտ աշխատում է ցոյց տալ, թէ „արհամարհում է“: Բայց պատահած տեղը, երբ իր ատամների յարմար մարդ է գտնում, լաւ զգզում է, այլ եւ նրա սօֆիզմներին եւ ճոռոմաբանութեանը չափ չը կայ:

Դա այն տեսակ տիպերիցն է, որ հէնց սկզբից ուսման եւ գիտութեան վրայ նայում էր որպէս մի միջոցի վրա, որ իրան լաւ ապագայ պատրաստէ, որ սովորում էր դ ի պ լ օ մ ի եւ արտօնութեան համար:

Մտնելով կեանքի եւ հասարակութեան մէջ, հանգամանքները, կարիքը, նպատակին հասնելու պահանջները սաստիկ զարգացնում են նրա ուշիմութիւնը: Նա դառնում է մի ճարպիկ որսորդ: Նա իսկոյն հասկանում է, թէ որ կողմիցն է փչում քամին եւ նրա համեմատ պարզում է իր նաւի առագաստները կեանքի ծովի մէջ: Համոզմունք ասած բանը չը կայ նրա մէջ: Հանգամանքներից օգուտ քաղել— ահա նրա գլխաւոր համոզմունքը: Եւ այդ է, որ շինում է նրան մի տեսակ քամելէօն, մի տեսակ առասպելական էակ, որ անդադար փոփոխվում է, թէ կարծիքների եւ թէ գործողութիւնների մէջ, որը ինչ առարկայի եւ մօտենում է, իսկոյն նորա գոյնը եւ ձեւն է ընդունում: Անհաստատամտութիւնը նրա գլխաւոր յատկանիշն է: Բայց մի գիծ, որ մնում է նրա մէջ անփոփոխ,—այդ է շահամոլութիւնը, որի համար զոհում է ամեն ինչ, որքան եւ սուրբ լինէր:

Նա յիմար չէ: Նա լեզուով գոնէ ցոյց է տալիս իր համակրութիւնը եւ հակակրութիւնը դէպի ամեն լաւ եւ վատ գործ:—Լիբերալի մօտ ազատամտութիւն է միտում. յետադէմի մօտ վերջին ատեհճանի պահպանողական է

ձեւանում. ազգասէրի մօտ լաց է լինում՝ Թիւրքիայի հայերի վիճակի վրա. մի օտարականի մօտ ասում է՝ թէ բոլոր հայերը "մաշէնիկներ„ են. հայր սուրբի մօտ կղերական է ձեւանում. մի ուրիշ տեղ պախարակում՝ է ազգային եկեղեցին. խօսում՝ է անձնական պատուի եւ ազնւութեան վրա, բայց պատահած տեղը լիզում՝ է ազդեցութիւն ունեցող մի մարդու ոտները,—վերջապէս դէպի ամեն կողմ թեքվում՝ է, դէպի ամեն կողմ ծալվում՝ է, մինչեւ կարողանում է մի պաշտօն ձեռք բերել։ Այժմ հասաւ ցանկալի նպատակին։ Այնուհետեւ նա կտրվում՝ է հասարակութիւնից եւ սկսում՝ է իր նեղ շրջանի մէջ գործել։ Նա, որ առաջ շողոքորթում՝ էր ամբողջ հասարակութեանը, այժմ սկսում է շողոքորթել իր պաշտօնակիցներին, իր մեծաւորին, որ ոտքը նրա օգնութեան վրա դնելով, կարողանայ բարձրանալ իր բըռնած դիրքի աստիճանները։

Բայց ո՞րտեղից, ե՞րբ վարժվեցաւ նա այդ տեսած պրակտիկայի, այդ տեսակ գործնականութեան մէջ։—Ընտանիքը տուեց նրան այդ դաստիարակութիւնը։ Նոյնը, ինչ որ գործում՝ էր վաճառական հայրը, գործում է եւ բարձր ուսում՝ ստացած որդին։ Զանազանութիւնը միայն ձեւի եւ կրթութեան աստիճանի մէջն է։ Անկիրթ հայրը աւելի կոշտ կոպիտ կերպով էր խաբում, իսկ կրթեալ որդին աւելի նրբացրել է խաբէութիւնը։ Նա հարստահարում՝ էր իր խանութի մէջ, իսկ դա հարստահարում է մի ուրիշ ասպարէզում։ Գործողութիւնների բնաւորութիւնը չէ փոխվում։ Այս պայմանների մէջ հին եւ նոր սերունդը ձուլվում են միասին։ Գտնվում են, այո, եւ ազնիւ անձնաւորութիւններ, որոնք աւելի մաքուր ճանապարհով են դիմում իրանց բախտին, ցաւելով պէտք է ասել, որ այսպիսիները բացառութիւն են համարվում։

Դառնանք դէպի միւս տեսակ ուսանողները, որոնք յափշտակված էին բարձր գաղափարներով, որոնք պատ-

բաստվել էին իրանց հասարակութեանը եւ ազգին ծառայելու:

Գլուխը լցրած զանազան ծրագրներով, նա մտնում է կեանքի մէջ. ինչ բարի գործ ասես չէ ցանկանում սկսել.— լրագիր, ամսագիր, գրքերի հրատարակութիւն եւ այլն: Ժողովրդին շատ բան պակաս է, պէտք է լրացնել բոլորը, մտածում է նա: Հագնվում է հասարակ կերպով, խօսում է տաք եւ եռանդով. նրա թէ լեզուի եւ թէ ձեւերի մէջ նշմարվում է պարզութիւն եւ անկեղծութիւն: Նա մօտենում է այս եւ այն գործող խմբին, որպէս իր եղբայրակիցներին քաջալերում է նրանց ասելով՝ "պէտք է կրկնապատկել ուժերը, գործը դանդաղ է ընթանում, բայց ժամանակը չէ սպասում„: Խօսում է, վիճում է, տալիս է նոր խորհուրդներ, ստեղծում է նոր պլաններ: Անցնում են շաբաթներ, ամիսներ, տարիներ. . նա դեռ մտածում է, նա դեռ խօսում է.... Ցանկանում է մի հրաշք գործել եւ միանգամով զարմացնել աշխարհը: Նա չէ սիրում փոքրից սկսել, իսկ մեծ բան գործելու համար չեն ներում հանգամանքները: Մօտենում է նա, օրինակ, մի խմբագրի, որ շաբաթը միանգամ հազիւ կարողանում էր հրատարակել իր թերթը, „դրանով բան չի դառնայ, ասում է նրան, պէտք է ամեն օր հրատարակել, պէտք է այս գրել, այն գրել„,.. Բայց ինքը մի տող անգամ չէ գրում: Անգործութեան մէջ եռանդը, ոգեւորութիւնը թուլանում է, սրտի կրակը մարում է .... Նա սկսում է զգալ իր դրութեան անտանելութիւնը: Տեսնում է, երէկվայ ընկերը, յիմար, իղիօտ եւ ոչինչ չը սորված ընկերը, այսօր սեպհական կառք ունի, հազարներով եկամուտ է ստանում: Այդ փառքը հրապուրում է նրան: Նա թօթափում է իր առաջին յափշտակութիւնը եւ սթափվում է իր ազնիւ արքեցութիւնից... Ազգ, հայրենիք, հասարակութիւն, այդ բաները փոքր առ փոքր անհետանում են նրա գլխից... Նրա աչքի առջեւ կերպարանվում է իր Եսը,

որին առաջ մոռացել էր: "Չէ, մտածում է նա, պէտք է առաջ իր անձը ապահովել, յետոյ ուրիշների վրա մտածել:„ Յանկարծ առաջարկում են մեր ազգասէրին մի պաշտօն: մի "խղճալի պաշտօն:„ Նա այժմ ծառայութեան մէջ է, տարեկան մի քանի հազար եկամուտ ունի: Նա մեծ կրեդիտ է ստանում ամուսնութեան վերաբերութեամբ. ամեն կողմից առաջարկում են հարուստ աղջիկներ: Պսակվում է: Այժմ աշխատում է իր կացութեանը փառաւոր շուք տալ. վարձում է ամենագեղեցիկ տան վերին յարկը, եւ զարդարում է սենեակները զանազան սնոտիքներով: Նա, որ առաջ դեմօկրատական պրինցիպների էր հետեւում, եւ ինքը նոյն ծագումից էր, այժմ ձեւացնում է իրանից ազնուարիւն արիստօկրատ: Պատուիրում է սպասաւորին իր սալօնի մէջ մուտք չը տալ այն մաշված սիւրթուքով պարոններին, որոնց հետ առաջ իր ազգի յառաջադիմութեան մասին երկար ու երկար մասլահաթներ էր անում: Երբ փողոցում հանդիպում է հին բարեկամին, երբ ցանկանում է արժանացնել նորան իր ուշադրութեանը, արհամարհական ժպիտը երեսին հարցնում է. «какъ идетъ ваша газета?» —եւ շուտով անցնում է, նեղվելով, մի՛ զուցէ տեսնէին իրան նորա հետ խօսելիս:

Չէ կարելի ասել, թէ այս տեսակ տիպերի ոգեւորութիւնը եւ բարի ցանկութիւնները հէնց սկզբից անկեղծ չէին: Միայն բնաւորութեան թուլութիւնը, համոզմունքի անհաստատութիւնը, տոկունութեան բացակայութիւնը առիթ է տալիս նրանց շուտով փոխվել: Նրանք այն աստիճան տկար են լինում, որ չեն դիմանում կեանքի հակառակ հոսանքին, եւ սկսում են նրա ընթացքով գնալ: Այս տեսակ տիպերը նմանում են այն մեթէօրական երեւոյթներին, որ կոչվում է ասուպ, որը յանկարծ յայտնվում է մթնոլորտի մէջ, փայլում է, բոցավառվում է, եւ հետզհետէ սառչելով, վերջապէս հանգչում է եւ ընկնում է ցած....

Ես նկարեցի պատկերները երկու տարբեր տիպերի, որոնք հակառակ ճանապարհներով մօտենում են միմեանց, ձուլվում են, եւ կազմում են մի ամբողջութիւն: Այժմ համեմատենք այդ երկու տիպերը: Մէկը, որպէս գործնական մարդ, հէնց համալսարան մտած օրից՝ իրան նպատակ է դնում՝ այնքան սովորել, որ դիպլօմ ստանայ, արտօնութիւններ ձեռք բերէ, որ իր համար մի լաւ ապագայ պատրաստէ: Նա բացի իր անձից, ուրիշի վիճակով չէ հետաքրքրվում: Այս տեսակ մարդուն, եթէ չէ կարելի համակրել, գոնէ կարելի չէ եւ պախարակել: Նա հաւատարիմ է մնում իր ուխտին եւ նրա համեմատ գործում է: Իսկ միւսը, որպէս իդէալական մարդ, աշխատում է, սովորում է եւ համալսարանից իրան նպատակ է դնում, որ կեանքի մէջ մտնելուց յետոյ, պէտք է ծառայէ այս եւ այն գաղափարի իրագործելուն, պէտք է օգուտ բերէ հասարակութեանը եւ իր ազգին: Բայց վերջը բոլորը մոռանում է, բուրժուազանում է, եւ սկսում է մտածել իր փառքի, հանգստութեան եւ քսակի մասին: Այս տեսակ երիտասարդը բնաւորութիւնից զուրկ, թոյլ եւ զզուելի արարած է, որովհետեւ դաւաճանում է իր ուխտին:

Ես ցոյց տուեցի բարձր ուսում ստացած երիտասարդութիւնը որոշող երկու ընդհանուր գծերը: Բայց գտնեվում են եւ հզօր բնաւորութիւններ: Դրանք հերոսներ են, այսպիսիներին չէ կարելի չըյարգել: Դրանք աշխատում են ձեռք բերել մի պաշտօն, մի գործ, այն մտքով միայն, որ ապահովեն իրանց անձը, որ հարստանան, եւ այն հարստութիւնով կարողանան իրագործել իրանց ազգօգուտ նպատակները: „Եթէ ես կունենամ տարեկան հինգ հազար րուբլի աւելորդ եկամուտ, ասում էր ինձ մի երիտասարդ, այն ժամանակ կը սկսեմ հայերէն մի ամսագիր հրատարակել„: Բայց հայերէն ամսագիր հրատարակել նշանակում է՝ տական 3—4 հազար րուբլի դեֆիցիտ ծախսել: Եւ նա կատա-

րեց իր խոստմունքը, երբ պաշտօնի մէջ մտաւ: Այդ ամենահիմնաւոր ձեւն է հասարակական գործունէութեան: Մեր ազգային գործերը պահանջում են մեծ զոհաբերութիւններ: Աղքատ եւ անապահով վիճակի մէջ գտնվող երիտասարդները հազիւ թէ կարող էին մի նշանաւոր գործ կատարել: Կամ պէտք է ժառանգական հարստութիւն ունենալ, կամ պէտք է մի կողմնակի պարապմունք գտնել, փող վաստակել, մի մասով ապրել, իսկ մնացածը ծախսել որ եւ իցէ հասարակական բարի նպատակի համար: Որովհետեւ մեզանում ազգային պարապմունքները ոչ միայն նիւթական շահ չեն բերում, այլ պէտք է մի բան էլ իր գրպանից ծախսել, որ գործը առաջ գնայ: Այդ ես ցոյց կը տամ իր տեղում, երբ կը խօսեմ Թիֆլիսի մեր գործիչների մասին: Այժմ տեսնենք ինչ է շինում երիտասարդութիւնը միւս ապարէզներում:

Ինչ որ նկատեցի իմ հետազօտութեան նախընթաց գլխում ուսանողների կեանքի եւ աշխատասիրութեան մասին, յայտնելով այն միտքը, թէ գաւառացիները գերազանցում են բուն Թիֆլիսեցիներից,—նոյնը պէտք է ասեմ եւ այժմ: Եթէ կը տեսնէք Թիֆլիսում մի երիտասարդ, որ հետաքրքրվում էր ազգային եւ հասարակական գործերով, որ իր աշխատութեան մի մասը նուիրում էր նրանց,—անպատճառ նա գաւառից եկած պէտք է լինի, կամ ինքը, կամ հայրը, կամ պապը: Բուն Թիֆլիսեցին փչացած, այլանդակված եւ հրէշաւոր արարած է. նրա համար հայ կամ հայի յառաջադիմութիւն կոչված բանը ցնորք է: Նա ընկնում է միշտ երկու ծայրայեղութիւնների մէջ, կամ վազում է միայն “չինի„ եւ փառքի ետեւից, կամ համալսարանից վերադառնալով դատարկ գլխով եւ դատարկ սրտով, լինում է իր հարստութեան ցեցը, եւ սկսում է շռայլաբար վատնել այն բոլորը, ինչ որ ողորմելի հայրը դիզել էր իր հոգու, մարմնի եւ պատուի գնով: Այդ վրա-

ցիացած ընտանիքների զաւակները ոչ մի օրինաւոր բան չեն արդիւնաբերում: Գաւառացի երիտասարդը թէ բարոյապէս եւ թէ մտաւորապէս բարձր լինելով, հէնց որ ընկնում է Թիֆլիսում, սկսում է հրաշքներ գործել: Թիֆլիսի հայոց նշանաւոր խմբագրները, վարժապետները, գրողները, բժիշկները, դատաստանական ծառայողները եւ մինչեւ անգամ խոշոր կապիտալիստները, բոլորը գաւառացիներ են: Եթէ կան մի քանի բուն թիֆլիսեցի գործիչներ, նրանց կարելի է մատներով համբարել:

Մի տասն տարի առաջ „չինովնիկութիւնը“ եւ առհասարակ արքունական ծառայութիւնը Թիֆլիսի երիտասարդների համար իր ծաղկեալ մօդայի մէջն էր: Բայց այն օրից, երբ հիմնուեցան բանկեր, երբ երկաթուղու ծայրը հասաւ այս քաղաքին, բարձր ուսում ստացած երիտասարդութիւնը սկսեց որոնել ազատ պարապմունքներ: Կարծես թէ, ատենական տեղերի ճնշված օդը խեղդում լինէր նրանց: Այժմ մի իրխատ բարունք է համարում ազատ փաստաբանութիւնը կամ նօտարիուսի կանտօրան, քան թէ նահանգական դատարանում լինել դիւանի անդամ: Փինանսական ձեռնարկութիւնները աւելի հրապուրում են մեր երիտասարդներին. բանկերը լցված են նրանցով: Րէալական կեանքի րէալական ոգին բաց է արել նրանց առջեւ մի նոր ասպարէզ: Շատերը գնում են հողեր եւ անտառներ Թիֆլիսի շրջակայքում, կամ Վրաստանի կողմերում: Ոմանք կառավարվում են այս եւ այն դրամատիրոջ կալուածները: Ոմանք աքցիզների հետ են խաղում: Իսկ շատերը, որոնք առաջ արհամարհում էին վաճառականութիւնը եւ կապալառութիւնը, որպէս ստոր պարապմունքներ, այժմ սկսել են նոյն գործերով զբաղվել: Ագենտուրան եւ կօմիսիօներութիւնը նոյնպէս ոչ սակաւ գրաւում են մեր երիտասարդներին: Կան օրինակներ, որ համալսարանական- երիտասարդը հիմնում է աղիւսի գոր-

*ծառան, կամ արտասահմանից բերել է տալիս տախտակներ սղոցելու մեքենաներ: Այս տեսակ ձեռնարկութիւնների մէջ, կամ առհասարակ առանձին պարապմունքներով զբաղվողները լինում են խիստ գործունեայ, ուրախ, զըւարթ, նիւթապէս ապահովված, եւ երբէք չեն կորցնում իրանց կենդանութիւնը: Մինչդեռ արքունական ծառայողները գործի միակերպութեան մէջ վաղօրօք ծերանում են, բթամտանում են, եւ մահը երբեմն աւելի շուտ է հասնում, մինչեւ նրանք կը ստանային պենսիա կամ ս տ ա տ ս կ ս ի ս ո վ ե տ ն ի կ ի չին:*

*Մեծ յաջողութիւն են գտնում Թիֆլիսում բժիշկները, մանաւանդ նրանք, որ ռուսաց համալսարաններում աւարտելուց յետոյ մի կամ երկու տարի անց են կացնում արտասահմանում: Ոմանք քէֆի համար են գնում, իսկ ոմանք իսկապէս մի բան սովորում են: Բայց ժողովուրդը միշտ նշանակութիւն է տալիս Գերմանիա կամ Փրանսիա տեսած բժշկին, որպէս արտասահմանի ապրանքին: Աւելի դժբախտ են լինում այն ուսանողները, որոնք սովորել էին գիւղատնտեսական մասը՝ երկրագործութիւն, այգեգործութիւն, գինեգործութիւն եւ այլն: Նրանք կապիտալ չունենալով սովորած մասնագիտութիւնը իրացնելու համար, մնում են անգործ: Իսկ կալուածատէրները չեն հըրաւիրում նրանց, որովհետեւ կանոնաւոր գիւղատնտեսութիւնը դեռ մուտք չէ գործել Կովկասում:*

*Ճշմարիտն ասած, շատ դժուարին է լրագրական յօդուածի մէջ ցոյց տալ այն ընդարձակ աշխարհը, ուր զանազան ապարէզներում գործում է մեր համալսարանական երիտասարդութիւնը: Ես պէտք է նկարեմ միայն ընդհանուր գծերը: Այժմ մնում է մի քանի խօսք ասել այն երիտասարդների մասին, որոնք աւարտում են կամ կիսատ դուրս են գալիս զանազան գիմնազիաներից եւ միջնակարգ դպրոցներից, եւ համալսարան մտնելու*

միջոցներ չունենալով, մնում են Թիֆլիսում: Դրանք լինում են ըստ մեծի մասին աղքատների որդիներ եւ գիւղացի նստարանները թողնելուց յետոյ, ստիպված են աշխատել օրական հացի համար: Մեր վաճառականները նրանց չեն ընդունում գործակատարութեան մէջ. մտածում են, որ ուսեալներին չեն կարող հնազանդութեան մէջ պահել, որպէս իրանց սովորութիւնն է: Ուրիշ ոչինչ չէ մնում նրանց, բացի արքունական ծառայութիւնից, բացի վարժապետութիւնից մանր դպրոցներում, կամ անգործ թափառելուց: Դրանք լինում են աւելի փառասէրներ քան համալսարանականները, ստոր պարապմունքների „լայաղ“ չեն անում: Դեղին կօճակները եւ մունդիրը սաստիկ հրապուրում են նրանց:

Հիմա մտնենք մտաւորական աշխարհը, տեսնենք, ի՞նչ են շինում գրողները, ուսուցիչները, արտիստները, եւ առհասարակ այն երիտասարդութիւնը, որ ներկայացնում է Թիֆլիսի մեր ինտելիգենցիան:

Ես մի առանձին բաւականութիւն եմ զգում, երբ այժմ պէտք է նկարագրեմ կեանքը այն երիտասարդների, որոնք յանձն առնելով ամեն տեսակ զոհաբերութիւններ: որոնք համբերելով ամեն տեսակ հալածանքների, պատերազմում են արգելքների դէմ, գործում են, աշխատում են, թէեւ առանց խրախոյս եւ մխիթարութիւն գտնելու ամբոխից, բայց դարձեալ լի հաւատքով կրկնում են. „ապագան մեզ է պատկանում“: Այդ յոյսը լցնում է նրանց սիրտը մի արքայական հպարտութեամբ, եւ իրանց աղքատութեան մէջ խիստ զզուանքով նայում են մօտից անցնող բուրժուային, որ փառաւոր կառքի մէջ նստած, թընդեցնում է Թիֆլիսի փողոցները:

Առանձին ուշադրութեան արժանի է այն երիտասարդութիւնը, որ պտըտվում է այս եւ այն խմբագրատան շուրջը: Դրանք կազմում են տարբեր շրջաններ, որ որոշ-

վում են իրանց յատուկ առանդութիւններով։ Ես ոչ մի լրագրի ուղղութիւնը, լաւ կամ վատ կողմերը քննադատելու նպատակ չունեմ։ Ես պիտի վեր առնեմ գործիչներին միայն։

Իւրաքանչիւր սերունդի համար թանգ է ժամանակի մի որոշ շրջանը։ Ես երբէք մոռանալ չեմ կարող 72 թըւականը, երբ սկսեցաւ հրատարակվել „Մշակ" լրագիրը։ Ի՞նչ կեանք էր տիրում այն ժամանակ Թիֆլիսում, ի՞նչ դրութեան մէջ էր գաւառների վիճակը։—Ամեն տեղ տիրում էր մի տեսակ անշարժութիւն, մի տեսակ թմրութիւն, մի տեսակ մեռելութիւն։ Յանկարծ, կարծես մի դիւթական գաւազանի հարուածքից, զարթեցաւ կեանքը։ Ոչ ոք չէր հաւատում, թէ այսպէս կարող էր լինել։ Հաւատում էր միայն երիտասարդների մի փոքրիկ խումբ։ Ես յիշում եմ այն գեղեցիկ տարիները, այն հրաշալի գիշերները, երբ այդ խումբը հաւաքված խմբագրատան մէջ, կարդում էին, ծխում էին եւ վիճում էին։ Մեզանից շատերը հագներին շապիկ չունէին, մտնում էին այնտեղ բոլորովին պատառոտած կօշիկներով, այսուամենայնիւ, մենք ամենքս էլ ֆանատիկոսի յուսով հաւատում էինք, թէ կըտիրապետենք մի մեծ ապագայի։

Սկզբում այս լրագրի շուրջը խմբվեցաւ համալսարանական դ ի պ լ օ մ ա ւ ո ր երիտասարդութիւնը։ Բայց նրանք շուտով ցրուեցան. կարծես թէ, գործը խորթ թւեցաւ իրանց։ Նրանք չը հաւատացին այս լրագրի ճակատագրին։ Մնացին դիպլօմից զուրկ ի ն ք ն ո ւ ս ն ե ր ը,—ինքնակրթութեամբ զարգացան մանկտին,—անաջողութիւնների տակ ճնշված, ամեն տեղից հալածված, բայց դարձեալ իր վեհութիւնը պահպանած մանկտին։ Ահա այդ ուժերը իրանց ուսերի վրա բարձրացրին „Մշակի" դրօշակը։

Հին „Մեղուն" այն ժամանակ նմանվում էր մի մաշված եւ ջարդված սայլակի, որին ճռնչելով քարշ է տալիս

մի ուժալժալի ձի: Սայլավարը բոլորովին յուսահատված, մոլորված եւ կէս ճանապարհի վրա կանգնած, մտածում էր, „հիմա դէպի ո՞ր կողմը քշեմ“:—„Մշակից“ բաժանված խումբը այս դրութեան մէջ գտաւ մաշված սայլակը: Նրան նորոգեցին, կարկատեցին եւ սկսեցին մի եւ նոյն ճանապարհով յառաջ քշել. . .

Երիտասարդութեան աշխատանքը սուրբ է ինձ համար, որովհետեւ նոր կեանքի եւ նոր զօրութեան արտայայտութիւն է: Ես „Մեղուի“ ուղղութիւնը քննադատելու նպատակ չունեմ. այստեղ նոյնպէս գործում են մանուկ ուժեր: Բայց պէտք էր ի նկատի առնել այն մեծ Վերանորոգչի խրատը, թէ—նոր գինին պէտք է նոր տիկի մէջ ածել. եթէ տիկը հին է, կը պատռվի, եւ գինին վիթվելով, կը ոչնչանայ“, . .

Թէ ինչ կեանք էր տիրում „Մեղուի“ խմբագրատան մէջ, այդ մասին ոչինչ ասել չեմ կարող, որովհետեւ նրա շրջանի մէջ երբէք չեմ գտնվել: Բայց այսքանը յայտնի էր, որ „Մեղուին“ շրջապատում էր համալսարանական եւ այլ բուստի կողմից փոքր ի շատէ պատրաստված երիտասարդութիւնը, որոնք չէին կրում կեանքի այն տաժանութիւնները, որոնց դէմ ստիպված էին պատերազմել „Մշակի“ աշխատակիցները:

Եւ այսպէս, համալսարանականները հեռանալով „Մշակից“, ասպարէզը մնաց ինքնուսներին: Այդ լրագրի խմբագիրը խիստ ճիշտ համեմատութիւն արեց, թէ նա թողեց դպիրներին եւ փարիսեցիներին, եւ իրան շրջապատեց հասարակ ձկնորսներով,—ժողովրդի չը փչացած զաւակներով: Բայց պէտք էր ցոյց տալ հասարակութեանը, թէ այդ դիպլօմից զուրկ ուժերով կարելի էր կազմել մի նոր շկօլա: Գործիչների առաջեւ դրած էին անհագին դժուարութիւններ անհագին պարտականութիւնների հետ: Հողը միանգամայն խոպանացած էր: Աշխատանքի բաժանութիւն

չը կար: Ուզում եմ ասել, չը կային ուրիշ օրգաններ, որոնց իւրաքանչիւրը յանձն առնելով մշակութեան մի ճիւղը, սկսէին աշխատել: „Մեղուն“ խիստ ծոյլ գործակից էր, նոր բան արդիւնաբերել չէր սիրում, իսկ „Արարատի“, „Հայկական Աշխարհի“ եւ „Դպրոցի“ մասին խօսելն անգամ աւելորդ է: Բայց հասարակութիւնը մտաւոր սնունդ էր պահանջում: Եւ այս պատճառով „Մշակը“ ստիպուած էր իր թերթերը բեռնաւորել ամեն տեսակ նիւթերով: Պուբլիցիստիկան եւ բելետրիստիկան ձեռք ձեռքի տուած էին ընթանում: Վիպասանը նկարում էր պատկերներ ժողովրդի կեանքից, ցոյց տալով նրա տգեղ այլանդակութիւնները: Տնտեսագէտը հարուածում էր անխիղճ վաշխառուի եւ հարստահարիչ կապիտալիստի յարաբերութիւնները մշակ դասի հետ: Մօրալիստը խորտակում էր այն սեւ նախապաշարմունքները, որ ծանրացած էին ամբոխի հոգու վրա, եւ մատուցանում էր բարոյական նոր սնունդ: Առողջ խօսքը բղխում էր կենդանի աղբիւրից եւ տարածում էր դէպի ամեն կողմ նոր մտքեր: Կրիտիկական ոգին գործում էր իր անխնայ անգթութեամբ: Նա մտնում էր հեղինակի կաբինետը, վաճառականի խանութը, արհեստաւորի գործարանը, ծառայողի ատեանը, գիւղացու խրճիթը, մեծատան սալօնը, վարժապետի դպրոցը, կղերի մենարանը,—մի խօսքով, կեանքի բոլոր ծալքերում պտըտվում էր նա, եւ խաւարի միջից դուրս էր քաշում, մերկացնում էր այն ամենը, ինչ որ տգեղ էր, ինչ որ անարժան էր: Այդ բոլորը գործվում էր այն շկօլայի մէջ, որ հիմնեց „Մշակը“, ուր երիտասարդութիւնը ուսանում էր եւ ուսուցանում էր:

Ես երբէք չեմ կարող մոռանալ այն աղմկալի ժողովները, որ կազմվում էին այդ լրագրի խմբագրատան մէջ մի քանի տարի առաջ: Եթէ ես ունեցել եմ իմ կեանքում մի քանի ոսկի րոպէներ,—դրանք պատկանում են

*այն ժամանակին: Ժողովների մէջ ոգեւորված եւ բորբոքված վիճաբանութիւնները տեւում էին շատ անգամ մինչեւ գիշերվայ ժամի երկուսը: Փոքրիկ, բոլոր նիւթական միջոցներից զուրկ, բայց բարոյապէս հարուստ խումբը ծրագրում էր հսկայական պրօեկտներ: Այդ դօն-քիշօտութիւնը, երեւակայութեան այդ տենդային բորբոքումը, թէեւ մասամբ ծիծաղելի էր, բայց գեղեցիկ էր, որպէս մանուկի ժպիտը, որ արտայայտութիւն է նոր սկսվող կեանքի: Իդէալների խորին արբեցութեան մէջ, ամեն մի երիտասարդ մոռանում էր իր վիճակի տաժանութիւնը, եւ մտածում էր, վիճում էր հասարակաց բարօրութեան մասին: Կէս գիշերից յետոյ նիստը վերջանում էր: Խումբը ցրիւ էր գալիս բուլվարների վրա, երբ բոլոր հիւրանոցները փակված էին լինում: Բայց դարձեալ խուլ եւ անապատացած փողոցների մէջ շարունակվում էր ընդհատված վիճաբանութիւնը: Այն ժամին, երբ բախտաւոր Թիֆլիսեցին հանգստանում էր իր փառաւոր քնարանի մէջ, մեր կիսամերկ շրջմոլիկները, Գօլովինսկի Պրօսպեկտի սալերը դղրդելով, քննադատում էին մի նշանաւոր հասարակական հարց: Ձիւնը, անձրեւը, սառն քամին չէր քշում նրանց դէպի իրանց ողորմելի բնակարանները, այլ աւելի զովացնում էր եւ աւելի կազդուրում էր տաքացած գլուխները: Նրանք բաժանվում էին միմեանցից, երբ զարկում էր առաւօտեան զանգակը. այն ժամանակ գնում էին հանգըստանալու, որ միւս օրը նոր ուժով սկսեն աշխատել:*

*Եթէ ընդունենք այն ընդհանուր պայմանը, թէ իւրաքանչիւր 25 տարուց յետոյ ամեն մի երկրի երիտասարդութիւնը փոխվում է, այն ժամանակ 58 եւ 72 թւականները խորհրդաւոր նշանակութիւն կստանան մեզ համար: Երկու որոշ ժամանակամիջոցներ ներկայացնում են երկու որոշ երիտասարդութիւն, մէկը իդէալական, միւսը ռէալական: Առաջինը ծնունդ է „Հիւսիսափայլի“, իսկ երկ-*

բորղը ծնունդ է „Մշակի“: Ես յիշում եմ երկու պերիօդ-ներն եւս, որովհետեւ երկուսի մէջ էլ գործել եմ: „Հիւսի-սափայլի“ ժամանակ յայտնվեցան բանաստեղծներ, իսկ „Մշակի“ ժամանակ պուբլիցիստներ: Բացառութիւնները շատ աննշան են: Եթէ վեր առնենք մեր այժմեան փոքր ի շատէ աչքի ընկնող, կամ մանր-մունր գրողներին, կը տեսնենք, որ բոլորը „Հիւսիսափայլի“ ժամանակից մնա-ցորդներ են: Նոր տաղանդներ չըյայտնվեցան: Եւ այս պատճառով, թէեւ լրագրութիւնը ծաղկեց „Մշակից“ յե-տոյ, բայց գրականութեան դաշտը մնաց անապատ:

Յիշեալ երեւոյթի պատճառը կարելի է հեշտ կեր-պով բացատրել: Անհերքելի է, որ մեր մտաւոր զարգացման եւ ռուսների մէջ կայ մի ներքին կապ: 40 եւ 60 թւական-ները տուեցին ռուսաստանին իր ամենաերեւելի գրողնե-րին: Նրանցից յետոյ տիրեց թմրութիւնը: Նոյնը պատա-հեց եւ մեզ հետ: Համարեա մի եւ նոյն ժամանակներում լոյս տեսաւ „Հիւսիսափայլը“ եւ ներկայացրեց մի ամբողջ կարգ գրողների: Իսկ նրանցից յետոյ նոր քանքարներ չը յայտնվեցան:

Երբ հսկաներ չեն յայտնվում, ասպարէզը մնում է զաճաճներին: Ծիծաղելի էր տեսնել, որ վերջին տարինե-րում իւրաքանչիւր համբակ ձգտում էր բանաստեղծ եւ մատենագիր լինել: Խիստ կրիտիկայի բացակայութիւնը աւելի լրբացրեց այդ խենթերին: Չը պատրաստված եւ անտաղանդ գրողները աւելի անհամեստ եւ աւելի յան-դուգն են լինում: Կարելի է իսկոյն նկատել, թէ որպէս քիթը վեր քաշած, եւ որպէս հպարտութեամբ Թիֆլիսի փողոցներով անցնում է մի իմաստակ, որի մի քանի նա-մակները տպվել էին այս եւ այն լրագրում, կամ հրա-տարակել էր մի յիմար բրօշիւր: Վիկտոր Հիւգօն իր փառ-քի բարձրութեան վրա աւելի համեստ է, քան թէ այս տեսակ խենթերը: Առհասարակ ամեն ազգի մէջ սկզբում

յայտնվում են խոշոր տաղանդներ եւ ձգում են իրանց ետեւից բազմաթիւ հետեւողներին: Իսկ մեր մէջ մի Աբովեան յայտնվեցաւ, որի գիրքը, թէեւ տենդենցիայով հարուստ, բայց լեզուի կողմից ճապաղ, եւ գեղարուեստական արժանաւորութիւններից թոյլ մի ստեղծագործութիւն է: Այդ հեղինակութիւնը ունեցաւ իր մի քանի անշնորհք հետեւողներին: Ես հարկ չեմ համարում ցոյց տալ օրինակները:

Բայց պէտք է արտաքին հանգամանքները նոյնպէս նպաստէին նոր գրողների յայտնվելուն: Անհատական գըրականական երիտասարդութիւնը աղքատ է լինում: Քաղցածութիւնը թէեւ մի կողմից զօրութիւն է տալիս տաղանդին, բայց միւս կողմից կարող է եւ սպանել նրան: Ոչ բոլոր բնաւորութիւնները լինում են տոկուն: Թէեւ պատահում են ճշմարիտ երկաթի բնաւորութիւններ: Ես ճանաչում եմ մէկին, որ ամեն տարի գրում է մի կամ երկու վէպ եւ յամառութեամբ փակում է իր գրասեղանի արկղիկի մէջ: Բայց նա շատ անգամ օրեկան ծխելու պապիրոսի փող չունի: Մի օրինաւոր ամսագիր կարող էր նպաստել նոր ծնվող ուժերի զարգանալուն: Եւ այս պատճառով „Փորձի“ հրատարակութիւնը սկզբում ուրախութեամբ ողջոյնվեցաւ մեր ամենի կողմից, մանաւանդ, որ այդ ամսագրի խմբագիրը առաջին օրինակը եղաւ, որ սկսեց վարձատրել իր աշխատակիցներին: Բայց սպասված յոյսը չը պսակվեցաւ: Որովհետեւ „Փորձի“ խմբագրատան մէջ հաւաքվեցան մի եւ նոյն հին ուժերը,—թարգմանիչները, կօմպիլատօրները, արխիօլօգները, մաշված թեմաները նորից ծամծմող վիպասանները, աւերակների արձանագրութիւններ արտագրող եւ գերեզմանատների մէջ թափառող, բայց կենդանի մարդիկ չը տեսնող ճանապարհորդներ,—իսկ ինքնուրոյն բաներ գրողներ, կենդանի նիւթերի մասին գրողներ՝ խիստ սակաւ մտան այդ ամսագրի

*խմբագրատան մէջ: Եւ այս է պատճառը, որ „Փորձը“ ներկայացնում է կատարելապէս Մասխեանի խանութը, այսինքն մի մագազին, ուր վաճառվում են գլխաւորապէս մաշված հնոտիներ մի քանի թարմ ապրանքների հետ: Կարծես թէ, այս ամսագիրը մի ապսպրած (заказной) հրատարակութիւն լինէր, որի ուղղութեանը, երեւի, ինքը խմբագիրն էլ չէ հաւատում. . .*

*Ես ցոյց տուեցի Թիֆլիսի մեր ինտելիգենցիային պատկանող երիտասարդութեան երեք զանազան խմբերը, որոնք շրջապատում են երեք հիմնարկութիւնների՝—„Մըշակի“, „Մեղուի“ եւ „Փորձի“—խմբագրատները: Դրանք ձեւացնում են երեք տարբեր կուսակցութիւններ, որոնց դիտաւորութիւնը իսկապէս մի եւ նոյնն է, բայց զանազանութիւնը նրա մէջն է միայն, որ իւրաքանչիւրը այլ եւ այլ ճանապարհով, այլ եւ այլ ուղղութեամբ է դիմում իր նըպատակին: Իսկ ո՞ր ճանապարհը աւելի ուղիղ է, ո՞րը աւելի շուտ կը հասցնէ,—այդ ցոյց կը տայ մերձաւոր ապագան: Այսուամենայնիւ, այդ երեք խմբերը, լաւ թէ վատ, գործում են, աշխատում են, եւ այդ իսկ պատճառով յարգելի են:*

*Բայց կայ մի ուրիշ խումբ եւս, որ յիշեալ երեք կուսակցութիւններից ոչ մէկին չէ պատկանում: Այդ խումբը ոչինչ չէ շինում, միայն մէջտեղում անգործ պտըտվում է, խօսում է, քննադատում է, զէվզէկութիւններ է անում եւ ինտրիգաներ է սարքում: Ով պատահել է կարդալ Ալֆոնս Դօդէի վերջին ռոմանը (Jacques), խիստ ճիշտ գաղափար կարող է ստանալ յիշեալ խմբի մասին: Այդ ռոմանի մէջ կայ մի տիպ Դարժանտօն անունով, որը իրան երեւակայում է երեւելի բանաստեղծ: Նրա գլխում լցված են հարիւրաւոր գրքերի վերնագիրներ, որոնց նա մի ժամանակ պէտք է գրէ: Միայն սպասում է իր մուզային, սպասում է ոգեւորութեան: Այդ ոգեւորութիւնը նրա կարծիքով կարող է*

տիրել իրան, երբ ինքը կը բնակվի մի շքեղ տան մէջ, շըրջապատած գեղեցիկ պարտէզով եւ ծաղիկներով, նազելի սիրուհու կողքին, եւ աչքի առաջեւ կունենայ բնութեան հրաշալի տեսարանները: Այդ բոլորը սարքում է նա, բայց մուզան դարձեալ չէ յայտնվում: Նրա իդէաները, նրա սիւժէտները գողանում են: Նոյն է տեսում մի գիրք, մի յօդուած, Դարժանտօնը բարկանում է, թէ դա գրականական գողութիւն է, թէ այն նիւթը ինքը վաղուց գլխումը ունէր եւ մտածում էր գրել: Դարժանտօնը շրջապատել է իրան իր նման մի քանի անաջողակներով (неудачники), որոնք նոյնպէս մեծ կարծիք ունեն իրանց հանճարի վրա, եւ ճաշեր են ուտում բանաստեղծի մօտ, շողոքորթում են նրա տաղանդը, եւ վճռում են ամբողջ մարդկութեան ճակատագիրը: Վերջապէս Դարժանտօնը մտածում է մի թերթ հրատարակել եւ մի անգամով ոչնչացնել Փարիզի բոլոր պարբերական հրատարակութիւնները: Նրա բարեկամ անաջողակները խոստանում են աշխատակցել եւ միլիոններ վաստակելու հաշիւ են տեսնում: Դարժանտօնը մի տեղից փող է գտնում եւ սկսում է հրատարակութիւնը: Խմբագրատան հիմնական դրամագլուխը մտնում է նրա անաջողակ աշխատակիցների քսակը, իսկ ինքը ստանում է երկու բաժանորդներ միայն, մէկը իր սիրուհին, միւսը իր սիրուհու նախկին սիրողը: Դարժանտօնը այսքանը գոնէ կատարեց, բայց Թիֆլիսի մեր դարժանտօնները դեռ մտածում են . . .

Ամեն մի պերիօդ երիտասարդութեան կեանքի մէջ նշանաւոր է լինում մի առանձին գործունէութեամբ: Մեր գրական երիտասարդութիւնը այժմ զոհաբերութեան պերիօդի մէջն է գտնվում: Եւ այս պատճառով մեր բոլոր կըրթողական հիմնարկութիւնները, որպէս են՝ լրագիր, ամսագիր, թատրօն, դպրոց, եւ այլն, պահպանվում են զոհաբերութիւններով: Խօսենք իւրաքանչիւրի մասին առանձին:

Մինչդեռ ուրիշ ազգերի մէջ լրագրապետները հարըս-

*տանում են, եւ աշխատակիցները ահագին փողեր են ըս-տանում,—մեր խմբագիրները ոչ միայն չեն շահվում, այլ իրանց քսակից ամեն տարի մի քանի հազար րուբլի վնաս են կրում: Այդ մեծ զոհաբերութիւն է: Ժողովուրդը չէ նըպաստում գործին: Ամենայաջողված պարբերական հրատարակութիւնը հազիւ տարեկան 1000 բաժանորդ է ստանում, իսկ անյաջողները 3—4 հարիւր: Նոյնը կարելի էր ասել եւ գրքերի մասին: Ուրիշ ազգերի մէջ մի բանաստեղծ մի լաւ ռոման գրելով, իր ամբողջ կեանքը ապահովացնում է: Իսկ մեր մէջ բախտաւոր պէտք է համարել հեղինակին, եթէ կարողանայ տպագրութեան ծախսը դուրս բերել: Եւ այս պատճառով գրականական ասպարէզը մեր երիտասարդութեան համար մի փշոտ ասպարէզ է: Նրանց պէտք է ժամանակի նահատակներ համարել: Ապագան կը գնահատէ նրանց, կամ կաստուածացնէ, այդ ուրիշ խնդիր է, իսկ ներկան հաց է պահանջում: Իդէալական սէրը ոչ ամեն ժամանակ կարող է օժանդակել գրողներին յարատեւելու իրանց պարապմունքի մէջ, երբ որ այդ պարապմունքը ապրուստի միջոց չէ տալիս: Այդ պարագաները փոքր պատճառներ չեն, որ մեզանում գրողներ կամ իսպառ չեն յայտընվում, կամ եղածները յառաջադիմութիւն չեն գործում:*

*Մենք չէինք ունենայ մեր այժմեան պարբերական հըրատարակութիւնները, եթէ նրանց խմբագրները նիւթապէս ապահովված անձինք չը լինէին: Այդ մի մեծ բախտ է, որ հարուստները ձեռնարկում են այս տեսակ գործերի, եւ կարող են ամեն տարի մի քանի հազար րուբլի զոհել իրանց գաղափարին: Բայց մինչեւ երբ: Ընդունում եմ, որ մի ժողովրդի մէջ, որպէս մերն է, այս տեսակ ձեռնարկութիւնները սկզբում պէտք է զոհաբերութեամբ հիմնված լինէին: Բայց այդ անում է մի ընկերութիւն, եւ ոչ մասնաւոր անձինք: Այդ կէտից նայելով, մեր խմբագրների աշխատութիւնը պէտք է բոլորովին բացառական երեւոյթ*

համարել: Բաւական չէ, որ նրանք զոհում են իրանց արժա-թը, այլ զոհում են իրանց հանգստութիւնը, առողջութիւնը եւ վերջապէս բախտը.—գուցէ ուրիշ ասպարէզներում նը-րանք աւելի երջանիկ կը լինէին: Ես թէեւ շատ փոքր ծա-նօթ եմ մեր խմբագրների մասնաւոր կեանքին, բայց դար-ձեալ գիտեմ, թէ ինչ տաժանական աշխատութիւն են կը-րում նրանք, գործի մեծ մասը իրանց ձեռքով կատարելով: Խմբագիրը պէտք է ինքը ուղղէ գաւառներից եկած թըղ-թակցութիւնները եւ յօդուածները. պէտք է շատ անգամ մինչեւ գիշերվայ ժամի 3-ը տպարանում աշխատէ, սըրբա-գրէ. եւ տուն վերադառնալուց յետոյ պէտք է դարձեալ չը քնէ, այլ նստած պէտք է միւս համարի համար յօդուած-ներ պատրաստէ: Առաւօտեան 9 ժամին դարձեալ կարե-լի է տեսնել նրան գրասենեակի մօտ, հասցէներ է գրում, որ նոր դուրս եկած համարը փօստից յետ չը մնայ: Այդ բոլոր մտաւոր եւ մեքենական աշխատութիւնները, որ սար-սափելի կերպով մաշում են մարդու կեանքը, կատարում են մեր խմբագրները, առանց որ եւ իցէ նիւթական շահ ունենալու, միայն բարոյապէս վարձատրվելու յուսով, որից դարձեալ զրկում է նրանց հասարակութիւնը: Այլ եւս չեմ խօսում աշխատակիցների մասին, որոնց զոհաբերութիւն-ները նոյնպէս ոչ սակաւ համակրութեան արժանի են:

Հիմա դառնանք դէպի արտիստական երիտասարդու-թիւնը, դէպի թատրոնը:

Ինձ պատահել է կարդալ Թիֆլիսի հայոց բեմի վե-րաբերութեամբ մի թատրոնական ժամանակագրութիւն մի-այն. որքան յիշում եմ, նա գործողութիւնների պատմական մի հաւաքածու էր, բայց ոչ երիտասարդ արտիստների կեանքի նկարագիր: Այսուամենայնիւ, այդ աշխատութիւնը ինձ վրա խիստ տխուր տպաւորութիւն թողեց: Անհնարին է երեւակայել, թէ որքան դժուարութիւնների դէմ մաքա-ռելով, մեր դերասանները կարողացել են պահպանել հա-

յոց բեմը: Նրանք ստիպված էին պատերազմել ժողովրդի նախապաշարմունքի դէմ, որ դերասանի վրա նայում է, որպէս մի „օյինբազի“ վրա, եւ ոչ որպէս կրթութեան ըսպասաւորի վրա: Նրանք ստիպված էին պատերազմել քաղցածութեան դէմ, որովհետեւ այդ արհեստը հաց չէր տալիս: Ես վերջապէս ստիպված էին պատերազմել ուրիշ զանազան ճնշումների դէմ, որոնք մեծ խոչնդոտներ էին դընում գործի յառաջադիմութեանը: Այդ բոլոր զոհաբերութիւնների մէջ քաջալերում էր, ոգեւորում էր նրանց բեմի գաղափարը: Ինչպէս լրագրութիւնը կամ օրագրութիւնը սկսվեցաւ եւ յաջողվեցաւ միայն սիրողների ձեռքով, այնպէս էլ հայոց բեմը պահպանվեցաւ սիրողների ջանքերով: Դերասանական խումբ իսկապէս մենք չենք ունեցել: Բայց ասելով սիրողներ, պէտք չէ հասկանալ պատահական ներկայացնողներ, որոնք մի կամ երկու անգամ զուարճութեան համար բեմ էին դուրս եկել: Մեր սիրողները մի կազմակերպված խումբ էին եւ որոշվում էին հասարակ դերասանից նրանով միայն, որ վարձկաններ չէին, այլ բարոյապէս համակրում էին բեմի արհեստին: Նրանց առաջնորդում էր բեմի կրթողական նշանակութիւնը եւ ոչ անձնական շահը, որ այնքան չնչին էր, մինչ յիշելն անգամ աւելորդ է: Ու պէտք էր երկաթի տոկունութիւն ունենալ մի այսպիսի գործ երկար տարիներ յառաջ տանելու համար: Այս պատճառով, թէեւ յայտնվեցան տաղանդներ, բայց տուեցին եւ զոհեր. . . *

Ոչ սակաւ ուշադրութեան արժանի է բեմական գրող-

* Ես այժմեան թատրօնական կոմիտէտի գործունէութեան մասին խօսել հարկ չեմ համարում, որովհետեւ դեռ յայտնի չէ, թէ վախճանը ինչ կը լինի: Միայն այսքանը կարելի է նկատել, որ առաջ դերասաններին թողնում էին քաղցած մեռնել, իսկ այժմեաններին գլխին ոսկիներ են թափում:—Երկու ծայրայեղութիւններ, որ չափազանցութեան են հասնում:

ների վիճակը: Նրանք գրում էին պիեսաներ եւ մի եւ նոյն ժամանակ ստիպուած էին պահպանել կամ մի կերպով հովանաւորել դերասանների խումբին, որ նրանց ամբողջութիւնը չը խանգարուէր, որպէս զի խաղացուէին իրանց ըստեղծագործութիւնները: Այսպիսի մի աշխատութիւն յանձն էր առել Մօլիէր, բայց նա շահւում էր իր ձեռնարկութիւնից: Իսկ մեր հեղինակները իրանց քսակից ծախսում էին, որ տեսնեն բեմի վրա իրանց նկարած տիպերին: Այդ բաւական չէ, նրանք շատ անգամ ռեժիսօրի պաշտօն էին կատարում, տօմսակներ էին ծախում, մի խօսքով, ամեն հնարք գործ էին դնում, որ դերասանները շահվին: Այդ բոլորը այժմ մեր աչքին խիստ հասարակ բաներ են երեւում: Բայց կը գան օրեր, երբ վերջապէս հայոց բեմական գրողը կը ստանայ հազարներ իր հեղինակութեան համար: Այն ժամանակ երկու անուններ միշտ անմոռաց կմնան հայոց թատրօնի ժամանակագրութեան մէջ, թէ որպէս հիմնողներ, թէ որպէս պիեսաների ստեղծագործող տաղանդներ:

Նոյն երեւոյթները, ինչ որ տեսանք լրագրութեան, գըրականութեան եւ թատրօնի մէջ, կըտեսնենք նաեւ դըպրոցների վերաբերութեամբ: Ռուսաստանի մեր բոլոր նշանաւոր դպրոցները, սկսեալ Լազարեան, Ներսէսեան դըպրոցներից, մինչեւ Էջմիածնի ճեմարանը եւ Ախալցխայի ծխական դպրոցները, հիմնված են կամ մասնաւոր անձերի կտակներով, կամ ժողովրդի նուէրներով: Դարձեալ զոհաբերութիւն, դարձեալ ս ի ր ո ղ ն ե ր: Բայց այդ բոլոր նըւիրուած հազարաւոր րուբլիները ինձ այնքան չեն գրաւում, որքան գրաւում է ինձ օրվայ մէջ մի կամ երկու ժամ ձրի դասատուութիւնը մի երիտասարդի, որ զոհում է նա իր թանգ ժամանակից այս եւ այն օրհորդաց դպրոցի օգտին: Եթէ մեր երիտասարդութիւնը ունի գովելի յատկութիւններ, ամենագլխաւորներից մէկը այդ է: Տեսնում ես, մի երիտասարդ որ եւ է ծառայութեան մէջ, հազիւ քարշ է տա-

լիս իր ապրուստը, կէսօրվայ ժամը երկուսին դառնում է տուն, շտապով ճաշում է, եւ իսկոյն վազ է տալիս այս եւ այն օրիորդաց դպրոցը ծրի դասատուութիւն անելու: Նա այնքան ճիշտ է, որ մի րոպէ յետ չէ մնում իր դասից: Նա այս տեսակ դպրոցները, որ հիմնվեցան եւ պահպանվում են երիտասարդների զոհաբերութիւններով, ամենածաղկեալ դպրոցներն են Թիֆլիսում: Մինչդեռ միւսների մէջ, ուր վարժապետներին վճարում են, անճշտութիւններ, անկարգութիւններ շատ անգամ անպակաս են լինում: Առհասարակ խօսելով, վերջին տասն տարվայ ընթացքում մեր երիտասարդութիւնը ուսման եւ կրթութեան վերաբերութեամբ հրաշք գործեց: Դպրոցների կազմակերպութեան մէջ մտան նշանաւոր փոփոխութիւններ:—Մանկավարժական նոր ձեւեր, նոր եղանակներ, նոր դասագրքեր մուտք գործեցին նրանց մէջ: Ի հարկէ, այդ բոլորը, որպէս առաջին եւ երկրորդ քայլ, չէր կարող կատարեալ լինել, բայց խոստանում է մեծ ապագայ:

Բոլոր այդ գործող երիտասարդութիւնը, թէ լրագրութեան մէջ, թէ գրականութեան մէջ, թէ թատրօնի մէջ եւ թէ դպրոցների մէջ, համարեա մի եւ նոյն անձինք են, որ կոչվում են ընդհանուր անունով ա զ գ ա ս է ր ն ե ր, թէեւ իրանց մէջ մի առանձին սէր չունեն: Դրանք բաժանված են զանազան խմբերի եւ կուսակցութիւնների, որոնց իւրաքանչիւրը ունի իր պարագլուխը: Այդ մեծ ցաւ չէ, որովհետեւ այս տեսակ բաժանմունքները կարող են ծնեցնել եռանդ եւ բարի նախանձ: Բայց ցաւալին այն է, որ գործիչների թիւը շատ փոքր է, թէեւ պէտք է մտածել, որ մի բուռն անձնանուէր երիտասարդներ կարող են կենդանացնել մի ամբողջ աշխարհ:

Ես պահեցի վերջի համար երիտասարդութեան մի քանի դասեր, որոնք կազմում են հիմնական կապիտալը մեր ժողովուրդի ապագայ բարօրութեան: Իմ խօսքը գոր-

ծակատարների (պրիկազչիկների), արհեստաւորների եւ մշակների մասին է:

Մի փոքրիկ հայեացք ձգենք, թէ ինչ վիճակի մէջ էր վաճառականութիւնը Թիֆլիսում 15—20 տարի առաջ: Վաճառականը որոնում էր մթին խորշեր իր ապրանքները ծախելու համար. խանութի նեղ լուսամուտները ծածկում էր նա թափանցիկ կտաւով, կամ փոքրիկ ապակիներ ներկում էր կարմիր գունով: Խաւարի մէջ նրա կարծիքով աւելի լաւ էր երեւում ապրանքը եւ աւելի հեշտ կարելի էր խաբել՝ մուշտարուն„: Պարսկական ճաշակով շինուած հին քարվանսարաները բոլորովին համապատասխանում էին վաճառականների այդ կարեւորութեանը: Հիմա էլ կարելի է տեսնել այն տեսակ խանութներ բաղնիքների կողմի քարվանսարաներում կամ հին բազազխանայում (темный рядъ): Իւրաքանչիւր քարվանսարայ, որպէս կենտրոն մի խումբ վաճառականների, ունէր իր առանձին ուստաբաշին կամ թաջիրբաշին, այսինքն վաճառականների գլխաւորին: Նա վճռում է առեւտրականների մէջ ծագած վէճերը, եւ թէ պաշտօնական, թէ բարոյական ազդեցութիւն ունէր նրանց վրա: Վճիռները լինում էին բերանացի, առանց որ եւիցէ ատենագրութեան: Բայց առաջին վաճառականական դատարանի (коммерческій судъ) բացվելուց յետոյ, որ տեւեց միայն մի քանի տարի, թաջիրբաշիների ազդեցութիւնը թուլացաւ, թէեւ մինչեւ այսօր հին վաճառականները մի առանձին ափսոսանքով են յիշում վաղեմի դրութիւնը ասելով, թէ այն ժամանակ աւելի լաւ էր, գործերը շուտ էին վճռվում:

Բայց այն օրից, երբ հին քարվանսարաները իրանց նշանակութիւնը կորցրին եւ փողոցների վրա յայտնվեցան եւրօպական ձեւով մագազիններ, վաճառականների կեանքի մէջ մի նոր փոփոխութիւն առաջ եկաւ: Առաջին դուքանը եւրօպական մագազին դառնալով, Թիֆ-

*լինի վաճառականն էլ չուխան, արխալուղը եւ մորթէ գդակը փոխեց, սիւրթուկ, ժիլէտ հագաւ, շլեապա կրեց, եւ սկսեց եւրօպացու նման առեւտուր անել, թէեւ քուն գործողութեան մէջ չը փոխվեցան վաղեմի ձեւերը: Այսուամենայնիւ, դա մի մեծ քայլ էր դէպի առաջադիմութիւն: Թիֆլիսում մի ժամանակ մատով էին ցոյց տալիս այն վաճառականին, որ միանգամ ոտքը դուրս էր դրել Ռուսաստանի սահմանից: Իսկ այժմ Փարիզ, Մարսէլ, Վիէննա, Լայպցիկ, Լօնդօն, Մանչեսթեր, Մօսկվա եւ Նիժնի-Նովգորօդ քաղաքները այնքան սովորական են դարձել Թիֆլիսեցու համար, որպէս Մուշտէյիդի այգին: Եւ այդ փոփոխութիւնները եղան զարմանալի արագութեամբ, մի 10—15 տարվայ ընթացքում:*

*Բայց հին սովորութիւնները, որպէս յիշեցի, իսպառ չը կորցրին իրանց հետքերը: Ես չեմ խօսում վաճառականների թեթեւ բարոյականութեան, անկանոն հաշուապահութեան եւ ուրիշ անկարգութիւնների մասին: Միայն կասեմ, ինչ որ վերաբերում է երիտասարդ գործակատարներին: Առ հասարակ Թիֆլիսեցի վաճառականը խիստ դժուարութեամբ է ընդունում իր խանութում մի արդէն վարժված եւ պատրաստված գործակատար (պրիկազչիկ), որ թողել էր իր ծառայութիւնը եւ ուրիշ տեղ էր որոնում: Այսպիսիներին շատ չեն հաւատում: “Եթէ լաւ լինէր, իր խազէինը ձեռքից բաց չէր թողնի„, մտածում են նրանք: Եւ այս պատճառով մեր առեւտրական աշխարհում չը կայ գործակատարների մի առանձին դաս, որ ազատ լինէին իրանց գործունէութեան մէջ եւ ցանկացած մարդու մօտ ծառայութիւն ընդունէին: Համարեա բոլոր խանութներում դեռ պահպանվում է հին սովորութիւնը, վեր առնել փոքրիկ աշակերտներ, որոնք սովորելով, վերջը գործակատարներ են կանում: Դժուար է նկարագրել, թէ որքան տանջանքների պէտք է համբերէ ողորմելի աշակերտը, եւ որ-*

*քան տարիներ պէտք է ծրի ծառայէ, մինչեւ կարողանայ գործակատարութեան աստիճանի հասնել: Դա մի ամբողջ կուրս է, որ նա պէտք է անցկենայ աշխատաւորի տոկունութեամբ: Առհասարակ այսպէս է լինում. աշակերտութիւնից նա դառնում է իր “խազէյինի„ գործակատարը, ռոճիկ է ստանում, յետոյ փոքրիկ գումարի տէր դառնալով, իր համար առանձին առեւտուր է սկսում: Թիֆլիսի բոլոր նշանաւոր վաճառականները սկսել են աշակերտութիւնից: Նրանք առաջ եղել են աղքատ աշակերտներ:*

*Խանութի աշակերտը ամբողջ օրը մեքենայի նման պտըտվում է, մի րոպէ հանգստութիւն չունի, նստել չէ կարող, ուտում է ոտքի վրա: Երբեմն նրան կը տեսնէք խանութից դուրս, քաշված մի անկիւնում, նիրհում է: Ո՛րքան քաղցր են հանգստութեան այն մի քանի րոպէները, որ նա գողանում է իր վարպետի զգոյշ հսկողութիւնից: ծանր ապտակը զարթեցնում է նրան, եւ նա արտասուքը սրբելով, կրկին ներս է վազում աշխատելու: Աշակերտը աւելի բախտաւոր կը լինէր, եթէ չը ստիպէին կատարել, բացի խանութից, եւ “խազէյինի› տան սպասաւորութիւնները: Աղջիկ պարօնի ապսպարանքները սաստիկ յոգնեցնում են նրան: Կիրակի օրերը նա ազատ է: Այսօր գործում է իր համար:* “Русскій базаръ„ *կոչված տօնավաճառանոցում փոքրիկ աշակերտը ծախում է զանազան իրեղէններ: Նա ընկերացել է իր նման մի ուրիշ աշակերտի հետ, եւ տարվայ ընթացքում խնայած կօպէկներով, որ գումարվել էր նրանց ստացած “շագիրդանաներից„ կազմել են մի փոքրիկ կապիտալ: Սեղանի վրա դարսած է նրանց վաճառքը—զանազան տեսակ սապոններ, սանրներ, թաշկինակներ, գուլպաներ, եւ ուրիշ այս տեսակ իրեղէններ:—Աղմկալի ձայներով գնողներ են հրաւիրում եւ վաճառում են: Այդ հիմքն է նրանց ապագայ մեծ գործունէութեան:*

Որպէս խանութի մէջ ոտքի վրայ սովորում է աշակերտը առեւտուրի եղանակները, որպէս ծանօթանում է ապրանքների հետ, այնպէս էլ ոտքի վրայ ծանօթանում է նա տառերի հետ եւ սովորում է գրել կարդալ: Նրա վարժապետը լինում է իրանից մեծ աշակերտը: Տառերի գործածութեան մէջ, ի հարկէ, հետզհետէ վարժվում է նա, բայց դարձեալ մնում է անգրագէտ: Բացառութիւն պէտք է համարել այն աշակերտները, որոնք որ եւ իցէ ծխական դպրոցում աւարտելուց յետոյ խանութ մտնէին: Մեծամասնութեան շկօլան լինում է խանութը. այստեղ ստանում են նրանք իրանց մտաւոր եւ բարոյական կրթութիւնը, որ շատ նախանձելի չէ կարելի համարել: Մեծ բարերարութիւն կը լինէր վաճառականական մանուկ սերունդին, եթէ նրանց համար կը կազմվէին առանձին լսարաններ, ուր շաբաթը մի կամ երկու անգամ յաճախելով, նրանք կը սովորէին լեզուներ, եւ կը վարժվէին գրագիտութեան մէջ:

Աշակերտը 10—12 տարեկան հասակում մտնելով մի խանութ, հազիւ թէ 7 տարուց յետոյ դառնում է գործակատար: Երբ նրան ամեն կողմից հաւատարիմ են գտնում, այնուհետեւ յանձնում են գործեր, եւ երբեմն ուրիշ քաղաքներ են ուղարկում ապրանքներ գնելու համար: Բայց հաւատարմութիւնը վաճառականների կարծիքով պէտք է ուրիշ մտքով հասկանալ: Այն գործակատարը հաւատարիմ էր, որ կատարում էր իր “խազէյինի„ բոլոր պատուէրները, թէեւ նրանք շատ հեռու լինէին բարոյական յատկութիւններից: Բայց ինչ որ հետաքրքրական է գործակատարների ձգտումների մէջ, դա է նրանց սաստիկ ցանկութիւնը ազատ լինել եւ իր համար առանձին գործ սկսել: Նրանք խիստ ուշ են ամուսնանում. սպասում են մինչեւ խանութի տէր դառնային, փող վաստակէին, որ լաւ աղջկայ հետ

պսակվէին: Ուզում եմ ասել, որ հարուստ աղջիկ առնէին:

Գործակատարների կեանքը սաստիկ անվայելուչ կողմեր է ներկայացնում: Ցերեկը նրանք խանութից հեռանալ չեն կարող, առաւօտեան ժամը ութից մինչեւ գիշերվայ ժամի 12-ը զբաղված են մուշտարիներով: Կերակրվում են աղայի սեղանի փշրանքներով, որ բերել էին նրա համար տնից: Բայց մանուկ սիրտը զուարճութիւն է պահանջում, եւ գիշերը նրանք չը գիտեն, թէ ինչպէս պէտք էր անցկացնել: Գործակատարների կլուբը դեռ նոր է բացվել, կարող էր ազատել նրանց քաղաքի անարգ փողոցներում թափառելուց կամ Մուշտէիդի այգիում փողեր ծախսելուց: Կաֆէ, ռեստօրան, այսպիսի տեղեր չեն մտնում նրանք, որ աչքի չերեւային, որ իրանց կեղծ համեստութեան վերաբերութեամբ "խազէյինի„ մօտ իրանց վարկը չը կորչէին: Պտռում են մթին եւ անյայտ տեղեր, ուր կարելի էր ազատ կերպով քէֆ անել: Համարեա բոլոր փոքր ի շատէ մեծ առեւտրական տների գործակատարները ծածուկ սիրուհիներ են պահում, որոնց համար վարձում են առանձին սենեակներ, եւ նրանց ապրուստի համար նշանակում են ամսական ռոճիկ, երբեմն աւելի, քան թէ իրանք էին ստանում: Որպէս գործակատարները կողոպտում են իրանց „խազէյիններին", այնպէս էլ կողոպտում են նրանց ռուս կամ վրացի սիրուհիները:

Առհասարակ գործակատարների մտաւոր զարգացման մակերեւոյթը խիստ ցած աստիճանի վրա է կանգնած: Ես մի քանիսներին միայն ճանաչում եմ, որ հետաքրքրվում էին գրականութեամբ, լրագիր էին կարդում, եւ երբեմն գրում էին լրագրական յօդուածներ: Այսպիսիները նրանք են լինում, որ գոնէ որ եւ իցէ դպրոցում եղել էին: Մնացածները, որպէս սխալներով գրում են եւ խօսում են իրանց մայրենի լեզուով, այնպէս էլ սխալներով գրում են ու խօսում են բոլոր լեզուներով, որ ծանօթ էին նրանց:

*Այնուամենայնիւ այդ անուններին պէտք է փիլիսոփայ համարել, իրանց „խազէյինների“ հետ համեմատելով, որոնք իրանց անունը հազիւ թէ կարող են ստորագրել: Թիֆլիսի վաճառականների մէջ առաջ գործ էր ածվում՝ վրաց լեզուն եւ գրագրութիւնը, իսկ այժմ՝ սովորական է դառնում՝ ռուսաց լեզուն: Շատ սակաւ խանութներ կարելի է գտնել, որոնց մէջ հաշուապահութիւնը եւ գրագրութիւնները լինէին հայոց լեզուով: Դա Թիֆլիսի վաճառականների աններելի թերութիւններից մէկն է: Այժմեան գործակատարները, որ ապագայի վաճառականները պէտք է լինեն, ամենեւին հակումն չեն ցոյց տալիս մայրենի լեզուի եւ գրութեան մըտցնելուն առեւտրական գործերի մէջ: Նրանք խօսում՝ են մուշտարիների հետ այն լեզուով, ինչ ազգութեան որ պատկանում՝ են—ռուսի հետ՝ ռուսերէն, վրացու հետ՝ վրացերէն, եւ մինչեւ անգամ՝ վայրենի օսի՝ լէզգու, չէրքէզի եւ կօպիտ թարաքամայի հետ նրանց լեզուներով,—բայց ոչ երբէք հայերէն: Գործակատարները երբէք չեն փոխում՝ իրանց վարպետին, որի մօտ սկզբից աշակերտել էին, եւ այս պատճառով նրանց առեւտրական գիտութիւնը մնում՝ է միակողմանի: Ինչ տեսակ ապրանքներ էր ծախում՝ վարպետը, նոյն տեսակ ապրանքների խանութ է բաց անում՝ իր համար եւ գործակատարը, եթէ մի օր կը յաջողվէր նրան առանձին առեւտուր սկսել: Ոմանք նրանցից պսակվում՝ են „խազէյինի“ աղջկայ կամ՝ մօտ ազգականի հետ, ոմանք վերջը ընկերանում՝ են նրա հետ: Առհասարակ մեր վաճառականները օգնում՝ են իրանց հաւատարիմ՝ գործակատարներին, եւ ցանկանում՝ են, որ նրանք փողի տէր լինէին: Բայց գործակատարը այս համակրութեանը արժանանում՝ է երկար տարիների դառն աշխատութիւններից յետոյ:*

*Դառնում՝ եմ՝ դէպի արհեստաւորները:*

*Արհեստաւորների դասը Թիֆլիսում՝ դեռ պահպանել*

*է իր կազմակերպութեան վաղեմի ձեւերը: Բոլոր արհեստաւորները, նայելով իրանց պարապմունքի տեսակին, բաժանված են զանազան դասակարգերի, որոնք ընդհանուր անունով կոչվում են „հ ա մ ք ա ր"*: Օրինակ, դերձակները, կօշկակարները, հիւսները, դարբինները, ոսկերիչները եւ այլն, առանձին առանձին „համքարներ" են ներկայացնում: Իւրաքանչիւր „համքար" ունի իր „ուստաբաշին", այսինքն վարպետների գլխաւորին, որին յարգում են, որի հեղինակութեանը հնազանդում են եւ որի մի խօսքը վճռում է արհեստաւորների մէջ պատահած վէճերը: Իւրաքանչիւր „համքար" ունի այլ եւ իր առանձին դրօշը. հանդիսաւոր օրերում նրանք հաւաքվում են այդ դրօշի ներքոյ եւ որոշվում են միւս „համքարներից" իրանց գլխարկների գոյներով: Դրօշակների վրա նկարված է սովորաբար այս եւ այն սուրբի պատկերը, որի պաշտպանութիւնը վայելում է „համքարը":*

*Թիֆլիսում „համքարները" յիշեալ կազմակերպութիւնը պահպանել էին դեռ եւս 15—20 տարի առաջ: Բայց այն օրից, երբ արհեստաւորների համար հիմնուեցաւ առանձին դատարան (*ремесленная управа*) ուստաբաշիները իրանց նշանակութիւնը կորցրին, եւ այժմ համքարների համարեա թէ անունն է մնացել:*

*Մեր արհեստաւորները մի եւ նոյն կերպով են պատրաստվում, որպէս մեր վաճառականները: Արհեստ սովորել ցանկացող տղան մանկութիւնից որպէս աշակերտ մտնում է մի վարպետի մօտ. զանազանութիւնը նրա մէջն է միայն, որ վաճառականը իր աշակերտի համար ժամանակ չէ որոշում, իսկ արհեստաւորը ընդունում է աշակերտին մի քանի տարվայ պայմանով: Վարպետը միշտ աչքի ա-*

---

* *Հ ա մ ք ա ր պարսկական բառ է, նշանակում է համարուեստ կամ մի եւ նոյն գործով աշխատողներ:*

ռաջեւ է ունենում մի հաշիւ. եթէ աշակերտը, օրինակ, 3 տարվայ մէջ կը սովորի արհեստը, նա 7 տարվայ պայմանով է ընդունում աշակերտին, որ սովորելուց յետոյ մի 4 տարի էլ իրան ձրի ծառայէ որպէս վարձատրութիւն: Արհեստաւորները իրանց աշակերտների հետ աւելի վատ են վարվում, քան թէ վաճառականները: Եթէ վաճառականը երկաթէ արշինով է ծեծում, արհեստաւորները ծեծում են ուրագով, ահագին մկրատով, մուրճով եւ այլն: Աշակերտի մտաւոր զարգացումը մնում է խիստ սահմանափակ, միօրինակ մեքենական աշխատութիւնը զօրացնում է մկանները միայն, իսկ ուղեղով նա բթանում է, յիմարանում է եւ վերջապէս ապուշ է դառնում: Հազիւ կարելի է գտնել արհեստաւորների աշակերտների մէջ այնպիսիներին, որ գրել կարդալ գիտենային: Նրանք չեն սովորում կարդալ, որպէս սովորում է վաճառականի աշակերտը, որովհետեւ մեր արհեստաւորները դեռ եւս շատ պէտք չեն զգում գրելու մէջ: Նրանք շատ բաղադրեալ առեւտուր չունեն եւ հաշիւները պահում են իրանց գլխում: Այն արհեստաւորները, որ եւրօպական ձեւեր են ընդունել, պէտք է բացառութիւն համարել: Նրանց խանութներում հաշիւներ պահվում են:

Աշակերտը արհեստը փոքր ի շատէ սովորելուց յետոյ դառնում է „ք ե ա ր գ ե ա ր“ (подмастэръ): Եթէ նա պայմանը լրացնելով, ցանկանում է շարունակել վարպետի մօտ իր աշխատութիւնը, կօճիկ է ստանում: Բայց ըստ մեծի մասին թողնում են վարպետի խանութը եւ իրանց համար առանձին արհեստանոց են բաց անում: Հին ժամանակներում, այսինքն երբ „համքեարները“ դեռ պահպանել էին իրանց օրէնքները, աւանդութիւնները եւ սովորութիւնները, ամեն մի աշակերտ արհեստը սովորելուց յետոյ, առանց ձ ե ռ ն ա դ ր ո ւ թ ե ա ն, իրաւունք չունէր առանձին արհեստանոց բաց անել եւ իր համար գործ

*սկսել։ Նա պէտք է առաջ օ ր հ ն վ է ր եւ արհեստաւորնե-րի խմբի մէջ մտնէր։ Այս ծէսը կատարվում էր սովորաբար հետեւեալ կերպով։ Նորընծայ արհեստաւորը ճաշ էր պատրաստում եւ հրաւիրում էր „համքեարի“ նշանաւոր վարպետներին. այնտեղ գտնվում էր եւ „համքեարի“ գըլխաւորը—„ուստաբաշին“։ Ճաշելուց յետոյ նորաւարտ արհեստաւորը ներկայացնում էր վարպետների ժողովին իր մի ձեռագործը. երբ նա հաւանութիւն էր գտնում, եւ երբ վարպետները վկայութիւն էին տալիս նրա հմտութեան մասին, այնուհետեւ վարպետների գլխաւորը կատարում էր օրհնութեան կարգը։ Եթէ, օրինակ, արհեստաւորը պէտք է դարբին լինէր, վարպետների գլխաւորը վեր էր առնում մի մուրճ, օրհնում էր եւ տալիս էր նրա ձեռքը։ Եւ նրանից մի քանի խոստումներ առնելով, որ չը խաբէ, սուտ չը խօսի, որ հաւատարիմ մնայ „համքեարի“ դրօշին եւ այլն,—յետոյ նա կարդում էր արհեստաւորի գլխին մի քանի ինքնաձեւ օրհնութիւններ եւ երեսին զարկում էր մի ապտակ։ Դրանով օրհնութիւնը վերջանում էր եւ երիտասարդ արհեստաւորը „ուստա“ էր դառնում, եւ իրաւունք էր ստանում այնուհետեւ „համքեարի“ անդամ համարվել, եւ իր համար առանձին արհեստանոց բաց անել։ Այդ ծէսը յիշեցնում է միջնադարեան ասպետներին, թէ որպէս նրանք օրհնվում էին եւ որպէս այս ու այն ասպետական կարգի մէջ էին մտնում։ Բայց արհեստաւորների վերաբերութեամբ այս տեսակ սովորութիւնները հետաքրքըրքիր են եւ այն կողմից, որ ցոյց են տալիս, թէ մեր նախնիքը որքան մեծ նշանակութիւն են տուել արհեստին, եւ որքան հոգ են տարել նրան միշտ ծաղկեալ վիճակի մէջ պահելու համար։ Այդ ի հարկէ իր ժամանակում ունէր իր նշանակութիւնը. իսկ այժմ պայմանները փոխվել են։ Այսուամենայնիւ, դեռ եւս իրանց նահապետական դրութեամբ*

մնացած արհեստաւորների մէջ կարելի է եւ այսօր տեսնել վերոյիշեալ սովորութիւնները:

Առհասարակ խօսելով, արհեստաւորների կեանքում նոյն փոփոխութիւնն է նկատւում, ինչ որ տեսանք վաճառականների մէջ: Ով որ հետաքրքրութեամբ ուշադրութիւն է դարձրել Հայկական բազար (Միջին փողոց) կոչւած թաղում արհեստաւորների վրա, անպատճառ տեսած կը լինի, որ այստեղ արհեստաւորների իւրաքանչիւր դասակարգը միմեանցից բաժանված, առանձին-առանձին խմբքեր են կազմում, որ զետեղված էին զանազան շարք խանութների մէջ: Մի փողոցի վրայ գործում են ոսկերիչները, միւսի վրա՝ մուշտակակարները (ծօները), մի այլ տեղ զինագործները, մի ուրիշ շարքում կօշկակարները եւ սառաջները, յետոյ պղնձագործները, դերձակները, հիւսները, եւ այլն: Դրանք զանազան „համքեարների" ներկայացուցիչներ են, որոնց ամեն մի խումբը կենտրօնանալով իր համարուեստների շրջանի մէջ, գործում են միասին, եւ ուրիշների հետ չեն խառնվում: Այդ քաստայական դրութիւնը ներկայացնում է արհեստաւորների դասակարգութեան հին ձեւը: Այստեղ արհեստը նախնական կերպով աւանդվում է սերունդից սերունդ, խիստ սակաւ փոփոխութիւն միայն կրելով: Բայց երիտասարդ արհեստաւորները, որոնք սովորել էին կամ Եւրօպայում, կամ մի օտարականնի մօտ, եւ կամ մի այլ երկրում կատարելագործել էին իրանց արհեստը,—այդպիսիները չեն մտնում վերոյիշեալ խմբերի մէջ, այլ հեռանալով նրանցից, առանձնանում են, եւ քաղաքի զանազան փողոցների վրա արհեստանոցներ են բաց անում: Դրանք արհեստաւորների նոր սերունդի ներկայացուցիչներ են, որ մեծ յառաջադիմութիւն են խոստանում: Երիտասարդ արհեստաւորները համարեա զուրկ են ամեն տեսակ զուարճութիւններից: Թիֆլիսում դեռ եւս չը կան այնպիսի հիւրանոցներ եւ կաֆէներ, որ

ժողովրդի մէջին դասին մատչելի լինէին: Իսկ արհեստաւորների կլուբը այն բարերար ազդեցութիւնը չունեցաւ, որքան սպասվում էր: Համեստ եւ հասարակական կեանքին դեռ չընտելացած արհեստաւորը աւելի շռայլութիւն սովորեց, երբ տան չորս պատերի մէջ փակված կեանքը յանկարծ դուրս բերելով, սկսեց յաճախել կլուբի „վեչերները“: Այն եւս պէտք չէ մոռանալ, որ կլուբում յաճախում են միայն հասակն առած արհեստաւորները, ոչ թէ երիտասարդութիւնը: Այդ վերջինների զուարճութիւնն այն է, որ երբեմն հաւաքվում են միասին եւ գնում են Օրթաճալա քէֆ են անում, կամ կիրակի օրերը մտնում են մի գինետուն, եւ մի չարէք գինի ոտքի վրա խմելով, դուրս են գալիս: Այսուամենայնիւ, երիտասարդ արհեստաւորների բարոյականութիւնը համեմատաբար աւելի բարձր է, քան վաճառականների գործակատարներինը: Արհեստաւորները աւելի վաղ են ամուսնանում եւ շուտով ընտելանում են ընտանեկան կեանքին. չքաւոր տնտեսութիւնը նրանց ժամանակ չէ տալիս հրապուրվելու ախտերով:

Վեր առնենք մշակ դասը:

Թիֆլիսի հայոց ժողովրդաբնակութեան մէջ իսկապէս մշակ դաս չկայ: Այն մշակները, որոնք փալանը ուսներին դրած, լցնում են այդ քաղաքի հրապարակները, բոլորը գաղթականներ են, Պարսկաստանից, Տաճկաստանից կամ Հին-Նախիջեւանի եւ Երեւանի գաւառներից այստեղ եկած: Չէ կարելի երեւակայել մի աւելի տաժանական աշխատութիւն, քան թէ այն, որ կատարում են այդ մշակները: Դրանք ընդհանուր անունով կոչվում են „համալներ“: Համալի վիճակը եւ բեռնակիրի զրաստի վիճակը ոչինչով չեն տարբերվում միմեանցից, երկուսն էլ ծանրութիւններ են կրում: Թիֆլիսի քարվանսարաների, մաքսատան, երկաթուղու կայարանի, հրապարակների բոլոր համալները հայեր են: Օտարազգիները չնչին փոքրա-

*մասնութիւն են կազմում: Աշխատութիւնների տեսակները զանազան են, ոմանք բեռնակրութիւն են անում, տեղափոխում են ահագին, երբեմն 10—15—20 փութի ծանրութեամբ հակեր եւ տակառներ: Հսկայի ուժ եւ մկնակների սաստիկ զօրութիւն պէտք է այս գործի համար, բայց համալը տանում է փալանով ամրացրած մէջքի վրա իր բեռը որպէս մի թեթեւ փետուրեայ բարձ: Ոմանք, որ կազմուածքով աւելի թոյլ են, կթոցների մէջ տներից աղբ են դուրս տանում եւ թափում են Կուր գետի մէջ, կամ աւելում են փողոցների անմաքրութիւնները: Ոմանք ջրկիրներ են, փոքրիկ թուլուխների մէջ, որ քարշ են տալիս ուսից, ջուր են բերում աղքատ ընտանիքների համար: Ոմանք բանում են տների շինուածքների վրա, խճուղիների եւ երկաթուղու վրա որպէս հասարակ մշակներ, կամ աշխատում են աղիւսի գործարանների մէջ, եւ կամ քարափից քար են կտրում: Երկար կըլինէր մի առ մի թուել այդ թշուառների անտանելի աշխատութիւնների զանազան տեսակները, որոնց կարող էր համբերել միայն այն անբախտը, որին դառն աղքատութիւնը ստիպել էր թողնել իր հայրենիքը, տունը, ընտանիքը, եւ պանդխտութեան մէջ յանձն առնել մի անասնական գործ:*

*Համեմատաբար աւելի երջանիկ են այն մշակները, որոնք խմբված են զանազան քարվանսարաներում: Իւրաքանչիւր քարվանսարայի մէջ մշակների խումբը կազմում է մի տեսակ միութիւն „օդաբաշիի“ * գլխաւորութեան ներքոյ. դրանք ունեն իրանց ընդհանուր դրամարկղը (կասսան), որի մէջ ձգում է ամեն մէկը իր օրեկան վաստակը, ծախսում են այդ դրամարկղից, կերակրվում են միասին, եւ ամեն մի ամսի վերջը բաժանում են իրանց մէջ փողի մնացորդը: Հիւանդ ընկերը չէ զրկվում իր բաժինից, եթէ*

---

* Օ դ ա բ ա շ ի նշանակում է խանութպան:

ամբողջ ամիսը աշխատած եւս չը լինէր: Մի նոր մշակ ընդունվում է խմբի մէջ ամենի համաձայնութեամբ: Բոլոր այս տեսակ հիմնարկութիւնների մէջ աշխատող մշակները մի տեսակ ապահովութիւն ունեն, այն կողմից, որ առանց գործի չեն մնում, այլեւ փոխադարձաբէս օգնում են միմեանց: Մինչդեռ միւս մշակները ստիպված են ամեն օր եւ ամեն րոպէ գործ պտրել: Շատ անգամ ամբողջ ժամերով նրանք կանգնած են հրապարակների եւ փողոցների վրա. սպասում են, մինչեւ մէկը կը կանչէր եւ մի շալակ կը յանձնէր այս եւ այն տեղը հասցնելու համար:

Ամբողջ օրվայ դառն չարչարանքներից յետոյ մշակներից շատերը աշխատում են գիշերից եւս օգուտ քաղել: Հանգստութիւնը գտնում են մի քանի կօպէկների: Ում չէ պատահել տեսնել, գիշերը փողոցներով անցնելիս, մագազինների դռանը, մերկ սալերի վրա, ձիւնի եւ անձրեւի տակ պառկած "հասասներին" (գիշերապահ): Դրանք ցերեկը աշխատող մշակներն են: Երբեմն նրանք այն աստիճան յոգնած եւ թմրած են լինում, որ գիշերվայ քէֆից վերադարձող բուրժուան ոտքը կոխում է նրանց վրա եւ անց է կենում, թշուառները ոչինչ չեն զգում: Իսկ երբեմն կը տեսնէք մէկին, փաթաթված սողաթի քրքրված վերարկուի մէջ, դառն մելամաղձական ձայնով երգում է: Քունը մօտ չէ գալիս կարօտ աչքերին, նա երգում է իր "եարին", որին դեռ նոր էր նշանել, երբ թողեց հայրենիքը. այժմ անցել էին մի քանի տարիներ, անբախտ մշակը դեռ եւս այնքան փող չէր վաստակել, որ վերադառնայ, պարտքերը վճարէ, յետոյ կարողանայ պսակվել:

Ում պատահել է մտնել Սաղի կողմի քարվանսարաներից մէկի մէջ, ուր կանգնեցնում են ֆուրգօններ, կարող է փոքր ի շատէ գաղափար ստանալ մշակների կեանքի մասին: Թիֆլիսի այդ մասը, ուր թափում են ամեն տեսակ անմաքրութիւններ, ուր գարշահոտութիւնը թմրեցնում

է մարդուն, ուր խոզերը միայն աղտոտութիւնների մէջ բախտաւոր են ապրում.—Թիֆլիսի այդ դժոխքը մշակների գիշերային կացարանն է: Այնտեղ կարելի է գտնել փոքրիկ մթին սենեակներ, որ ամիսը 3—4 րուբլով վարձով են տալիս, երբեմն 10—20 մշակներ վարձում են այդ սենեակներից մէկը: Ոչ մի կարասի չէ կարելի տեսնել այդ խոնաւ եւ սառը գերեզմանների մէջ, ուր կարմիր աղիւսով ծածկված մերկ յատակի վրա, իրանց փալասները բարձի տեղ գլխների տակին դրած, գիշերը հանգստանում են մշակները ցերեկվայ յոգնածութիւնից յետոյ: Ոմանք այնքան խնայող են լինում, որ սենեակներ չեն վարձում, այլ մտնում են այս եւ այն քաղաքացու տանը որպէս դռնապան (ДВОРНИКЪ), գիշերը հսկում են դռան վրա, իսկ ցերեկը գնում են իրանց գործին: Տանուտէրը այնքան բարի է լինում, որ խեղճ մշակի աշխատութեան փոխարէն ձրի տալիս է նրան օթեւանելու մի խորշ. դա լինում է ըստ մեծի մասին ներքնատան մի անպէտք անկիւնը:

Թիֆլիսի մշակների մէջ մի աւելի հետաքրքիր մաս ներկայացնում են թ ո ւ լ ո ւ ղ չ ի ն ե ր ը (ջրկիրներ). դրանք կազմած ունեն մի տեսակ համայնք, որ ունի իր կանոնները եւ սովորութիւնները: Թիֆլիսի բոլոր թաղերը բաժանված են (թուլուղչիների կարգադրութեամբ) զանազան մասների, որոնց իւրաքանչիւրը մի թուլուղչու „մշտարին“ է, այսինքն, բացի այն թուլուղչուց մի ուրիշը իրաւունք չունի այն թաղեցոց ջուր տալու: Այդ իրաւունքը վաճառվում է թուլուղչիների մէջ, օրինակ, մէկ թաղում հարիւր ընտանիքի ջուր էր տալիս մէկ թուլուղչի, իր դաֆթարի մէջ ունի տների ցուցակը, եւ նոյն ցուցակով վաճառում է իր ջուր տալու իրաւունքը միւսին, ստանալով նրանից 500—1000 րուբլի: Եւ այսպէս ժողովուրդը անցնում է մի թուլուղչու ձեռքից միւսին: Թուլուղչիները իրանց մէջ կարգ պահպանելու համար, ընտրում են մէկին իրանց միջից

որպէս “ո ւ ս տ ա բ ա շ ի„—գլխաւոր, որը ճանաչված է լինում եւ քաղաքական վարչութիւնից: Թիֆլիսի մշակների մէջ միայն Թուլուղչիներն են, որ ազատ են հարկից, որովհետեւ, նայելով այն ծառայութեանը, որ նրանք կատարում են հրդեհների ժամանակ, առանց որ եւ իցէ վարձատրութեան,—քաղաքը նրանցից հարկ չէ պահանջում: Հէնց որ մի տեղ հրդեհ է յայտնվում, քաղաքի ամեն ծայրերից Թուլուղչիները թափվում են իսկոյն: Զարմանալի է տեսնել, թէ որպիսի անձնազոհութեամբ այդ քաջերը նետվում են կրակի մէջ, ոչինչ նրանց չէ վախեցնում, ոչինչ նրանց չէ վհատեցնում:

Թուլուղչիները Պարսկաստանի Սալմաստ գաւառից եկած կաթօլիկ եւ լուսաւորչական հայեր են, նրանց մէջ գտընվում են եւ ասօրիներ: Բոլոր մշակների մէջ դրանք են, որ պահպանում են մի կազմակերպված միութիւն, եւ այդ միութեանն են պարտական, որ ունեն համեմատաբար աւելի լաւ վիճակ: Կուկիայիա, Չուխուրէթ կոչված թաղում կարելի է տեսնել Թուլուղչիների հիւրանոց, ուր նրանք ընթրիք են ուտում, խմում են եւ ծխում են պարսկական ղէլյան: Բացի Թուլուղչիներից մնացած բոլոր մշակները մի տեղ չունեն հաւաքվելու համար: Եթէ, ինչպէս վերեւում նկատեցի, Թիֆլիսում չը կան այնպիսի հիւանոցներ, ուր արհեստաւորները կարողանային էժան ճաշ ուտել,—չէ կարելի երեւակայել անգամ, որ այս տեսակ հիմնարկութիւններից օգուտ քաղէին մշակները: Այդ ողորմելիները կերակրվում են միայն ցամաք հացով. հրապարակի վրա գնում են մի հատ վրացու “պուրի„, եւ այնպէս կռծելով, ծանր շալակի տակ, շարունակում են իրանց գործը: Մշակը, որ գլուխը դնելու մի անկիւն չունի, ինչպէս կարող է իր համար առանձին խոհանոց սարքել: Կիրակի օրերը միայն մի քանիսը ընկերանում են միասին, առնում են մի կտոր միս, եւ տալիս են փուրունչիին եփելու համար: Այդ աշ-

*խատող դասը, որ աւելի ուտելու պէտք ունի, բոլորովին զուրկ է մնում զօրացնող սնունդից: Որ եւ իցէ զուարճութիւնից նոյնպէս զուրկ են մնում նրանք, երբեմն տօն օրերում մտնում են մի գինետուն եւ խմում են մի քանի բաժակ արաղ. ալքօզօլը միայն կարողանում է զրգռել մշակի բթացած եւ անզգայացած ջղերը:*

*Մի քանի խօսք մշակների մտաւոր կեանքի մասին: Մեր մէջ կան ազգասէրներ, որոնք երազում Մուշի, Վանի եւ Զէյթունի վրայ, բայց այստեղ, Թիֆլիսում, մշեցի եւ վանեցի հայի զաւակները իրանց աչքի առջեւ չեն տեսնում: Մեզանից դեռ եւս ոչ ոք չը մտածեց հիմնել մշակների համար կիրակօրեայ դասախօսութիւններ եւ ծանօթացնել նրանց տնտեսական որ եւ իցէ հարցի հետ: Ախար այդ թշուառները առանց պատճառի չէ, որ թողել են իրանց հայրենիքը եւ այստեղ պանդխտութեան մէջ տարիներով մաշվում են: Պէտք չէ՞ արդեօք քննել այն պատճառները, որ դուրս են քշում նրանց իրանց հայրենիքից, եւ ցոյց տալ ապրուստի ուղիղ ճանապարհը: Մշակների մէջ կան մեծ թւով գրագէտներ, այսպիսիները ուրիշ երկրում օգուտ են քաղում կօպէկանոց լրագրներից, բայց այստեղ կարդալու ոչինչ չեն գտնում: Թողնենք մտաւոր սնունդը: Թիֆլիսի հայ մշակները զուրկ են մնում եւ բարոյական եւ հոգեւոր մխիթարութիւնից: Ոչ մի հայ քահանայ չէ բաց անում մշակի խղճուկ օթեւանի դուռը, որովհետեւ նրանից շահվելու ոչինչ չէ սպասում: Բայց ինձ յայտնի են փաստեր, որ Պարսկաստանից այստեղ եկած փոքրաթիւ բողոքական մշակների համար՝ Ուրմիոյ ամերիկական առաքելութեան միսսիօնարները իրանց ծախսով ուղարկել են Թիֆլիս մի քարոզիչ քահանայ, որ միշտ այստեղ է մնում, եւ թէ հոգեւորապէս, թէ բարոյապէս մխիթարում է նրանց: Ամեն կիրակի հաւաքում է նա իր փոքրիկ հօտը գերմանական կօլօնիայում մի յատկացրած տեղ, եւ քարոզ է կարդում:*

*Այդ բաւական չէ, բանւորն իսկոյն վազում է բժշկի մօտ, երբ մէկը հիւանդ էր, եւ խնամք է տանում նրա առողջութեան մասին, եթէ աղքատ էր: Բայց մեր հայ մշակները հիւանդանում են եւ անտէրութիւնից ճանճերի նման ամեն տարի հարիւրներով մեռնում են, ոչ ոք նրանց վրա չէ մտածում: Այդ ողորմելիները մինչեւ անգամ չը գիտեն, որ Թիֆլիսում կայ այնպիսի տեղ, որ բժիշկները ձրի են նայում հիւանդին (*лечебница*), եւ կայ այնպիսի տեղ եւս, ուր հոգ են տանում աղքատներին ձրի կերակրելու եւ առողջացնելու համար (*больница*):*

*Կայ մի ուրիշ կէտ եւս, որ ոչ սակաւ ուշադրութեան արժան է: Թիֆլիսում կարելի է հաշւել միջին թւով մինչեւ 5000 հայ մշակներ, որոնք օտար երկրներից են եկած: * Դրանք երբեմն մինչեւ տասն տարի շարունակ մնում են այստեղ. անդադար աշխատում են, փող են վաստակում, բայց չը գիտեն թէ ուրտեղ պահեն իրանց դառն քրտինքի գինը: Մշակի գանձարանը կաշիից իր ձեռքով կարած փոքրիկ պայուսակն է, որ միշտ կարելի է տեսնել նրա կողքից քարշ ընկած: Բայց քիչ չէ պատահում, որ քնած ժամանակ նրա պայուսակը կտրում են, եւ մշակը զրկվում է իր գանձից, իր մի քանի տարուայ դառն աշխատանքից: Ոմանք ծանօթանում են մի քաղաքացու հետ եւ փողերը նրան պահ են տալիս, առանց վէքսիլի եւ առանց թղթի, եւ խղճմտանքով քաղաքացին շատ անգամ*

---

** Ինձ Ջուլֆայի կառանտինայում ասեցին, թէ ամեն տարի մօտ 20 հազար մշակներ անցնում են Պարսկաստանից դէպի Կովկասի զանազան գաւառները. այս հաշւով որքան հոգի անց կը կենան Արաքսի վրա դրված ռուսաց միւս կառանտինների անցքերից, որպէս են Ջաբրայէլի, Ղաշթախտի, Իգդիրի եւ միւս անցքերը: Հետաքրքիր թուանշաններ հաւաքել այս տեղերից, եւ այն ժամանակ կը բացատրվէր Պարսկաստանից եւ Տաճկաստանից ռուսաց հողի վրա անցնող մշակների ճիշդ թիւը:*

*կամ ուրանում է "կռօի„ յանձնած փողերը, եւ կամ վայրիվերոյ հաշիւներ է ցոյց տալիս: Վերջապէս այդ ողորմելիները չը գիտեն թէ իրանց վաստակած փողերը ինչ միջոցով կարող են ապահով կերպով հասցնել իրանց հայրենիքը, իրանց կարօտ ընտանիքներին: Ըստ մեծի մասին այսպէս են անում, մի քանի տարվայ վաստակածը հաւաքում են մի տեղ, փոխում են ռուսաց ոսկու հետ, եւ* 40—50 *հոգի միասին խմբվելով, դիմում են դէպի իրանց հայրենիքը: Տաճկաց եւ Պարսից սահմանների վրա միշտ պատրաստ են աւազակների հրոսակներ մշակների քարաւանը կողոպտելու համար: Այս տարի մի քանի անգամ կարդացինք լրագիրների մէջ Ռուսաստանից Մուշ վերադարձող մշակների կողոպտվելը քրդերից:—Ուրեմն Թիֆլիսի մշակները ոչ իրանց վաստակած փողը պահելու տեղ ունեն եւ ոչ հայրենիքը հասցնելու ապահով միջոցներ: Մի փ ո խ ա տ ո ւ խ ն ա յ ո ղ ա կ ա ն կ ա ս ս ա յ (*ссудо сберегательная касса*) կարող էր ազատել նրանց վերոյիշեալ ամբախտութիւններից, բայց այդ մասին մինչեւ այսօր չո ոք մտածեց: Եթէ հայ մշակների թիւը հաշվում ենք Թիֆլիսում* 5000 *հոգի, մի այսքան էլ, եւ գուցէ աւելի, թուրքեր, ասօրիներ եւ ուրիշ ազգերից կը լինեն. եւ այս պատճառով յիշեալ հիմնարկութիւնը փողերի սակաւ շրջաբերութիւն չէր ունենայ, եթէ կազմած եւս լինէր միմիայն մշակների համար: Այլ եւս չեմ խօսում օգտաւէտութեան մասին, թէ այսպիսի հիմնարկութիւն որքան կարող էր նպաստել մշակների շահերին: Որովհետեւ փողը միշտ մշակի մօտ պահվելով, ոչ միայն կորցնում է իր տոկոսը, այլ նա կարող է միանգամով կորչել, կամ շռայլաբար ծախսվել: Քիչ չէ պատահում, որ մշակը յանկարծ մոլութեան մէջ է ընկնում, եւ մի քանի օրվայ մէջ ոչնչացնում է իր մի քանի տարվայ վաստակածը:*

*Չէ կարելի չաւելացնել մի քանի խօսք մշակների հա-*

ւատարմութեան մասին: Կ. Պոլսի հայ համալսնների ազ
յատկութիւնները մինչեւ անգամ՝ գրաւեցին եւրոպակ
մամուլի ուշադրութիւնը: Մեր մշակներն եւս պակաս
նրանցից իրանց բարոյական կողմերով: Հայաստանի ա
չը փչացած զաւակները սաստիկ վախենում են մեղք
որքան սարսափում են Աստուծոյ պատժից: Պանդխտութե
մէջ անգամ, օտար հասարակութեան մոլորեցնող ազդեցո
թեան ներքոյ նրանք պահպանում են իրանց ընտանեկ
թեան մաքրութիւնը: Թիֆլիսի վաճառականը մեծ վստա
հութեամբ յանձնում է մշակին իր խանութի եւ ամբար
ների բանալիքները, ամենեւին չը կասկածելով նրա հա
ւատարմութեան մասին: Ինձ յայտնի են մի քանի փաս-
տեր, որ մշակների ձեռքը որ եւ է դէպքով ընկել էին գու-
մարներ եւ ապրանքների հակեր, որոնց հեշտութեամբ կա-
րող էին թաքցնել եւ իրանց սեպհականացնել, բայց նրանք
չեն կամեցել օգուտ քաղել դէպքից, եւ պահելով իրանց
մօտ ուրիշի սեպհականութիւնը, կրկին յանձնել են տիրոջը.

Ես վերջացրի իմ հետազօտութիւնը: Այժմ ընթերցո-
ղին եմ թողնում եզրակացնել, թէ որպիսի ապագայ է խոս-
տանում հայ երիտասարդութիւնը:



